


Հարգելի՛ ընթերցող.

ԵՊՀ հայագիտական հետազոտությունների ինստիտուտը, չհետապնդելով որևէ եկամուտ, իր կայքերում ներկայացնելով հայագիտական հրատարակություններ, նպատակ ունի հանրությանն ավելի հասանելի դարձնել այդ ուսումնասիրությունները:

Մենք շնորհակալություն ենք հայտնում հայագիտական աշխատասիրությունների հեղինակներին, հրատարակիչներին:

*Մեր կոնտակտները՝*

*Պաշտոնական կայք՝*[http://www.armin.am](http://www.armin.am)

*էլ. փոստ՝*[info@armin.am](mailto:info@armin.am)

ՀՍԽՀ ԼՈՒՍԺՈՂԿՈՄԱՏ

ՊՐՈՖ. ԴՐ. Լ. ՄԵԼԻՔՍԵԹ-ԲԵԿ

# ՎՐԱՑ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՅԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

ՔԱՂՎԱԾՔՆԵՐ ՎՐԱՑԵՐԵՆ ԲՆԱԳՐԵՐԻՑ ՀԱՅԵՐԵՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅԱՄԲ.
ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ—ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ՅԵՎ ՀԱՎԵԼՎԱԾՆԵՐՈՎ

ՀԱՏՈՐ Ա.

(Ե-ԺԲ ԴԱՐ)

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ ՄԵԼՔՈՆՅԱՆ ՖՈՆԴԻ

ՅԵՐԵՎԱՆ 1934

ԵՐԵՎԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ՀԱՄԱԼՍԱՐԱՆ
ՀԱՅԱԳԻՏԱԿԱՆ ՀԵՏԱԶՈՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԻՆՍՏԻՏՈՒՏ

Մատենաշար

# Հայ-վրացական հարաբերություններ

Գիրք Ա

# Լ. Մելիքսեթ-Բեկ: Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին

Քաղվածքները վրացերեն բնագրերից
հայերեն թարգմանությամբ.
ներածություն-ծանոթագրություններով
և հավելվածով

ԵՐԵՎԱՆ
ԵՊՀ ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ
2013

ՀՏԴ - 941 (479. 25)
ԳՄԴ 63. 3 (2Հ)
Հ 240

**Աշխատությունը հրատարակության է երաշխավորել հայագիտական հետազոտությունների ինստիտուտի գիտական խորհուրդը**

**Մատենաշարի հիմնադիր**
**ԵՊՀ ՀՀԻ վրացագիտության հայկական կենտրոն**



Կազմեց և հրատարակության պատրաստեց **Հրաչիկ Բայրամյանը**

Հ 240 Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին (մատենաշար )
Լ. Մելիքսեթ-Բեկ: Կազմ.՝Հ.Բայրամյան.- Եր.: ԵՊՀ հրատ., 2013.
Գիրք Ա.- 788 էջ

Լևոն Մելիքսեթ - Բեկ

Նշանավոր պատմաբան, բանասեր, մատենագետ, հնագետ, կովկասագետ Լևոն Մելիքսեթ-Բեկի գիտական ժառանգությունը մեծ արժեք և արդիական նշանակություն ունի հայագիտության համար: Կարևոր նվաճումներից է նաև նրա «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» եռահատոր աշխատությունը, որոնցում վրացական աղբյուրներից քաղված բնագրերի թարգմանությունն ուղեկցվում է պատմաբանասիրական, աղբյուրագիտական, մատենագիտական ծանոթագրություններով ու բանիմաց մեկնաբանություններով:

Աշխատության վերահրատարակությունը կնպաստի հայագի- տության, վրացագիտության ու կովկասագիտության ասպարեզում դեռևս անհրաժեշտ խորությամբ չուսումնասիրված և վիճահարույց բազմաթիվ հարցերի լուսաբանման աշխատանքներին:

ՀՏԴ - 941 (479. 25)
ԳՄԴ 63. 3 (2Հ)

ISBN978-5-8084-1743-4

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ


ԱՌԱՋԱԲԱՆ Ա. հատորի . . . 3—4

— ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ առաջին պրակի . . . 4–6

Ա. ՀԱԿՈԲ ՑՈՐԵՑ (V դ.)

— «Շուշանիկի վկայաբանությունը» (ներածական) . . . 7—10

— [Շուշանիկի ծագումը և բնակության տեղը] . . . 11—12

— Ծանոթություններ . . . 12—15

Բ. ԿՅՈՒՐԻՈՆ ՄԿՈՒՏՐԵՑԻ (ՄԿՈՒՐՏԱՑԻ)

(VI—VII դ. դ.) . . . 16—17

Գ. ԱՆԱՆՈՒՆ (IX դ.)

— «Վրաց դարձի [պատմությունը]» (ներածական) . . . 18—20

Ա. մասից

[Վրաց դարձի պատմությունից] . . . 20—20

— [Այլ և այլ դեպքեր վրաց դարձից հետո] . . . 21—21

— Ծանոթություններ . . . 21—22

Բ. մասից

— [Ս. Նունեն Հայքում] . . . 22—23

— Ծանոթություններ . . . 23—23

Դ. ԱՆԱՆՈՒՆ (IX դ.)

— «Կոնստանդ Կախի վարքը» (ներածական) . . . 24—26

— [Հայ իշխանները Սամարիայում] . . . 26—26

— Ծանոթություններ . . . 26—26

Ե. ԱՐՍԵՆ ՍԱՓԱՐԱՑԻ (IX դ.)

— «Վրաց և Հայոց բաժանման մասին» (ներածական) . . . 27—34

— Վրաց (Քարթլիի) և Հայոց (Սոմխիթի) բաժանման մասին . 34—47

— Ծանոթություններ . . . 37—70

Զ. ԱՆԱՆՈՒՆ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ (IX դ.)

— Համառոտ Հայոց «պատմության» փորձեր (ներածական) . 71—73

— 1. Հայոց թագավորությունը՝ սկսած Նոյի որդուց. [այս տեղեկությունները]՝ գտնված լինելով պատմոքիՆ-ի մեջ՝ ներկայացրած են այս գրքում նախար[ար]ական տոհմերի մասին քաղվածքներով հանդերձ . . . 73—75

— Ծանոթություններ . . . 75—75

— 2. Պատմվածք Պատիմոթինից . . . 77—81

Ծանոթություններ . . . 81—86

Է. ԴԱՉԻ (IX—X դ.) Էջ
— Եպիփան Կյուպրացվո Մեկնություն սաղմոսաց Դավթի . 87—87
— [Հայերեն թարգմանություններն անվստահելի չեն] . . 88—88
— Ծանոթություն . . . . . . . . . . . . 88—88

Ը. ՍՏԵՓԱՆ ՏԲԵԹՑԻ (XI—X դ.)
— «Գոբրոնի վկայաբանությունը» (ներածական) . . . 89—90
— [Հայքի վիճակը X դարու սկզբներին և Սմբատ Խոստովանող] . . . . . . . . . . . . 91—93
— Ծանոթություններ . . . . . . . . . . 93—94

Թ. ԱՆԱՆՈՒՆ (մինչ X դ.)
— Որհներգներ Գրիգոր Պարթևին . . . . . . . 95—95

Ժ. ԱՆԱՆՈՒՆ (X դ.)
— «Դավիթ Գարեջեցու վարքը» (ներածական) . . . . 96—97
— [Դավիթ Գարեջեցին և հայերեն (սոմխուրի) լեզուն] . 98—98
— Ծանոթություններ . . . . . . . . . . 98—98

ԺԱ. ԳԵՈՐԳ ՄԵՐՉՈՒԼ (X դ.)
— «Գրիգոր Խանձթեցու վարքը» (ներածական) . . . . 99—100
— [Իշխանի աթոռը] . . . . . . . . . . 100—100
— Ծանոթություն . . . . . . . . . . . 101—101

ԺԲ. ՅԵՓԻՄԻՈՍ ԱԹՈՆԵՑԻ (X—XI դ.)
— VI տիեզերական ժողովի կանոնները (վրացական վերսիա) (ներածական) . . . . . . . . . . 102—103
— [«Հերձվածող հայերը»] . . . . . . . . 103—103
— Ծանոթություններ . . . . . . . . . 103—103

ԺԳ. ՅԵՓԻՄԻՈՍ ԵՐՈՒՍԱՂԵՄԱՑԻ (XI դ.)
— «Հակաճառություն ընդդեմ Սոսթենես Մարմաշենցու» (ներածական) . . . . . . . . . . 105—106
— Հակաճառություն ընդդեմ Սոսթենես Հայոց վարդապետի . 106—108
— Ծանոթություն . . . . . . . . . . 108—110

ԺԴ. ԱՆԱՆՈՒՆ (XI դ.)
— «Պետրոս Թափիչի և ալաջի պատմությունը», «Հաղորդագրություն Սաբուլյան որդի Սարգսի մասին» (ներածական) 111—112
Ա. հատվածից
— [Պետրոս Թափիչը Հայքում] . . . . . . . 113—113
— [Այստեղ պատմվում է «ալաջ» կոչված շան պատմությունը, վոր կարելի յէ ամփոփել այսպես . . . ] . . . . 113—113
— Ծանոթություն . . . . . . . . . . 114—114
Բ. հատվածից
— [Սուրբ Սարգիսը] . . . . . . . . . . 114—116
— Ծանոթություններ . . . . . . . . . 116—118

ԺԵ. ԳԵՈՐԳ ԱԲԵՂԱ (XI դ.)
— «Գեորգ (Գիորգի) Սելեանեցվո վարքը» (ներածական) . . 119—119
— [Հայոց դավանության քննությունը Կ. Պոլսում] . . 119—120
— Ծանոթություններ . . . . . . . . . 120—121

ԺԶ. ԵՓՐԵՄ ԿՐՏՍԵՐ (XI դ.) Էջ

«Ընդդեմ արիանոսաց և յակոբիտանոսաց Գրիգոր աստվածաբանի ճառի մեկնությունը» (ներածական) . . . . 122—122

[Վրացերեն թարգմանությունը հայերենի որդի և հունարենի թոռն է] . . . . . . . . . . 123—123

Ծանոթություններ . . . . . . . . . 123—123

ԺԷ. ՌՈՒԻՍ-ՈՒՐԲՆԻՍԻ ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ (1103 թ.) ԿԱՆՈՆՆԵՐԸ

— Ներածական . . . . . . . . 124—124

— [Խաչեցար-հայերը] . . . . . . . . . 124—124

— Ծանոթություններ . . . . . . . 125—125

ԺԸ. ՀԱՎԵԼՎԱԾ

— Ներածական . . . . . . . . . . 126—127

— Ծանոթություններ . . . . . . . . 127—127

— ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ յերկրորդ պրակի . . . . . . 129—134

Ա. ՍՄԲԱՏ ՎՈՐԴԻ ԴԱՎԹԻ (XI դ.)

— «Բագրատունյաց պատմությունը» (ներածական) . . . 135—136

— [Բագրատունյաց պատմությունից] . . . . . 136—138

— Ծանոթություններ . . . . . . . . . 138—139

Բ. ԼԵՈՆՏԻՈՍ ՌՈՒԻՍԵՑԻ (ԼԵՈՆՏԻ ՄՐՈՎԵԼԻ) (XI դ.)

— «Վրաց թագավորների և նախահայրերի ու տոհմերի պատմությունը». Հավելվածում՝ «Արչիլ թագավորի վկայաբանությունը» (ներածական) . . . . . . . . 140—143

— [Թորգոմյանք] . . . . . . . . 143—147

— [Այլ և այլ դեպքեր «խազրաց» արշավանքների շրջանից] . 147—150

— [Անտիոքոս և Փառնավազ] . . . . . . . 150—151

— [Արշակունիք] . . . . . . . . . 151—165

— [Սասանյանք] . . . . . . . . 165—168

— [Հռիփսիմյանք] . . . . . 169—174

— [Սասանյանք] (շարունակություն) . . . . 174—176

— Ծանոթություններ . . . . . 176—183

— Հավելված . . . . . . . . . . 183—183

— Ծանոթություն . . . . . . . . 183—183

Գ. ՋՈՒԱՆՇԵՐ ՋՈՒԱՆՇԵՐՅԱՆ (XI դ.)

— «Վախտանգ Գորգասալի պատմությունը» (ներածական) . 185—187

— [Վախտանգ Գորգասալ և նրա հաջորդները] . . . . 188—196

— Ծանոթություններ . . . . . . . . . 196—198

Դ. ԱՆԱՆՈՒՆ (XI դ.)

«Վրաց (Քարթլիի) մատյանը» (ներածական) . . . . 199—200

[Արաբական արշավանքները] . . . . . 200—203

[X—XI դարու անցքերը] . . . . . . . 203—209

Ծանոթություններ . . . . . . . . . . 209—213

Ե. ԱՆԱՆՈՒՆ (XII դ.)
— «Դավիթ արքայից-արքայի պատմությունը» (ներածական) . 214—216
— [Գեորգ I և Դավիթ Շինող թագավորներ] . . . . . 216—220
— Ծանոթություններ . . . . . . . 220—224
ՑԱՆԿ ՀԱՏՈՒԿ ԱՆՈՒՆՆԵՐԻ . . . . . . . . . 225—251
INDEX NOMINUM . . . . . . . . . 253—257
ՀԱՎԵԼՈՒՄՆԵՐ ՅԵՎ ՈՒՂՂՈՒՄՆԵՐ . . . 259—260
ՆԿԱՏՎԱԾ ՎՐԻՊԱԿՆԵՐ . . . . . . . . 261—263



## Պրոֆ. Լևոն Մելիքսեթ-Բեկ
(կենսագործունեության համառոտ ակնարկ)

Պրոֆ. Լևոն Մելիքսեթ-Բեկը 20-րդ դարի հայագիտության վաստակաշատ ներկայացուցիչներից է: Այսօր՝ նույնիսկ մահից հիսուն տարի անց, նրա հարուստ, բազմազան ու բազմաժանր գիտական ժառանգությունը մեծ արժեք է հայագիտության, վրացագիտության, առհասարակ, կովկասագիտության համար:

Լևոն Մելիքսեթ-Բեկը հայկաբանական ուսումնասիրություններն սկսեց այն ժամանակ, երբ ականավոր գիտնականներ Նիկողայոս Մառը (1865 – 1934), Նիկողայոս Ադոնցը (1871 – 1942), Ներսես Ակինյանը (1883-1963), Հովսեփ Օրբելին (1887 – 1961) և անվանի շատ ուրիշներ իրենց հեղինակության ու գործունեության գագաթնակետին էին, այդուհանդերձ, Մելիքսեթ-Բեկը՝ որպես արմատական իմացության տեր, սկզբունքային ու անաչառ հետազոտող, կարողացավ իր խոսքն ասել այդ ոլորտում՝ ժամանակակիցների կողմից արժանանալով համընդհանուր գովեստի ու հարգանքի, և ուրույն ու պատվավոր տեղ զբաղեցրեց գիտության տվյալ բնագավառի պատմության անդաստանում:

Լևոն Մելիքսեդեկի Մելիքսեթ-Բեկը ծնվել է 1890 թվականի սեպտեմբերի 26-ին Թիֆլիսում, ծառայողի ընտանիքում: 1897-1899 թթ. Օ. Կ. Օրբելիանիի պանսիոնում նախնական կրթություն ստանալուց հետո 1899-1909 թթ. սովորել է տեղի ռեալական ուսումնարանում: 1906-ին ընտրվել է էսպերանտիստների համաշխարհային լիգայի կազմի մեջ: Բարձրագույն կրթությունն ստացել է 1909-1913 թթ. Օդեսայի (Նովոռոսիյսկ) համալսարանի իրավաբանական ֆակուլտետում, միաժամանակ հաճախել է նույն բուհի պատմաբանասիրական ֆակուլտետի դասընթացներին՝ ունկնդրելով ճանաչված գիտնականներ Ա. Ալմաստովին, Ա. Շպակովին, Ա. Թոմսոնին, Մ. Պոպրուժենկոյին, Է. Ֆոն-Շտերներին և այլոց: Նա իր ավարտական աշխատանքը՝ «Հայոց Ծայրագույն պատրիարքի իրավաբանական կացությունը» թեմայով (ռուսերեն. Օդեսա, 1911, 38 էջ), գրել է ժամանակից երկու տարի շուտ՝ արժանանալով ականավոր հայագետ Գարեգին Հովսեփյանի գովասանքին: Ուսումնառության տարիներին հատուկ հետաքրքրություն է ցուցաբերել հնագիտության նկատմամբ, այդ նպատակով շրջագայել է Հայաստանում, այցելել է Ռուսաստանի և Ուկրաինայի հայաբնակ վայրեր: 1914-ին ընտրվել է պատմութ-

յան և հնությունների Օդեսայի ընկերության թղթակից անդամ: Վերադառնալով Թիֆլիս՝ վարել է մի շարք պաշտոններ, այդ թվում՝ Հայոց ազգագրական ընկերության խմբագրական մասնաժողովի անդամ քարտուղար, Մոսկովյան հնագիտական ընկերության կովկասյան բաժանմունքի իսկական անդամ, ապա՝ գիտական քարտուղար, 1913-1918 թթ. զբաղվել է նաև մանկավարժությամբ:

Թիֆլիսի նորաբաց (հունվար,1918) համալսարանում հայագիտական առարկաներ դասավանդելու և հայագիտությունը զարգացնելու նպատակով բուհի ռեկտոր Իվանե Ջավախիշվիլին 1918 թ. սեպտեմբերին աշխատանքի է հրավիրել տակավին երիտասարդ, բայց արդեն գիտնականի համբավ վաստակած Մելիքսեթ-Բեկին:

1922 թ. նույն համալսարանում հիմնադրվել է հայագիտության ամբիոն, իսկ 1935 թ. ամբիոնին առընթեր՝ հայոց լեզվի և գրականության բաժին՝ ուսանողների ամենամյա ընդունելություն կատարելու իրավունքով: Շուրջ երեսուն տարի՝ մինչև իր մահը (1963 թ. սեպտեմբերի 3), պրոֆ. Լևոն Մելիքսեթ-Բեկը ղեկավարել է ամբիոնը, խոշոր դեր կատարել Վրաստանում հայագիտության զարգացման գործում, վրաց իրականության մեջ ընդլայնել է հայ-վրացական բանասիրության շրջանակները՝ նրանում խորացնելով պատմական թեմատիկան, ինչպես նաև զգալի ջանք է գործադրել հայ և վրացի գիտնականների միջև համագործակցության կապեր ստեղծելու և այն ամրապնդելու համար՝ միշտ և ամենուր «սերմանելով կենսունակ հունդեր...»:

Հայագիտական առարկաներից այստեղ դասավանդվում էին գրաբար, ժամանակակից հայոց լեզու, հայ գրականության պատմություն (հին, նոր և նորագույն շրջաններ), Հայաստանի պատմություն, հայ բանասիրություն, հայ բարբառագիտություն, ինչպես նաև՝ համեմատական քերականություն, կառուցվածքային լեզվաբանության հիմունքներ, եվրոպական լեզուներ և, իհարկե, վրացագիտական առարկաներ:

Լայն են եղել Լևոն Մելիքսեթ-Բեկի գործունեության շրջանակները՝ հնագիտություն, ազգագրություն, աղբյուրագիտություն, բանահյուսություն, կրոնագիտություն, անձավագիտություն, վիմագրագիտություն, լեզվաբանություն, բարբառագիտություն, գրականագիտություն, իրավագիտություն, տեքստաբանություն, արվեստաբանություն և այլն: Բացի հայագիտության գրեթե բոլոր բնագավառներից և հայ-վրացական հարաբերություններից, զբաղվել է նաև հայ-ռուսական, հայ-բյուզանդական, վրաց-ռուսական առնչությունների պատմությամբ: Այս ամենի վերաբերյալ հայոց, ռուսաց և վրաց լեզուներով հեղինակել է ավելի քան 600 մենագրություն, հոդված, գրախոսություն ու հրապարակում, որոնց տպա-

գիր ծավալը կազմում է շուրջ 9000 էջ: Ահա ականավոր գիտնականի ստեղծագործական ժառանգության ոչ ամբողջական կշիռն ու ծավալը:

Պրոֆ. Լևոն Մելիքսեթ-Բեկն աշխատակցել է հայկական բազմաթիվ պարբերականների («Արարատ», «Հովիտ», «Էջմիածին», «Ազգագրական հանդես», «Գեղարվեստ», Էջմիածնի Գիտական ինստիտուտի «Բանբեր») և ռուսական ու վրացական մի շարք հանդեսների:

Լևոն Մելիքսեթ-Բեկի երիտասարդական տարիների գիտական ուսումնասիրություններից որոշակի արժեք են ներկայացնում «Վրացիների ազգակցությունը իսպանացիների հետ ըստ հին աղբյուրների» (1911), «Հայկական հնությունները Ակերմանում. Բեսարաբիա» (1912), «15-րդ - դարի Շարականի մի ձեռագիր՝ հայտնաբերված Օդեսայում» (1912), «Հայկական հնագույն արձանագրությունները Օդեսայի պատմության համար Ռուսաստանի հարավում» (1914) և այլն*:

Լևոն Մելիքսեթ-Բեկը դեռևս 1920 թ. վրացական բուհերի հումանիտար ֆակուլտետների համար հեղինակել է գրաբարի քերականության տարրական դասընթաց և քրեստոմատիական ժողովածու («Ծաղկաքաղ բանից նախնի հայերէն հանդերձ հայ-վրացերէն բառգրքովք»), 1941-ին՝ Հայ հին գրականության պատմության ձեռնարկ (վրաց.), որտեղ գեղարվեստական արժեքներից բացի, ներառել է հայ պատմական մատենագրության գրեթե բոլոր նշանավոր երկերը: Կազմել է հայերեն-վրացերեն բառարան, վրացերեն է թարգմանել Սայաթ-Նովայի հայերեն խաղերը, կազմել և հրատարակել է Շամչի Մելքոյի երգերը, կատարել է գեղարվեստական արձակ և չափածո երկերի երկկողմանի թարգմանություններ, զբաղվել է թարգմանագիտությամբ:

Լինելով լայն մտահորիզոնի տեր՝ Լևոն Մելիքսեթ-Բեկը գիտական լայնածավալ գործունեությունից բացի, դասավանդել է Թբիլիսիի, Երևանի և Բաքվի պետական համալսարաններում, Քութայիսի, Գորիի, Ցխինվալիի մանկավարժական ինստիտուտներում:

Լևոն Մելիքսեթ-Բեկը գիտական ասպարեզ է մտել հայ-վրացական պատմամշակութային հարաբերությունների հիմնախնդիրներին նվիրված աշխատություններով: Շուրջ քսան տարի նա հատկապես ուշադրություն է դարձրել XI-XIII դարերի Հյուսիսային Հայաստանի գիտամշակութային, աստվածաբանական, կրոնադավանաբանական կյանքին, Հայաստանյայց Առաքելական եկեղեցու և վրաց եկեղեցու միջև VI դարում սկիզբ առած և հետագայում թեժացած դավանաբանական և նվիրապետ-

---

* Մանրամասն տե՛ս «Полная библиография печатных работ Л. Меликсет-Бека за 1909-1960 гг.», Тбилиси, 1960.

տական անզիջում վեճերին, երբ իր խոսքերով՝ «Հայ-վրացական հարաբերությունների խաչաձևման այդ տարածքը դարձավ հայերի մշակութային ամենաակնառու անկյուններից մեկը», և երբ Հյուսիսային Հայաստանը «հայտնվեց Վիրքի պետականության ոլորտում»: Ձեռագրերից բացի, պրոբլեմի լիարժեք մշակման համար մասնակցել է հայաստանյան գիտական արշավախմբերին, շրջագայել հայոց պատմամշակութային ու ճարտարապետական հուշարձաններով հարուստ վայրերում՝ այցելել է Երևան, էջմիածին, Պետերբուրգ, Վիեննա, Վենետիկ, ուսումնասիրել թեմային առնչվող հարյուրավոր բնագրեր, հրատարակել փոքրածավալ ու մեծածավալ հետազոտություններ, ի վերջո, այդ հետազոտությունների արդյունքները հանրագումարի է բերել և ներկայացրել դոկտորական ատենախոսությունում՝ «Հյուսիսային կողմանց Հայոց վարդապետները և նրանց ինքնությունը» (վրաց. հրատ., 1928 թ.), որտեղ, ինչպես վերը նշեցինք, փորձել է հնարավորինս անաչառ և սպառիչ վերլուծել Հյուսիսային Հայաստանին (Գուգարաց աշխարհ) վերաբերող մի շարք կարևորագույն խնդիրներ, ինչպես նաև հայ վարդապետների խմբակների շուրջ երկուհարյուրամյա պատմությունը՝ կապված հայ-վրացական պատմական, մշակութային, գիտագրական իրողություններին:

Նշված տարածքում և նշված դարերում հայ վարդապետների, մասնավորապես՝ Մխիթար Գոշի, Անանիա Սանահնեցու, Գրիգոր Տուտեորդու, Գրիգոր Մագիստրոսի, Վանական Վարդապետի, Սամուէլ Անեցու, նրանց մերձավորների ու աշակերտների կենսագործունեության և հիմնադրված խմբակների, բարձրագույն դպրոցների ու կազմակերպությունների հանգամանալից ուսումնասիրությունը հայ գրականության պատմության որոշ հարցերի լուսաբանմանը զուգընթաց, նպաստել է հայ-վրացական գրական-մշակութային, քաղաքական, պատմական հարաբերությունների կնճռոտ որոշ հարցերի պարզաբանմանը ևս:

Պրոֆ. Լևոն Մելիքսեթ-Բեկը փաստական հարուստ նյութերի հիման վրա ապացուցում է, որ նշված դարերի ընթացքում հայ գրականության գրեթե բոլոր ճյուղերը չափազանց զարգացան, ստեղծվեցին համաշխարհային նշանակության գլուխգործոցներ: Այսպես՝ «էզգեզետիկական /մեկնաբանական/ գրականությունը ծեռք բերեց այնպիսի ինքնատիպ երկեր, ինչպիսիք են՝ Հովհաննես Սարկավագի «Յուցակ Սուրբ գրոց»-ը, Գրիգոր Աբասառրդու «Գիրք պատճառաց»-ը, եկեղեցական հիմնոլոգիան՝ Հովհաննես Սարկավագի և Խաչատուր Տարոնացու շարականների շարքը, ջատագովական-դավանաբանական գրականությունը՝ Անանիա Սանահնեցու «Բան հակաճառութեան ընդդեմ երկաբնակաց»-ը, Հովհաննես Սարկավագի «Յաղագս քաղկեդոնացն»-ը և Մխիթար Գոշի «Գծագրու-

թիւն… յաղագս վրաց»-ը, տոմարական-տիեզերաբանական գրականություն՝ Հովհաննես Սարկավագի բազմաթիվ աշխատությունները, իրավագիտությունը՝ Դավիթ Ալավկա որդու «Կանոնագիրք»-ը և հատկապես Մխիթար Գոշի «Դատաստանագիրք Հայոց»-ը, որը հիմք է ծառայել XIII-XVIII դարերի ընթացքում հայերեն և օտար լեզուներով ստեղծված կանոնական գրքերի համար: Օրինակ՝ Կիլիկիայում, Մոլդովայում, Լեհաստանում, Ղրիմում, Հարավային Ռուսաստանում, Վրաստանում և այլն:

Մենագրության մասին հեղինակն անհրաժեշտաբար նշել է, որ հայ-վրացական եկեղեցական հակամարտությանը վերաբերող բնագրային նյութերը մեջբերում է հայերեն, մանավանդ եթե դրանք տպագրված չեն, իսկ եթե այդ նյութերը վերաբերում են հիմնական հարցին, այսինքն՝ վարդապետներին և նրանց գործունեությանը, ապա դրանց կցում է վրացերեն թարգմանությունները: Մնացած դեպքերում բոլոր տեղեկությունները մեջբերում է միայն վրացերեն թարգմանությամբ, իսկ թարգմանությունները, առանց բացառության, կատարել է բնագրին համարժեք:

Հեղինակը իր աշխատությունը համեստորեն դիտարկում է որպես պատմագրական հետազոտությունների փորձ և նկատի ունենալով աղբյուրագիտական համապատասխան նյութերի սակավությունը՝ նաև հույս է հայտնում, որ երբ հրատարակվեն հատկապես Էջմիածնի և Երուսաղեմի պահոցների ձեռագիր մատյանները, կշարունակի զբաղվել պրոբլեմի հետազոտությամբ, նորից կանդրադառնա իր առաջադրած հարցերին, որպեսզի վերանայի, խորացնի ու դարձնի առավել ամբողջական: Այնուհանդերձ, աշխատության հայերեն թարգմանությունը ժամանակավրեպ չէ, թեև անցել է ութ և կես տասնամյակ, քանզի հայագիտության համար այն հույժ կարևոր է: Հարակից խնդիրների ուսումնասիրության առումով ևս կծառայի որպես օգտակար ուղեցույց:

Լևոն Մելիքսեթ-Բեկի հայագիտական ժառանգության մեջ ներկա և ապագա հետազոտությունների համար խոշոր ծառայություն են նրա կողմից շրջանառության մեջ դրված «Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» եռահատոր գրքերը (Գիրք Ա, Ե-ԺԲ դար, 1934: Գիրք Բ, ԺԳ-ԺԸ դար, 1936 և Գիրք Գ, ԺԸ-ԺԹ դար, 1955): Դրանք վրաց հին և միջնադարյան վկայաբանական-վարքագրական, պատմական, գեղարվեստական տպագիր թե անտիպ երկեր են, հարանց վարքեր, ժամանակագրություններ, որոնց վրացի հեղինակները (դրանց մեջ կան նաև հայ հեղինակներ) պատմական, հնագիտական, ազգագրական, աշխարհագրական, արվեստագիտական, լեզվաբանական ու այլևայլ բնույթի կարևոր, եզակի, երբեմն էլ անհայտ տեղեկություններ են հայտնում Հայաստանի և հայերի մասին, և որոնցից Մելիքսեթ-Բեկը կատա-

րել է քաղվածքներ, թարգմանել, հագեցրել է ներածական խոսքերով, համեմատական, բանասիրական և աղբյուրագիտական մեկնաբանություններով, ընդգրկուն ծանոթագրություններով, հավելվածներով ու ցանկով: Չորրորդ գիրքը, որտեղ ամփոփված են վիմական տարեգիրը, հայերենից վրացերեն թարգմանված երկասիրությունները՝ իրենց տարբերակներով, ժողովրդական բանահյուսությունը, հավելվածներն ու կարևորագույն ցանկերը, թեև աշխատության չափազանց կարևորությանը, ցավոք, դեռևս անտիպ է:

Գնահատանքի արժանի է «Հայ գրողները և Վրաստանը» (1964) աշխատությունը, որտեղ նա, ըստ ամենայնի, ներկայացրել է շուրջ երեսուն հայ այն գրողներին ու մշակութային գործիչներին՝ արձակագիրներ, բանաստեղծներ, դրամատուրգներ, աշուղներ, պատմության, բանասիրության և արվեստի ու այլ բնագավառների ներկայացուցիչներ, որոնց կյանքն ամբողջովին կամ մասամբ անցել է Վրաստանում, և ովքեր իրենց բազմաբնույթ երկերում պատկերել են այդ երկրի անցքերը, նիստ ու կացը, վարք ու բարքը, սովորույթները, ինչ խոսք, նաև հայ և վրաց ժողովուրդների ռազմական, քաղաքական, գրական, պատմական ու մշակութային առնչությունները: Հետաքրքիր տեղեկություններ կան գրողների անձնական ու ստեղծագործական հարաբերությունների, հայ և վրաց լեզուների փոխներթափանցման մասին: Գրեթե անթերի բերված են նաև հայ հեղինակների մասին եղած վրացերեն նյութերի և նրանցից կատարված թարգմանությունների ցանկերը: Հեղինակը, նկատի ունենալով ստեղծագործությունների ժանրային յուրահատկությունները, աշխատանքը շարադրել և բնութագրել է յուրովի, ինչպես ինքն է վկայում՝ դրանք տեղ-տեղ նկարագրական են, տեղ-տեղ՝ համեմատական, տեղ-տեղ էլ՝ ժամանակագրական: Աշխատությունը նախատեսված է եղել երկու գրքով, երկրորդը, սակայն, լույս չի տեսել:

Լևոն Մելիքսեթ-Բեկը հատուկ ուսումնասիրության նյութ է դարձրել «Վրաստանի պատմության գրավոր աղբյուրների հրատարակությունները» (Գիրք Ա, Թբիլիսի, 1949, ռուս. և վրաց.), որը բաղկացած է երկու մասից: Առաջին մասում ներառված են V-XVIII դարերի հուշարձանները, իսկ երկրորդում՝ Վրաստանի վերաբերյալ, «Մեզալիթյան մշակույթը Վրաստանում» (1938, վրաց.): Միայն վերջերս իրականացվեց գիտնականի կազմած «Հայերեն-վրացերեն բառարանի» հրատարակությունը (Թբիլիսի, 1996): Այն պարունակում է ժամանակակից հայերենի շուրջ 22 000 բառ և դրանց վրացերեն համարժեքները: Բնականաբար, վերանայվել և մասնակի փոփոխությունների են ենթարկվել բառացանկերը, քանզի հայոց լեզուն տասնամյակների ընթացքում հարստացել է հազա-

բավոր բառերով ու դարձվածքներով, բազմաթիվ բառեր հնացել, դուրս են մնացել գործածությունից, շատերն էլ իմաստափոխվել են: Այն լույս է տեսել բառարանագրության պահանջմունքներին համապատասխան և, անշուշտ, կարող է օգտակար լինել ուսանողներին, թարգմանիչներին, գիտաշխատողներին, առհասարակ հայոց և վրաց լեզուներով հետաքրքրվող անձանց:

**Պրոֆ.** Լևոն Մելիքսեթ-Բեկը ուսումնասիրել և գիտական անհրաժեշտ չափանիշներով հրատարակել է վրացերեն թարգմանված հայերեն շատ ու շատ երկերի քննական բնագրեր՝ համապատասխան բացատրություններով, մասնավորապես՝ «Վարք Ս. Գրիգոր Պարթևի» (1920), Մխիթար Գոշի «Դատաստանագրքի» այն հոդվածները, որոնք ներառված են վրաց արքա Վախտանգ VI-ի «Օրենսգրքում», Ստեփանոս Օրբելյանի «Պատմութիւն նահանգին Սիսական» գրքի՝ Վրաստանին առնչվող համապատասխան հատվածները (1952), Թովմա Մեծոփեցու Պատմության՝ Վրաստանին վերաբերող դրվագները և այլն:

Լևոն Մելիքսեթ-Բեկը կազմել և հրատարակել է «Ընծենավորը» հայ գրականության մեջ», «Նյութեր Ն. Մառի ամբողջական մատենագիտության համար», «Նյութեր հայկական ձեռագրերի քարտարանի մատենագիտության համար», «Գրիշաշվիլու հայերեն թարգմանությունները», «Իսահակյանը վրաց գրականության մեջ» և մատենագիտական այլ ցանկեր:

Բանահյուսական, պատմագիտական ու գրականագիտական հոդվածներից ուշագրավ են՝ «Արտավազդ և Միհրի հետքերը Վրաստանում», «Դավիթ «Անհաղթի» Վրաստանում լինելու շուրջը», «Չորրորդ Հայքի 774-775 թթ. գյուղացիական ապստամբության պատմության շուրջ», «Հայաստանում Կարմիր որդան ներկի արտադրության պատմությունից», «Հայերը Վրաստանում», «Հայերը վրաց հին գրականության մեջ» և հայերեն, վրացերեն ու ռուսերեն հեղինակած բազմաթիվ այլ աշխատանքներ:

Առհասարակ պետք է նշել, որ այս կամ այն խնդրին անդրադառնալիս Մելիքսեթ-Բեկը ուսումնասիրել է բոլոր աղբյուրները, նախորդների աշխատությունները և հետո միայն հայտնել իր կշռադատված ու տրամաբանորեն հիմնավորված կարծիքը:

Լևոն Մելիքսեթ-Բեկը հնարավորինս պայքարում էր այն տեսակետների դեմ, որոնցում կամա թե ակամա խեղաթյուրվում էին պատմական իրողությունները, փորձ էր արվում կասկածի տակ առնել հայոց պատմագիրների աշխատություններն ու դրանց նշանակությունը, արժեզրկել կամ

ժխտել հայերի կամ հայազգի գործիչների՝ Վրաստանին մատուցած ծառայությունները:

Անվանի գիտնական մանկավարժը առանձնապես Թբիլիսիի պետական համալսարանի համար աճեցրել է վրացի հայագետների մի ողջ փաղանգ:

Անգնահատելի է Լևոն Մելիքսեթ-Բեկի վաստակը հայագիտության, վրացագիտության, կովկասագիտության, հայ-վրաց գիտագործնական հարաբերությունների, երկու ժողովուրդների միջև կրթական ու մշակութային կապերի զարգացման և ամրապնդման գործում: Հաշվի առնելով այդ անուրանալի վաստակը՝ Վրաստանի կառավարությունը 1941 թ. նրան շնորհել է գիտության վաստակավոր գործչի կոչում, իսկ 1945 թվականին Լևոն Մելիքսեթ-Բեկը ընտրվել է Հայաստանի գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ:

Լևոն Մելիքսեթ-Բեկի անտիպ թողոնի հրատարակությունը* և ռուսերեն ու վրացերեն աշխատությունների թարգմանությունը հանրության, գիտաշխատողների, կովկասագիտությունն ընտրած ուսանողության և մագիստրոսների, այդ երկրներով հետաքրքրվող անձանց համար փնտրված ձեռնարկներ են:

*Հր. Ս. Բայրամյան*
***20. 09. 2013 թ.***

---

* Կովկասագիտության մաս կազմող անձնական գրապահոցի հարյուրավոր գրքեր նրա մահից հետո հանգրվան գտան Թբիլիսիի պետական համալսարանի հայագիտության ամբիոնին առընթեր, իր իսկ անունը կրող աշխատասենյակում, իսկ արխիվն ու գրադարանը, որ մի ամբողջ հարստություն են, և որտեղ, անշուշտ, կան հրատարակության պատրաստ մեծ ու փոքր աշխատություններ, կոնսպեկտներ, սևագիր կամ անավարտ էջեր, ինչպես նաև նամակները, գիտնականի 80-ամյակի օրերին (1970) ժառանգները նվիրեցին նույն բուհի գիտական գրադարանին: Դրանց հետազոտությունն ու հրատարակությունը նախառաջ հայ մասնագետների առաջնահերթ խնդիրներից պետք է լինի գոնե մոտ ապագայում:

ՀՍԽՀ ԼՈՒՍԺՈՂԿՈՄԱՏ

ՊՐՈՖ. ԴՐ. Լ. ՄԵԼԻՔՍԵԹ-ԲԵԿ

# ՎՐԱՑ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ ՀԱՅԱՍՏԱՆԻ ՅԵՎ ՀԱՅԵՐԻ ՄԱՍԻՆ

ՔԱՂՎԱԾՔՆԵՐ ՎՐԱՑԵՐԵՆ ԲՆԱԳՐԵՐԻՑ ՀԱՅԵՐԵՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅԱՄԲ.
ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ—ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՎ ՅԵՎ ՀԱՎԵԼՎԱԾՆԵՐՈՎ

ՀԱՏՈՐ Ա.
(Ե-ԺԲ ԴԱՐ)

ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅՈՒՆ ՄԵԼՔՈՆՅԱՆ ՖՈՆԴԻ

ՅԵՐԵՎԱՆ 1934

# ԱՌԱՋԱԲԱՆ

«Վրաց աղբյուրները Հայաստանի և հայերի մասին» աշխատությունը մենք ձեռնարկել ենք կազմելու՝ օգտագործելով այդ նպատակի համար վրացերեն լեզվով մեզ հասած թե տպագիր և թե (ըստ կարելվույն) անտիպ աղբյուրները, ինչպես զուտ պատմագրականն և ժամանակագրականը, նույնպես և վարքաբանական-վկայաբանականն ու այսպես կոչված հայրախոսականը, նաև վիմական տարեգիրն ու ժողովրդական բանահյուսությունն ամենալայն իմաստով, մի խոսքով՝ այն ամենը, ինչ վոր իր մեջ Հայաստանի և հայերի մասին վորևե նյութ ե պարունակում, ում գրվածն էլ ուզում ե լինի, միմիայն թե վրաց հեղինակի գրչից յելած ինքնուրույն կամ կոմպիլատիվ (վրացերեն գրվածք) լինի այն։

Ամբողջ աշխատությունը մենք ծրագրած ունենք 4 հատորով.

I հատորում մտնելու յեն V—XII դարու հեղինակները կամ անանուն գրվածքները։

II հատորում մտնելու յեն XII—XVIII դարերի հեղինակները։

III հատորը կազմելու յեն XVIII—XIX դարերի (մինչ 1829 թ.) հեղինակները։ Վերջապես՝

IV հատորում կամփոփենք վիմական տարեգիրը, հայերենից թարգմանված յերկասիրությունների վարիանտները, ժողովրդական բանահյուսությունը, հավելվածներն ու կարևոր ցանկերը։

Ի նկատի ունենալով, վոր վրացերեն բնագրներից կատարած մեր թարգմանություններին մենք կցում ենք ներածություն-ծանոթություններ, վորոնք մեծ մասամբ մեր իսկ հետազոտության արդյունքներն են կազմում, մենք լիահույս ենք, վոր այս մեր աշխատությունը պիտանի կարող ե լինել վոչ միայն հայ ընթերցողի համար, վորը առաջին անգամն ե հնարավորություն ստանում ի

մոտ ծանոթանալու վրաց աղբյուրների հետ, այլև վրացագետների համար։

Հայերեն թարգմանությունները մենք տալիս ենք համաձայն «վերականգնված» բնագրերի, վոր մենք ենք կատարել, յերբեմն նույնիսկ մեր իսկ ձեռքով տպագրության պատրաստած նյութի հիման վրա (ըստ ձեռագրերի), վորը բավականին տարբերվում ե ցարդ գոյություն ունեցող հրատարակություններից։

Ընդ սմին, թյուրիմացությունների տեղիք չտալու համար, անհրաժեշտ ենք գտնում մատնանշել, վոր թարգմանության ժամանակ մենք միշտ աշխատել ենք հատուկ անունները (թե աշխարհագրական և թե անձանց) ու այսպես կոչված «եթնիկական» տերմինները ներկայացնել «հայկական հարազատությամբ»՝ կողքին, կլոր փակագծի մեջ, դնելով այն և վրացերեն բնագրի արտասանությամբ. իսկ անկյունավոր փակագծերի մեջ դնում ենք այն բառերն ու նախադասությունները, վորը մենք ենք ավելացնում իմաստը հասկանալի դարձնելու համար։

Ինքնըստինքյան հասկանալի յե, վոր՝ քանի վոր այնպիսի տերմինների գործածությունը նախնական շրջանի նկատմամբ, ինչպիսիք յեն «Հայաստան» կամ «Վրաստան»-ը, կատարյալ անաքրոնիզմ կլիներ, մենք առհասարակ այդպիսիներից խուսափում ենք՝ գործածելով դրանց փոխարեն 1) «Հայք» (→«Հայոց»), ինչպես եկվիվալենտ վրացերեն «Սոմխիթ»-ի և 2) «Վիրք» (→«Վրաց»), ինչպես եկվիվալենտ «Քարթլի»-ի գլխատառ գրությամբ. իսկ «հայ»—«հայեր» (→«հայոց») և «վրացի»—«վրացիներ» || «վրացիք» (→«վրաց») զուգընթացաբար գործածում ենք իբրև լոկ «եթնիկական» տերմիններ (փոքրատառ գրությամբ)։

* * *

Մեր ներկա աշխատության առաջին հատորի առաջին պրակի մեջ մենք ամփոփել ենք համապատասխան նյութեր վրաց գրականության զարգացման նախնական շրջանի յերկասիրություններից, վորոնք գրեթե բացառապես վարքաբանական-վկայաբանական հայրախոսական, յեկեղեցա-պատմական կամ ժամանակագրական բնույթ են կրում, ընդամենը 15 հեղինակությունից կամ 19 յերկասիրությունից քաղած, վորոնք V—XI դարերին են պատկանում կամ այդ դարերին վերագրվում։ Ինքնըստինքյան հասկանալի յե, վոր նյութերը դասավորված են իբրև առանձին-առանձին հատվածներ, բացի մի-յերկու դոկումենտից, վոր մենք առաջ ենք

քերում կամ ամբողջությամբ (IX դարու անանուն հեղինակների համառոտ Հայոց «պատմության» փորձերը), կամ չնչին կրճատումներով (IX դարու հեղինակ Արսեն Սափարացու «Հայոց և Վրաց բաժանման մասին»), որոնք առանձնապես հետաքրքիր են իբրև զուտ գրական գործեր և ոչ ժամանակակցի ձեռքով կատարված պատմական անցքերի նկարագրություններ կամ պատմագրական վերափոխություններ, որոնք վրաց գրականության մեջ միմիայն XI դարում են ծնունդ առնում (XI—XII դարում յերևան յեկած վրաց պատմիչներին հատկապես նվիրվում է առաջին հատորի յերկրորդ պրակը)։

Ինչպես ընթերցողը կնկատի, ներկա (առաջին) պրակում զետեղված նյութը կարծես թե գլխավորապես յեկեղեցական պատմությանն է վերաբերում, մասամբ՝ հայոց և վրաց բաժանման հարցի հետ կապված դավանաբանական վեճերին, որի կողքին աննշան տեղ ունին գրաված Հայաստանի պատմական աշխարհագրություն, ժամանակագրական պատմություն և այլ և այլ պատմական անցքերի ու անձանց վերաբերյալ տեղեկությունները, իսկ տնտեսականի մասին և ոչ մի խոսք։ Բայց սա հո մեր մեղքը չէ, յերբ ինքը նյութը հենց այդ է մեզ մատակարարել...

Սակայն հայոց պատմության համար բոլոր այդ տվյալներն արժեք ունին այն տեսակետով, որ՝ տենդենցիոզ լինելով հանդերձ՝ բղխում են իդեոլոգիապես հակառակ, այսինքն հույն-բյուզանդական տնտեսական-քաղաքական որիենտացիային յենթակա քաղկեդոնիկ (դիոֆիզիտ կամ յերկաբնակ) միջավայրից, մինչդեռ ամբողջ հայ գրականությունն այն ձևով, ինչպես որ այն հասել է մեզ՝ լինելով նույնպես տենդենցիոզ՝ ասորա-պարսկական որիենտացիային յենթակա, ուղղակի հակաքաղկեդոնիկ (մոնոֆիզիտ կամ միաբնակ) իդեոլոգիայի դրոշմն է կրում. և հետևապես պետք է յենթադրել, որ հայերեն լեզվով յերբեմն գոյություն ունեցող քաղկեդոնիկ իդեոլոգիայի գրականությունն, մեծ մասամբ հունական ազդեցություն կրող կամ հունարենից թարգմանվածը, հակաքաղկեդոնականության հաղթանակով իսպառ ոչնչացրած են։ Յեվ հենց այդտեղ է համապատասխան վրաց աղբյուրների արժեքը, նամանավանդ, որ վերջիններն՝ յերբեմն դավանաբանական վեճերի հետևանքով անհետացած և մեզ չհասած հայկական աղբյուրների վրա յեն հիմնված։ Համենայն դեպս, այնպիսի դոկումենտների հրատարակումով, որոնք հայ քաղկեդոնականության զարգացման հնագույն շրջանին են վերաբերում, հարց է ծագում հայ հին գրականությունն

վերագնահատելու մասին*)։ Եվ իրոք, հայ և վրաց պատմագիրների տվյալների տարաձայնությունը չէ՞ վոր աղբյուրն է այն հակասությունների, վոր նկատելի յեն հին Հայաստանում և Վրաստանում շնորհիվ առաջավոր Ասիայում միշտ մարտնչող յերկու տարբեր քաղաքական-տնտեսական սիստեմների (Մարք, Պարթևք, Պարսիկներ, Արաբացիք՝ մեկ կողմից, Հույնք, Հռոմայեցիք և Բյուզանդացիները՝ մյուս կողմից)։

Ինչ վերաբերում է նույն V—XI դարերին պատկանող այն գրվածքներին, վորոնք հայերենից վրացերեն թարգմանությամբ են հասել մեզ (ի նկատի ունենք Աթոնի Իվերոն վանքի X դարու «վարք հարանց»ի «հայոց» կամ «ասորվոց» սրբերի վարքերը) և վորոնց հայերեն բնագրերը կամ տարբերվում են թարգմանությունից կամ կորած են (օրինակ Դավիթ և Տիրիճանի վկայաբանությունը), ուր՝ բնագրերի համեմատ, տարբեր կամ լրացուցիչ տեղեկություններ կան Հայաստանի և հայերի մասին, այդպիսիները մենք մտադիր ենք զետեղել «Հավելվածների» մեջ, վոր մեր աշխատության IV-հատորն է կազմելու։

Լ. Մ.-Բ.

*Տփղիս*
7. III. 1933

---

*) Վորքան այս տեսակետից շահեկան են Ն. Մառի, Իվ. Ջավախիշվիլու, Կ. Կեկելիձեյի յեվ Ն. Ակինյանի համապատասխան ուսումնասիրությունները, վոր մենք բավականին օգտագործած ունենք, նույնքան մեզ համար վ. րև և արժեքից զուրկ են այնպիսի աշխատությունները, ինչպիսի յեն Աղեքսանդր Պալճյանի «Պատմութիւն կաթողիկէ վարդապետութեան ի Հայս» (Վիեննա 1878), S. Weber-ի Die Katholische Kirche in Armenien (Freiburg in Breisgau 1903) և այլն։ Մի կողմն ենք թողնում Կարապետ Տեր-Մկրտչյանի դոկտորական շարադրությունը՝ Die Paulikianer im Byzantinischen Kaiserreiche und verwandte Ketzerische Erscheinungen in Armenien, Leipzig 1893:

Ա.

# ՀԱԿՈԲ ՑԵՐԵՑ (V Դ.)

## «ՇՈՒՇԱՆԻԿԻ ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ»

«Շուշանիկի վկայաբանություն»-ը, որ հայտնի է հայերեն և վրացերեն լեզուներով, հասել է մեզ զույգ-զույգ խմբագրությամբ՝ ընդարձակ և համառոտ։ Հայերենը հրատարակված է «Սոփերք Հայկականք»-ի Թ. հատորի մեջ (Վենետիկ 1853), ընդարձակ խմբագրությունը 11—47 էջերում, իսկ համառոտը 49—55, երկուսի ծանոթությունները 57—61 էջ. (համառոտի կրկնությունը տես նաև՝ Լ. Մելիքսեթ-Բեկ «Ծաղկաքաղ բանից նախնի հայերէն հանդերձ հայ-վրացերէն բառգրովք», հատուած առաջին. Ծաղկաքաղ, Տփղիս 1920, էջ 100—103). վրացերենի ընդարձակ խմբագրությունը հրատարակել են նախ Միք. Սաբինինը իր «Վրաստանի դրախտ» կոչված ժողովածուի մեջ (Ս. Պ. Բ. 1882), էջ 181—192, ապա Ս. Գորգաձեն առանձին գրքույկով՝ «Սուրբ Շուշանիկի վկայաբանությունը» (Տփղիս 1917), էջ 1—23, ծանոթություններն և հավելվածները 25—44, իսկ համառոտը հրատարակեց, ըստ Աթոնի Իվերոն վանքի X դարու «Վարք հարանց» ժողովածուի, Ալ. Խախանովը (Խախանաշվիլին) իր աշխատության մեջ «Материалы по грузинской агиологии» [«Труды по востоковедению», изд. при Лазаревском институте вост. языков, вып. XXI] (Москва 1910), էջ 49—51։ Հետագա (XVIII դարու) վրացերեն խմբագրություններից կատարած ռուսերեն թարգմանությունը տես՝ (М. Сабинин «Полное жизнеописание святых грузинской церкви», ч. I, Спб. 1871, стр. 141—152:

Վաղուց Ն. Մառը (Из поездки на Афон, — «Журнал Министерства Народного Просвещения», 1899, март, стр. 19—20) այն կարծիքն էր հայտնել, որ վկայաբանության վրացերեն համառոտ խմբագրությունը բառացի թարգմանություն է համապա-

տասխան հայերեն խմբագրությունից, իսկ ինչ վերաբերում է նույն վկայաբանության ընդարձակ խմբագրությունների առնչությանը իրար հետ, դրա մասին նույն Ն. Մառը ոչինչ չէր ասել

1917 թվին, տալով Շուշանիկի վկայաբանության վրացերեն ընդարձակ խմբագրության քննական հրատարակությունը, Ս. Գորգաձեն իր գրքույկի վերնագրի վերևից անհրաժեշտ էր գտել դնելու և հեղինակի անունը՝ «Հակոբ Երեց, V դար»։ Սույն գրվածքն V դարու Հակոբ Երեցին վերագրելը ոչ մի առարկություն չգտավ պրոֆ. Իվ. Ջավախիշվիլու կողմից՝ 1921 թվին լույս ընծայած ուսումնասիրության մեջ՝ «Հին վրացական պատմական գրականությունը (V—XVIII դ. դ.), երկրորդ լրացրած հրատարակություն», էջ 13—26, ապա և պրոֆ. Կ. Կեկելիձեի կողմից՝ «Վրաց գրականության պատմության» I հատորում (Տփղիս 1923), էջ 119—124, որոնք ավելի ևս պարզեցին վկայաբանության ավտենցիայի հարցը։ Մասնավորապես Իվ. Ջավախիշվիլին ջանաց ապացուցել, որ՝ մինչդեռ վկայաբանության համառոտ վրացերեն խմբագրությունը բառացի թարգմանություն է հայերենից, նույն հեղինակության մյուս՝ ընդարձակ վրացերեն խմբագրությունն ինքնուրույն գրվածք պիտի համարել, որին աղբյուր է ծառայել հայերեն խմբագրության համար, մի խոսքով, վրացերեն ընդարձակ խմբագրությունը հիմք է ծառայել (ա. աստիճան) հայերեն ընդարձակ խմբագրությանն (բ. աստիճան), որը հետագայում համառոտվել է (գ. աստիճան) և ապա թարգմանվել է վրացերեն (դ. աստիճան)։

Այս կարծիքն այժմ վրաց գրականության մեջ ընդունված է ու տարածված, և գրեթե ոչ ոք առարկության չի հանդիպում։

Այժմ տեսնենք, թե ինչ տվյալների հիման վրա յեն վրացագետները (Ս. Գորգաձե, Իվ. Ջավախիշվիլի, Կ. Կեկելիձե և ուրիշները) ապացուցում Շուշանիկի վկայաբանության ինքնուրույն վրացերեն գրվածք և այն էլ V դարու հեղինակ Հակոբ Երեցի հորինվածք լինելը, որը միաժամանակ վրաց գրականության հնագույն հիշատակարանն է համարվում։

1. Դիմելով մի ինչ որ հեղինակավոր անձի՝ վկայաբանության կազմողը մի ինչ որ հատվածից հետո, որը նույն վկայաբանության սկզբնական մասն պիտի կազմեր կամ գուցե ներածությունը, ասում է (էջ 1). «Ձեզ ահա հավաստապես պատմեմ Ձեզ սուրբ և յերանելի Շուշանիկի մահվան մասին» (որանով է սկսվում վրացերեն տեկստը)։ Ապա՝ խոսելով Վարդան Մամիկոն-

ցանի մասին՝ նա մատնանշում է (նույն տեղ). «Վորի մասին յես Ձեզ գրեցի»։ Մի ուրիշ տեղ՝ բդեշխի դրան յեպիսկոպոս Ափուտի (Ափոցի) անունը տալով՝ հեղինակն ավելի վորոշակի ասում է (եջ 3). «Յես ել՝ Շուշանիկ տիկնոջ (Թագուհու) յերեցն՝ այն յեպիսկոպոսի մոտն եյի»։ Յեվ ահա այստեղից պարզ է, վոր հեղինակը՝ առաջ բերելով իր և Շուշանիկի միջև տեղի ունեցած բազմաթիվ զրույցները (դիալոգները)՝ միշտ ընդգծում է, թե վերջինս ինչպես եր դիմում իրեն, հեղինակին՝ «Յերեց», «Այ յերեց» ասելով։ Վերջապես, վրացերեն բնագրում կա և մի այնպիսի տեղ (եջ 9—10), ուր մի վոմն պատանի՝ փնտրելով Յերեցին Շուշանիկի բնակության տեղում՝ հարցնում է. «Հակոբն այստե՞ղ է», վորին ինքը՝ հեղինակը, պատասխանում է. «Ինչ կուզես», և նա ասում է. «բդեշխին կանչում է»։

Ըստ յերևույթին, այս տվյալների հիման վրա յե, վոր նախ Մ. Սաբինինը (1882) և ապա Ս. Գորգաձեն (1917) վկայաբանության հեղինակ համարեցին Հակոբ Յերեցին, վորը նույն գրվածքի հայերեն վերսիայի մեջ անանուն «դրան քահանա» յե կոչվում (Սոփերք, Թ., եջ. 29)։ Իսկ Իվ. Ջավախիշվիլին մանրամասն ապացուցեց այս կետը՝ հիմնվելով ինչպես վերև բերած տվյալների վրա, նույնպես և ամբողջ հորինվածքի, կազմվածքի և վոճի վրա։ «Հակոբ Յերեցի գրվածքը,— ասում է բազմաշխատ վրացագետը,— ինչպես իր պատմական, աշխարհագրական [ու] ժամանակագրական տեղեկություններով, նույնպես և նխատուկացի նկարագրությամբ, պատմական բնույթով ու վոճով և, վերջապես. հեղինակի պատմվածքի հոգեբանական ճշտությամբ իրոք վոր ժամանակակցի, ականատեսի և համագործակցի կողմից գրված յերկասիրություն պիտի ճանաչվի» (Հին վրացական պատմական գրականությունը, 19)։ Մոտավորապես նույն միտքն է արտահայտում և Կ. Կեկելիձեն, յերբ պնդում է, վոր Շուշանիկի վարքը գրի յե առել «վոչ թե սովորական ժամանակակիցն ու ականատեսը, այլ [բդեշխի] ապարանքին շատ մերձեցած և, միաժամանակ, համեմատաբար պատրաստված անձն՝ Հակոբ Յերեցն, վորը դրան քահանա յեր և Շուշանիկի խոստովանահայրը. Հակոբն այն անձնավորություններից մեկն եր, վորը վոչ մի րոպե չեր հեռացել իր հոգևոր զավակից անտանելի տանջանքի և նեղության ժամանակ, նրա հետ եր ապարանքում և ապարանքից դուրս՝ յեկեղեցում ու բերդում» (Վրաց գրականության պատմությունը, I, 119—120)։ Ընդ սմին, նույն Կ. Կեկելիձեն՝ ի նկատի առնելով վկայաբանության մեջ

լեղած ղանազան թվականները՝ գտնում է, որ այն հորինված պիտի լինի 474—484 թվականներին (ibid., էջ 123)։

2. Իվ. Ջավախիշվիլու հետազոտությամբ, հայերեն և վրացերեն ընդարձակ խմբագրությունները (որից ծագած են համառոտները), ակնհայտնի կերպով իրարից տարբերվում են գլխավորապես հետևյալ կետերում. Ա. մինչդեռ վրացերենը գրված է առաջին դեմքով, հայերենում հեղինակը սկի չի լերևում, և պատմվածքն լերրորդ դեմքով է ներկայացրած. Բ. Վրացերեն տեքստի ավագույն տեղերը, ուր այն ժամանակվա նիստուկացի ճշտագույն պատկերն է ներկայացրած, հայերենում բաց են թողնված։ Գ. Թվականները վրացերենում ավելի մանրամասնորեն և ճշտորեն են առաջ բերված, քան թե հայերենում, ուր այդպիսիններն յերբեմն (օրինակ Շուշանիկի մահվան մասին) նույնիսկ բաց են թողնված։ Դ. ժամանակագրական տվյալներն ու գործող անձանց անունները (օրինակ՝ բդեշխի դրան լեպիսկոպոսի և դրան լերեցի) վրացերենում ամենայն բարեխղճությամբ են առաջ բերված, մինչդեռ հայերենում այդպիսիները բաց են թողնված։ Ե. Հայերենում պակասում են մի շարք այնպիսի տեղեկություններ, որոնք այն ժամանակվա պատմության ու աշխարհագրության են վերաբերում (օրինակ Հերեթի և Ցուրտավի մասին), ինչպես և Շուշանիկի անձնավորության, բնավորության, մտածելակերպի և բնորոշ առանձնահատկությունների նկարագրությունը։ Զ. հայերեն տեքստը՝ համեմատաբար վրացերենի հետ ավելի կրճատված լինելով հանդերձ՝ ավելի ընդարձակ ձևով է ներկայացնում զանազան աղոթքները, որոնք վրացերենում քիչ տեղ ունեն գրաված, և այլն։

Շուշանիկի վկայաբանության վրացերեն ընդարձակ խմբագրությունից ստորև քաղած տեղեկությունները, ճիշտ է բուն Հայաստանին (Հայքին) չեն վերաբերում, քանի որ ի նկատի ունեն Հայոց (Հայքի) և Վրաց (Քարթլիի) սահմանակից Հերեթ=Ռանը, բայց և այնպես մենք այդպիսիններն առաջ ենք բերում, որպեսզի նպաստած լինենք Գուգարքի պատմությանը, որն այնքան սերտ կապված է նույն Հայոց և Վրաց անցյալի հետ։

Քաղվածքների թարգմանություններն առաջ ենք բերում համաձայն Ս. Գորգաձեյի հրատարակության (համեմատությամբ Մ. Սաբինինի հրատարակածի հետ), կողքին դնելով հայերեն վերսիայի համապատասխան հատվածն ըստ «Սոփերք»-ի։

## [ՇՈՒՇԱՆԻԿԻ ԾԱԳՈՒՄԸ ՅԵՎ ԲՆԱԿՈՒԹՅԱՆ ՏԵՂԸ]

*Պարսից [Պերոզ] Թագավորի [իշխանության] ութերորդ տարին[1] դեպի արքունի դուռն ուղևորվեց Վազգեն բդեշխն (Վարսքեն պիտիախշն)՝ Աշուշայի որդին, որը սկզբում քրիստոնյա էր, քրիստոնյա հորից ու մորից ծնված։ Յեվ Նրա կինն էր հայոց սպարապետ Վարդանի դուստրը, որի մասին ահա գրում եմ Ձեզ. հորից Նա Վարդան էր կոչվել, իսկ ըստ սիրո Նրա անունն Շուշանիկ, աստծուց յերկյուղած, ինչպես արդեն ասացինք, մանկությունից իսկ...*

*Հեռանալով Պարսից Թագավորից՝ բդեշխն (պիտիախշն)... մոտեցավ Վրաց (Քարթլիի) սահմաններին, Հերեթ[2] յերկրին....*

*...[Յեվ նա] յեկավ Ցուրտավ[3] կոչված ավանը....*

*Իսկ բդեշխի (պիտիախշի) դըրան յեպիսկոպոսը, որի անունն էր Ափուտ[4], այնտեղ չէր գտնըվում, որովհետև գնացել էր սըրբուհու (Շուշանիկի) մտերիմներից մեկի տունը.... և յես էլ [Հակոբ]՝ Շուշանիկ տիկնոջ (Թագուհու) յերեցս՝ այն յեպիսկոպոսի մոտն եյի....*

*Իսկ բդեշխն (պիտիախշն) ուղեվորվեց Ձորդ[5], բայց Նրա յեղբայր Ջոջիկը չհանդիպեց Նրան [այնտեղ]... և բդեշխի (պիտիախշի) յետևից ընկնելով՝ հասավ*

*Եւ եղեւ ի ժամանակս Պարսից Թագաւորութեանն՝ բդեաշխ Վազգեն, որդի Աշուշայ բդեշխի, որ ի դուռն արքունի երթեալ ուրացաւ զքրիստոնէութիւն, և եղեալ ընդ պարսկական օրինօքն ի կամաց և ոչ ի հարկէ և ի բռնութենէ։ Եւ կին ունէր զդուստր Վարդանայ Հայոց սպարապետի Մամիկոնէի, թոռն սրբոյն Սահակայ Պարթևի և Հայոց հայրապետի՝ ի դստերէն Սահականուշայ, և անուն նորա Վարդենի ի ծնողացն կոչեցեալ, Շուշանիկ յորջորջանօք յետոյ անուանեալ. բարեպաշտօն և երկիւղած յաստուծոյ ի մանկութենէ իւրմէ...*

*նրան Հերեթի սահմաններում...*

*[Յերկիրն, ուր գտնվում է Ծուրտավը[6], նկարագրվել է այսպես՝]. ամռան պահին արևի կեծությունը կրակի պես է այրում, քամիները տաք և ջրերը փտատարար. այդտեղի բնիկները լի չեն ախտով, ջրով ուռած և դեղնած են, մարմինը ծակծկած, չորացած, քոսոտ, կարմիր քամուց [փչացած], յերեսը ուռած. և նրանց կյանքն էլ կարճատև. և վոչ մի ծեր չկա նրանց յերկրում....*

---

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1. Ըստ* Ս. Գորգաձեյի *(Ս. Շուշանիկի վկայաբանությունը, եջ 26), 458 + + 8 = 466 թվին, ըստ* Իվ. Ջավախիշվիլու *(Հին վրացական պատմական գրականությունը, եջ 16), 456 կամ 457 + 8 = 464 — 465 թվին։*

*2. Նույն տեղը։*

*3. Տես 6. ծանոթությունը։*

*4. Նույն Ափսայը ըստ «Գիրք Թղթոց»-ի (եջ 178), վորը Ծուրտավի թեմի առաջին յեպիսկոպոսն յեղավ (*Կ. Կեկելիձե, *Նվիրապետական կազմը հին Վրաստանում, վրացերեն, —* «Bulletin de l'Université de Tiflis, X, *1930, եջ 313)։*

*5. Զորդ կոչված ավանը, ըստ յերևույթին, Տայքումն է յեղել, վորովհետև Տայքեցն եր Զորդուանել իշխանների տոհմը։*

*6. Ծուրտավը զանազան հեղինակներ յերկար ու ձիգ դարերի ընթացքում սկսած դեռ ևլի X դարուց՝ այլ և այլ տեղերումն եյին փնտռում։ Այս հարցը, անկասկած, Հայաստանի և Վրաստանի պատմական աշխարհագրության հիմնական պրոբլեմներից մեկն է, քանի վոր Գուգարաց բդեշխության յերբեմնի կենտրոնի և սահմանների հարցին է վերաբերում։ Ըստ* Ուխտանեսի, *այն X դարում կոչվելիս է յեղել Գաջենք, գտնվելով «յեզր գետոյն՝ որ կոչի յիւր անուն Գաջենագետ, ի նահանգին որ կոչի Վրաց-դաշտ, որ է միջասահման երկուց աշխարհացն Հայոց և Վրաց... հանդէպ լերինն Կուկառու, որ է սահմանակից... մեծի մայրաքաղաքին Տփխեաց» («Պատմութիւն բաժանման վրաց ի հայոց», Վաղարշապատ 1871, եջ 34)։* Ստեփաննոս Օրբելյանի *մոտ էլ Ծուրտավը կոչվելիս է յեղել «Գաչենք», զորոյ զթեմն — ասում է Ստեփաննոսը — այժմ ունի Հախպատ» (Պատմութիւն Նահանգին Սիսական, արարեալ Ստեփաննոսի Օրբէլեան արքեպիսկոպոսի Սիւնեաց [«Լուկասեան մատենադարան» Դ]. Թ. 1911. եջ 105)։*

**XVIII** *դարու վրաց աշխարհագիր* Վախուշտը *փնտռում եր Ծուրտավը Ախտալա վանքից դեպի արևելք, Բորչալու կամ Դեբեդի լեռան շրջանում* (Descrip-

tion géographique de la Géorgie par le *Tsarévitch Wakhoucht*, publiée par M. Brosset, S. P. B., 1842, p. 142, n. 1): *Մեկնելով Վախուշտի խոսքերը.* Մ. Բրոսսեն *լինել էր այն յեզրակացության, որ Ծուրտավը գտնվում է* «à l'E. d'Akhtala, sur le Berdoudj, la Kamenka de Russes» (*M. Brosset*, Deux historiens Arméniens, S. P. B. 1870, p. 295—296. n. 2. *Հմմտ.* Additions et éclaircissements à l'Histoire de la Géorgie, p. 109, n. 3), *որը սակայն այլևայլության կրկնում է և վրացագետ Թ.* Ժորդանիան *տարօրինակ մեկնաբանությամբ՝ «Ծուրտավը, ամենայն (?) Գաջենքը, Վախուշտի Գաչիանը (Ախտալայից մոտ, ռուսական* Каменка *գյուղը) գտնվում էր Դուգարքում, Հերեթի և Քարթլիի սահմանում» (Քրոնիկաներ, վրացերեն, I, Տփխիս 1892, եջ 320, ծանոթ. 42)։* Մ. Ջանաշվիլին (*Վախուշտի աշխարհագրությունը, վրացերեն, Տփղ. 1904, եջ 51, ծանոթ. 92*), *կանգ առնելով «Ջուրտակետ» անվան ստուգաբանության վրա, փորձ հայտնի յե Ղարաբուլախի շրջանը, գտնում է «հավանական, որ Շուշանիկի քաղաքը հետագայում վերանվանվեր Ջուրտակետ»։ Ըստ* Ղ. Ալիշանի (*Յուշիկք հայրենեաց Հայոց, I, 375*) *և ապա* Ն. Ակինյանի (*Կյուրիոն կաթողիկոս Վրաց, Վիեննա 1910, եջ 199*), *Ծուրտավը գտնվելիս է յեղել «Բողնոփոր գավառին հարավային ցածադույն ծայրին» — «կիսաւուր ճամփով միայն հեռու» Տփղիսից։ 1912 թվին* Սարգիս Կակաբաձե (*Սուրբ Նունեն ու նրա նշանակությունը Վրաստանի պատմության մեջ, վրացերեն, եջ 8*) *այն կարծիքի յեր, որ Ծուրտավը «այժմյան Մանգլիսից դեպի արևմուտք էր գտնվում»։ 1914 թվին հրատարակած իր «Վրաց ժողովրդի պատմություն» (վրացերեն)* II *գրքում* Իվ. Ջավախիշվիլին *ուղղակի ասում է՝ «Հերեթումն էր համարվում Ծուրտավը, սակայն իսկապես վորտեղ էր այն գտնվում, չգիտենք» (եջ 307)։ 1916 թվին հրատարակած մեր հատուկ փոքր հոդվածում* «К вопросу о местоположении Цуртава» (Известия Кавк. отд. Рус. Геогр. О-ва, т. XXIV, № 3) *մենք՝ ամփոփելով հարցի գրականությունը՝ այն մտքին եյինք հայտնել, որ «Ծուրտավը պետք փորձել կամ այժմյան Ախտալայի մոտերը, Բերդուջի կամ Դեբեդա-չայի (Կամենկայի) շրջանում, կամ հին Գաչիանի տեղում՝ Քցիա կամ Խրամ գետի աջ ափին» (եջ 341—345, հմմտ. նաև մեր* «Гадженк-Гачиан»,—«Христ. Восток», т. VI, пгр. 1918, стр. 94-95)։ *Չհամաձայնվելով մեզ հետ՝* Սարգիս Կակաբաձե (*Վրաց պետականության գենեզիսի հարցեր, վրացերեն,*—«Bulletin Historique», *Տփղիս 1924, Գ. 1, եջ 74-75*) *գտնում է, որ Ծուրտավը Պասկևիչի արշավանքի քարտեզում, որ* Ուշակովն *էր կազմել, Ջրոուտ է կոչվում՝ գտնվելով Խրամ գետի ձախ ափին, վոր, ըստ յերևույթին, Ծուրտավ անվան աղավաղումն է. Նույնը* Ս. Կակաբաձե *կրկնում է և 1928 թվին* (К истории названия города Тифлиса,—«Исторический сборник» II, 67) *հետևյալ խոսքերով.* «Эквивалент названия Гачиан-и —Цуртав (Ухтанес, как известно, считает эти названия идентичными) находит об'яснение на арм. яз., именно *ցուրտ холодный* (само слово иранского происхождения) с суффиксом-ав, встречающимся и в других древних географических названиях на Юго-Кавказе (например, Тел-ав, Ман-ав, Зан-ав, Парт-ав и пр.). В этом же значении Гачиан-и при сопоставлении с аварским коачан—*холодный* вполне покрывает термин Цурт-ав, который, таким образом, представляется простым переводом термина Гачиан-и в его аварском, так сказать, аспекте. Гачиан-и—Цуртав, повидимому, находился в районе нынешнего Хоша-Килиса на правом берегу р. Храм (притока Куры), у слияния с ним р. Машавер»։

Վերջապես, 1928 թվին հրատարակած «Վրաց ժողովրդի պատմություն» (վրացերեն) I հատորի Գ. հրատարակության մեջ Իվ. Ջավախիշվիլին նորից պնդում է 1914 թվին արտահայտած այն դրույթը, որ Ցուրտավը Հերեթում էր գտնվում։

1928—1932 թվականների ընթացքում մենք հնարավորություն ունեցանք պրպտումներ կատարել գրեթե ամբողջ Գուգարքում (Լոռի-Տաշիր, Թրիալեթ-Ծալկա, Ջավախեթ-Ղարաբուլախ և այլն) և ամենայն մանրամասնությամբ հետազոտեցինք Ցուրտավի հարցն իր բոլոր չափերով՝ հաշվի առնելով գրականության մեջ արտահայտված գրեթե բոլոր կարծիքներն ու ցուցմունքներն այդ մասին, և յեկանք այն վերջնական յեզրակացության, որ Ցուրտավ-Գաջենքը Թաշիանը)՝ Գուգարաց բդեշխների մայրաքաղաքը՝ Բորչալուի (այժմյան Լյուքսեմբուրգի) շրջանի Թուրքական Աօրխլո գյուղն է, որ յերբեմն վրացերեն «Նախիդուրի» է կոչվել, այսինքն կամրջատեղ (ըստ Վախուշտի քարտեզների)՝ Խրամ կամ Քցիա գետի աջ և ձախ ափերին, ուր վառոգից առուներն են սկիզբ առնում և, ի միջի այլոց, «Վախտանգ թագավորի արխ» կոչվածը XVIII դարում*). իսկ Ուխտանենի Գաջինադինը ոչ այլ ինչ է, բայց յեթե նույն Խրամը. և հենց այստեղ են մնացել բազմաթիվ յեկեղեցիների ավերակներ, որոնց մեջ աչքի յե ընկնում Վաղարշապատի Ս. Գայանեի ձևով կառուցված կաթողիկեն, իսկ փոքր յեկեղեցիներից մեկում աչքի յե ընկնում Մանգղյաց հինավուրց քարե խաչի (վրացերեն «Մարիամ Ջվարի», ռուսերեն՝ Каменная невеста, ռուսերեն՝ «Մամիդա» կոչվածի) տիպարը։ Այս Աօրխլոյի մոտ է գտնվում և XVIII դարու վերջերում վրաց Հերակլ II-ի այրիի՝ Դարեջան թագուհու վերանորոգած ընդարձակ «Բոլաղիր» ‖ «Բալադիր» (հմմ. Կախեթի «Բոլադի», այսինքն ճողաճա-տեղ) բերդը, որ թյուրքերեն «Աղ-ղալա» յե կոչվում (Դարեջանի վերանորոգության մասին տես Ե. Թաղայշվիլի. Վրաստանի հնությունները, վրացերեն, III, Տփղ. 1910, եջ 299—300)։ Ընդ սմին, այս Աօրխլո-Բոլադիրից ոչ շատ հեռու գտնվում է և պատմական Սամշուլդե-Սամշվիլդե բերդաքաղաքը, յերբեմն Կորիկյանց աթոռանիստը, որի մայր եկեղեցու (VIII դարում կառուցվածի) արևելյան պատի վրա փորագրված վրացերեն յերկաթագիր արձանագրության յերկրորդ տողում ասված է, որ տաճարի շինողները՝ «բդեշխների զարմից» ([Նա]թեսավիթ պիտիախշնի) են յեղել (*Е. Такайшвили*, Археологические экскурсии, разыскания и заметки, вып. II, Тфл. 1905, стр. 42)։

Ցուրտավի ու, նրա հետ, ամբողջ «Վրացդաշտ»-ի այնպիսի դիրքին, որ մենք գտնում ենք Աօրխլույում, միանգամայն համապատասխանում է, ի միջի այլոց, և հետևյալ յերկու հանգամանքը։ Նախ՝ 506 թվին Դվինի (Դունայ) ժողովի մասնակիցների շարքում «[Ց]ո[ւ]րտաւ»-ի յեպիսկոպոսի անունը հիշվում է «Բողնիս»-ի և «[Ռ]ուսթաւ»-ի յեպիսկոպոսների անվանց միջև, որոնց արդեն հետևում են «Տփղեաց»-ն ու «Մանգղեաց»-ը. ուրեմն, պարզ է, որ իր աշխարհագրական դիրքով Ցուրտավը Բողնոփորի և Ռուսթավ-Գարդաբանի կամ Հերեթի մեջտեղն պիտի լիներ, որպիսին միմիայն Խրամ գետի ավազանը կարելի յե համարել իր ներքևի մասում, ուր Աօրխլույից (Նախիդուրից) դատ ոչ մի ուրիշ՝ փոքր ի շատե նշանավոր՝ կենտրոն չի յերևում։ Յերկրորդ՝ կարծեցյալ «Ցուրտավներից» և ոչ մեկը — ոչ Ախտալայի դիմաց գտնվող հատն

---

*) «Նախիդուրի»-ի նկարագրությունը տես՝ Ս. Վ. Ջալալեանց, Ճանապարհորդութիւն ի Մեծն Հայաստան, II, 92-93)։

վանքը, վոչ Կամենկան, վոչ Զուրտակետը և վոչ էլ Մանգլիսի շրջակայքը — կլիմայական հատկություններով սկի չեն համապատասխանում այն միանգամայն սոսկալի պատկերին, վորի մանրամասն նկարագրությունը տալիս է մեզ Շուշանիկի վկայաբանության վրացական բնագիրը։

Բացի դրանից պարզվեց, վոր նույն բդեշխներն (պիտիախշներն) ունեցել են և մի ուրիշ բնակավայր, ուր նրանք, հավանական է, «քոչիլիս» են լեղել ամառվա ամիսներին իրենց ամբողջ գերդաստանով, մերձավորներով, ծառաներով ու տավար-վոչխարով, և այդ յերկրորդ բնակավայրն (յայլան) է այժմյան Վերին-Մալկայի հունական Ավրանլո ‖ Արվանլո գյուղը, վորը, յերբեմն, ըստ VI դարու քարոզիչ Աբիբոս Նեկրեսեցու վկայաբանության (Սարգիս Կակաբաձե, Ասորի հայրերի վարուց նախատիպերը, վրացերեն, Տփղ. 1928, եջ 44-45), «Ռեխա» է կոչվել՝ լինելով VI դարում բդեշխների (բնագրում սխալմամբ «մարզպաններին») բնակատեղը իր հսկայական «մեգալիթիկ» կամ «կիկլոպյան» (աչկատարյան) սիստեմի բերդաքաղաքի ավերակներով, ուր ամփոփված է «Աբիբոս» կոչված վանքը (ըստ Վախուշտի) և նույնպես՝ ինչպես և Առըխլոն՝ ջրաբաշխական ամբողջ սիստեմով։ Այդ «Ռեխա» անունն է, վոր այժմ կրում է Ավրանլոյից վերև, Խրամի ձախ ափին, գտնվող գյուղը։ Մյուս կողմից, հիշատակելի յե, վոր նույն Խրամի ձորը Ավրանլո ‖ Արվանլո — Ռեխայի շրջանում Վախուշտի քարտեզում (XVIII դար) կոչվում է «Սապիտիախչո» (ուղիղ՝ «Սապիտիաշխո»), այսինքն բդեշխական, վորի նշմարքը մինչև որս հասել է մեզ նույն Վերին-Մալկայի Բուրնաշեթ գյուղի վերևից գտնվող և «նախապատմական» դույզ մենհիրներ պարունակող մի վայրում, վոր հայերեն, հունարեն և թյուրքերեն «Սապիտաղճ» է կոչվում և վորը, անկասկած, նույն վրացերեն «Սապիտիախչո» — «Սապիտիաշխո»-յի ուրույն արտասանությունն է՝ նոր քարտեզներում Забатагджа — «Զաբատաղջա»-յի վերածված այս «Սապիտաղճա»-ն այժմ հայոց Ղզլ-քիլիսա գյուղի «յայլան» է ներկայացնում)։ Վերջապես, Ռեխա — Սապիտաղճայից վոչ շատ հեռու գտնվում է և «Գուջարեթ» կոչված ավանը՝ «Գուջարեթի» ձորով, վոր, անկասկած, վաղեմի «Գուգարեթլի»-ի, այսինքն «Գուգարք»-Γωγαρηνή-ի արտաքական-թյուրքական հորջորջումը պիտի լինի (տես. Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, Спб. 1908, стр. 425, прим. Նաև՝ Իվ. Ջավախիշվիլի, Վրաստանի սահմանները, վրացերեն, Տփղ. 1919. եջ 16)։

Վոր «Ցուրտավ»-ը ջրաբաշխական սիստեմի հետ կապված յերբեմնի կենտրոնի և միաժամանակ «քիշլաղ»-ի անուն պիտի լինի, ցույց է տալիս այն հանգամանքն էլ, վոր ինչպես ինքը «Ցուրտավ» անունն, նույնպես և «Ռեխա»-ն (նույնիսկ այժմյան «Առըխլո»-ն, վոր «առխ», առու արմատն է պարունակում) կազմված են ջուր իմաստ ունեցող արմատներից. 1) վրաց «Ցուրվա» լողալ՝ «Ծուրվա» քամել (հմմ. հայկ. ծոր, ծորակ. ծորան, ծորել, ծորենի, ծորում և այլն) և 2) ռուս. ре-ка, бе-ре-г, озе-ро, ру-чей, ру-сло, ру-салка, ры-ба, мо-ре, ов-ра-г, Рã Rã (Волга), Рехы; լատին. mare, rivus, rivulus, riviere, ruisseau, Renos ‖ Reyn, Rona և այլն. (համմ. Սանսկր. ri-na)։ Հարցիս վերաբերյալ մանրամասնությունները տես մեր աշխատության մեջ՝ «Թրիալեթ-Մալկայի անցյալից» (վրացերեն), վորը հանձնված է տպագրության։

---

Բ.

# ԿՅՈՒՐԻՈՆ ՍԿՈՒՏՐԵՑԻ (ՍԿՈՒՐՏԱՑԻ)

## (VI—VII Դ.Դ.)

*Խօսելով Վրաց Կյուրիոն (Կիրիոն) կաթողիկոսի մասին, որը ծագումով Ջավախքի Սկուարի գյուղիցն էր, և տալով նույն Կյուրիոնի կենսագրությունը ըստ «Գիրք Թղթոց»-ի և* Ուխտանեսի *պատմության, Հ.* Ներսես Ակինյանը *իր հատուկ ուսումնասիրության մեջ՝ «Կիւրիոն կաթողիկոս Վրաց. Պատմութիւն հայ-վրական յարաբերութեանց եօթներորդ դարու մէջ» (Ազգային մատենադարան, Կ, Վիեննա 1910) համապատասխան ԺԳ գլխում («Կիւրիոն իբրև մատենագիր») առանձնապես կանգ է առնում Կյուրիոնի գրական գործունեության վրա։ Հարց տալով՝ «արդեօք ստացած յունական կրթութիւնն և այն պաշտօնները, զորս ստանձնեց նա այլ և այլ ժամանակներ, չընծայեցի՞ն առիթ գրականութեամբ ալ պարապելու, ըլլայ ինքնագրութեամբ, ըլլայ թարգմանութեամբ յունարէնէ կամ հայերէնէ վրացերէն»,* Ակինյանը *պատասխանում է՝ «դժբախտաբար, սակայն, Վրաց հին գրականութենէ շատ քիչ բան ծանօթ ըլլալով՝ ոչինչ կրնանք ըսել այս մասին ստուգութեամբ։ Բայց իւր գրական գործունէութենէն ունինք այլ և այլ նշխարքներ Հայ Մատենագրութեան մէջ, որոնք բաւականաչափ կը պարզեն իւր ընդունակութիւնն այս ճիւղին մէջ ալ։ Այս նշխարքները իւր թղթակցութիւններն են, պահուած* Թղթոց գրքին *մէջ և Ուխտանեսի քով» (էջ 261—262)։ «Ցայսօր այս թղթակցութեանց ոչ վրացերէնը գտնուած է և ոչ յունարէնը», — ասում է* Ակինյանը, *և ապա շարունակում. «Բայց ապահովապէս* վրացերէն գոյութիւն ունեցէին երբեմն *), *գոնէ առաջին թուղթը Մովսէս Կաթողիկոսին Թղթին հետ Ժ. դարուն* վրացերէն *կը* գտնուէր*, *թարգմանուած, ինչպէս կը կարծեմ, հայերէնէ. այնպէս որ մեզ հասած օրինակը*

---

*) *Ընդգծումը մերն է*

*(առ Ուխտանիսի) յետս թարգմանութիւն* (Bückübersetzung) *է լոկ»* *(էջ 262—263)։*

*Դասելով Կյուրիոնին վրաց գրական գործիչների (մատենագրականների և մեկնաբան-թարգմանիչների) շարքը և տալով, ինչպես և* Ն. Ակինյանը *(թեև սրանից բոլորովին անկախ) նրա՝ Կյուրիոնի՝ կենսագրության փորձն ըստ* Ուխտանեսի, Կորն. Կեկելիձեն *(Վրաց գրականության պատմություն,* I, *124—125) առանձնապես մատնանշում է այն փաստը, որ Կյուրիոնը «գրագրություն է ունեցել Յերուսաղեմի և Հռոմի հայրապետների հետ» Քաղկեդոնի ժողովի քրիստոսաբանության (քրիստոլոգիայի) հարցի շուրջը և, ի միջի այլոց, Հռոմի պապին դիմել է նեստորականներին վերաբերյալ հարցով, ի հետևումն որի Գրիգոր* I *պապից ստացել է ընդարձակ պատասխան* Epistola S. Gregorü I Qurino vel Quirico Episcopo et ceteris Episcopis in Hybernia catholicis *վերնագրով, որը հասել է մեզ (P. Michel Tamarati,* Histoire du catholicisme en Géorgie avec les documents justificatifs du XIII-e au XX siecle, Tiflis *1902,* p. *575—577)։ Իր տեսությունը* Կ. Կեկելիձեն *վերջացնում է հետևյալ եզրակացությամբ. «Մի խոսքով, Կյուրիոնն առաջին վրաց գրողն է, որը անկախ պայքար է մղել նեստորականության-միաբնակության դեմ, թեև նրա յերկասիրությունները մեզ չեն հասել* (op. cit., 125)։

*Ի հարկե, ցավալի յէ, որ այնպիսի հնագույն հեղինակի գրություններից, ինչպիսին է Կյուրիոնը, ոչ մի բան չի մնացել վրացերեն լեզվով, որից մենք կարողանայինք օգտվել Հայաստանի և հայերի մասին նյութեր քաղելով [1])։*

---

1) *Մի քանի խոսք Կյուրիոնի ծննդյան տեղի՝ Ջավախքի Սկուտրի գյուղի մասին։ — Այժմ Ջավախքում «Սկուտրի» անունով գյուղ չկա, բայց կա «Կոտելիա», որ գուցե նույն «[Ս]կո[ւ]տրի»-ի հետագա ձևափոխությունը լինի։ Ի դեպ, մատնանշելի յէ նաև այն, որ Կյուրիոնը, իբրև թունդ քաղկեդոնիկ, հայ հակաքաղկեդոնիկների ատելությունն էր գրավել այն աստիճանի, որ նույնիսկ* Սկուտրի *գյուղից նրա ծագումը, ասոցիացիայով* Սկարիովտացի *Հուդային հիշեցնելով՝ նրա հակառակորդները մատին փաթաթան էին դարձրել։ Յեվ այդպիսով միանգամայն հասկանալի յէ* Ուխտանեսի *հետևյալ բնորոշումը, որ նա տալիս է Կյուրիոնին. «զոր մերժեալ և հերձեալ հեռացոյց [զՎիրս] ի մէնջ Կիւրիոն* Սկուրտացի՝ *հանդոյն և հաւասար լեալ Յուդայի* Սկարովտացւոյ» *(Պատմութիւն բաժանման Վրաց ի Հայոց, էջ 35)։*

## Գ.

# ԱՆԱՆՈՒՆ (IX Դ.)

## «ՎՐԱՑ ԴԱՐՁԻ [ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ]»

*«Վրաց (Քարթլիի) դարձը» կամ «Վրաց (Քարթլիի) դարձի պատմությունը», վրացերին «Մոքցեվայ Քարթլիսայ»,* resp. *«Քարթլիս մոքցեվա» կոչվածը, վրաց գրականության պատմության մեջ նույն նշանակությունն ունի, ինչ վոր «Հայոց դարձի պատմությունը» կամ «Ագաթանգեղայ պատմութիւնը» հայ գրականության պատմության մեջ։ Այն հասել է մեզ յերկու վարիանտով, վորոնցից մեկը 973—976 թ. թ. գրված Շատբերդ վանքի հայտնի ժողովածուի մեջն է (այս պատճառով էլ կոչվում է «Շատբերդի վարիանտ»), իսկ մյուսը՝ համեմատաբար ավելի ուշ ժամանակվա, այսպես կոչված Ճելիշի վանքի ձեռագրում (վորն ըստ այսմ «Ճելիշի վարիանտ» է կոչվում)։ «Պատմությունը» բաղկացած է յերկու մասից.* առաջինը *ներկայացնում է իրենից «Վրաց դարձի» ժամանակագրականը կամ քրոնիկոնը, իսկ* յերկրորդը*՝ հատկապես ս. Նունեյի (Նինոյի) վարքը, վորոնք, հավանական է, տարբեր հեղինակների կազմածն են, սակայն մեկի ձեռքով ի մի հավաքած. յուրաքանչյուր մասն, իր հերթին, պարունակում է, անշուշտ, հնագույն գրվածքներ այլևայլ հեղինակների (որինակ վոմն Գրիգոր սարկավագի* VII *դ., վորը, համենայն դեպս, «Դարձի պատմության» հորինող չի կարող համարվել. և այլն), վորոնք, սակայն, նրանից անկախ դեռ հայտնագործված չեն։ Յերկու մասերից և վոչ մեկը մեծ պատմական արժեք ունեցող գրվածքներ չեն ներկայացնում, վորովհետև լի յեն սխալներով, անաքրոնիզմներով և այլն։ Հրատարակվել է «Վրաց (Քարթլիի) դարձի պատմությունը» մի քանի անգամ։ Սկզբներում, յերբ այն հայտնի յեր միայն՝ Շատբերդի ձեռագրում, նրա բնագիրը փոքրիկ ուսումնասիրությամբ և ծանոթություններով հանդերձ լույս ընծայեց*

Ե. Թաղայշվիլին՝ առաջին մասը ժողովածուի մեջ «Յերեք պատմական քրոնիկա» (վրացերեն), Տփղիս 1890, էջ 1—115, իսկ յերկրորդը առանձին գրքույկով՝ «Ս. Նունեյի վարուց Նոր վարիանտը կամ Վրաց դարձի [պատմության] յերկրորդ մասը» (վրացերեն), Տփղ. 1892, էջ 1—74։ Նույն 1892 թվին Թ. Ժորդանիան նորից հրատարակեց «Դարձի» միմիայն առաջին մասն իր աշխատության՝ «Քրոնիկաներ»-ի I հատորում, էջ 11—79։ 1900 թվին վերոհիշյալ Ե. Թաղայշվիլին ներկայացրեց «Դարձի» ամբողջ տեկստի (այն է յերկու մասերի) ռուսերեն թարգմանությունը իր հայտնի աշխատության մեջ՝ վերնագրով Источники грузинских Летописей —Три хроники („Сборник материалов для описания местностей и племен Кавказа“. вып. XXVIII, отд. I, стр. *1—116, և առանձին)*, ուր այն առաջին տեղն ունի գրաված. I. Обращение Грузии (в христианство), իսկ անգլիացի հայտնի վրացագետներ *Marjory Wardrop* and *V. O. Wardrop* լույս ընծայեցին «Դարձի» յերկրորդ մասի, այն է Ս. Նունեյի վարքի, անգլերեն թարգմանությունը՝ Life of. st. Nino („Studia Biblica of Ecclesiastica“. Volume V, Part. I, Oxford *1900* p. p. *1--88)*. Ճելիշի վարիանտը հայտնագործելուց հետո նույն Ե. Թաղայշվիլին «Դարձի» տեկստն ամբողջությամբ կրկին հրատարակեց զուգընթացաբար՝ ըստ Շատբերդի և Ճելիշի վարիանտների՝ սակայն առանց թարգմանության, իր ստվար աշխատության մեջ Описание рукописей «Общества распространения грамотности среди грузинского населения, т. II, Тифл. 1906—1912, стр. 708/710—727 *(ա. մասը)* և *727—805/813 (բ. մասը)*։ Այսպիսով, այժմ մենք ունենք Շատբերդի վարիանտի ա. մասի յերեք, իսկ բ. մասի յերկու հրատարակություն, հանդերձ ռուսերեն թարգմանության յերկու մասերի ևս, և անգլերենի՝ յերկրորդ միմիայն մասի, իսկ Ճելիշի վարիանտինը միմիայն մի հրատարակություն՝ յերկու մասերինը՝ առանց վորևէ թարգմանության։

Ինչ վերաբերում է այն հարցին, թե ո՞վ է «Դարձի» հեղինակն և յե՞րբ է այն գրված, դրա մասին դեռ ելի վերջնական լուծում չկա։ Հեղինակի անունը կատարյալ մթության մեջ է, իսկ գրության ժամանակի վերաբերյալ գոյություն ունի մի քանի կարծիք. մինչդեռ հեղինակների մի մասը, այն է Ե. Թաղայշվիլին *(Յերեք պատմական քրոնիկա*, XCII—XCV*)* և Ս. Կակաբաձեն *(Պատմական պրպտումներ, վրացերեն, Տփղ. 1924, էջ 56—92*, К истории названия города Тифлиса, — «Исторический Сборник»

II, *1928, եջ 69—70)*, *վերագրում ե այն* VII *դարուն, մյուս մասն, այն ե* Իվ. Ջավախիշվիլին *(Հին վրացական պատմական գրականությունը, եջ 85—91, 73—85) և* Կ. Կեկելիձեն *(Վրաց գրականության պատմություն,* I, *569—579), համարում են այն* IX *դարու գործ, վերջինս նույնիսկ* IX—X *դ. դ. (համենայն դեպս. վոչ ուշ քան 882—912 թ. թ.)։ Հիշատակելի յե նաև «Դարձի» տարբեր մասերի նախատիպի մասին գոյություն ունեցող հետևյալ կարծիքները. ըստ* Ս. Կակաբաձեի (op. cit., 67—71), *ա. մասի սկզբնական հատվածը հավանական ե հունարեն լիներ գրված 365—400 կամ 380—400 թ. թ., իսկ ըստ F. C. Conybeare-ի* («Studia Biblica et Ecclesiastica», 1900), *բ. մասը կարծես թե ասորերեն լիներ գրված։*

*Ստորև բերած քաղվածքների թարգմանությունը կատարված ե համաձայն* Ե. Թաղայշվիլու *1906—1912 թ. թ. հրատարակության։*

## Ա. ՄԱՍԻՑ

## [ՎՐԱՑ ԴԱՐՁԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ]

*Այն որվանից (Կոստանդիանոս կայսեր պարտվելուց 310 թ.) տասներորդ տարին*[1] *գնաց Հեղինե [կայսրուհին] Յերուսաղեմ [Քրիստոսի] պատվական խաչը փնտռելու, և տասնուչորսերորդ թվականին*[2] *մի ինչ վոր պատճառով փախուստի դիմեց արքունի կանանցից մեկը՝ անունով Հռիփսիմե, իր դայակով հանդերձ։*

*Յեվ նրա հետ գտնվում եր վոմն գեղեցիկ գերուհի անունով Նունե (Նինո), վորի գործ[ունեյություն]ը հետազոտել եր Հեղինե թագուհին, և եր նա (Նունեն) իշխանուհի Հռոմից, վորը ինքն եր սկսել իր ճանապարհ[որդություն]ը՝ բուժելով [հիվանդներին]՝ և հասել Հունաստան. Նա [ինքն] ուսուցանում եր իր իշխանուհի Հռիփսիմեյին։*

*Անցնելով ծովով՝ Հռիփսիմե, Գայանե, Նունեն ու նրանց ուղեկիցները մտան Հայքի (Սոմխիթի) սահմանները, Տրդատ (Թրդատ) թագավորի բնակատեղը, և բոլորը մարտիրոսացան այնտեղ*[3]*։*

*Մնաց միայն Նունեն, վորն ուղեվորվեց հյուսիսային լեռների ուղղությամբ։*

## [ԱՅԼ ՑԵՎ ԱՅԼ ԴԵՊՔԵՐ ՎՐԱՑ ԴԱՐՁԻՑ ՀԵՏՈ]

*Եվ թագավոր նստեց նրա (Բակուրի) յեղբայր Տրդատը (Թրդատը), իսկ յեպիսկոպոսապետ էր Ներսես (Ներսե) հայոց կաթողիկոսի Յոբ սարկավագը...*

*...Ապա պարսից թագավորի բդեշխ (պիտիախշ) Բրամ-խուար-Բոր-Ջարդը մտավ Տփղիս քաղաքաբերդն, և Քարթլին նրա հարկատու դարձավ, նույնպես և Հայքը (Սոմխիթը) և Սյունիքը և Վասպուրականը...*

*Եվ նրանից (Փարսմանից) հետո թագավորում էր Բակուրը և կաթողիկոսն էր Մակարը. այս պահին էր Վազգեն բդեշխը (Վարսքեն պիտիախշը) և Շուշանիկը վկայեց Ցուրտավում...*[4] *Այս Բակուրի որոք վերջ յեղավ վրաց (Քարթլիի) թագավորությանը...*[5]

*Պարսիկները տիրապետում եյին Քարթլիին և Հայքին և Սյունիքին և Վասպուրականին...*

---

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. *Ուրեմն 310+10= 320 թ.*

2. *Ուրեմն 310+14= 324 թ.*

3. *Անկախ «Վրաց դարձի պատմություն»-ից, Հռիփսիմյանց և Գայանյանց պատմությունը գոյություն ունի վրացերեն զանազան վերսիաներով. ա. իբրև մասն Գրիգոր Պարթևի վարուց (տես Л. Меликсет-Беков,* Грузинская версия Агафангелия и ее значение для грузинской историографии,—«Христ. Восток», т. IV 1915, стр. 155—170, *հատկապես 168—169.* Vita S. Gregorii Parthianensis, edidit Leo Melikset-Bek [Monumenta georgica, I, Scriptores ecclesiastici, № 2], Tiflis 1920), *և բ. իբրև ուրույն վկայաբանություն Հռիփսիմեյի, Գայանեյի և այլոց (տես А. Цагарели,* Сведения о памятниках грузинской письменности, т. I, в. 3, стр. 160. *М. Джанашвили,* Каталог предметам церковного музея грузинского духовенства, Тфл. 1914. стр. 1, *Л. Меликсет-Беков,* Новый список «Жития свв. Рипсимии, Гаянии и сподвижниц» на грузинском языке,—«Христ. Восток», т. III, 1915, стр. 313—314. *Robert P. Blake,* Catalogue of the Georgian Manuscripts in the Cambridge Universty Library,—«Harvard Theological Review», vol. XXV, July 1932, Number 3. p. p. 216, 220—221. *E. Takaichvili,* Les manuscrits Géorgiens de la Bibliothéque Nationale de Paris, etc, Paris 1933 p. 26):

*Ի դեպ, անհրաժեշտ է մատնանշել, վոր «Հռիփսիմյանց» հիշատակության մասին վրաց դարձի պատմության մեջ՝ գոյություն ունեին տարբեր կարծիքներ. վոմանք կարծում են, վոր սա արտահայտություն է հնագույն ավանդության, ըստ վորի հայերն ու վրացիները քրիստոնեացել են Գրիգոր Պարթևի քարոզությամբ, թեև ինքը Գրիգորը «Դարձի» պատմության մեջ սկի չի հիշվում, մինչդեռ նա ծանոթ է, ինչպես իր տեղում կտեսնենք, Արսեն Սափարացու «Վրաց*

և Հայոց ժամանման մեջ, ուր, մյուս կողմից, Հռիփսիմյանց մասին վոչ մի հիշատակություն չկա, իսկ մյուսները այն կարծիքին են, վոր սա հետագա դարերում հորինված պատկերագրային-իդեոլոգիական վարք, մծխեթյան առաջնայնությունն է, ի հարկե, քաղկեդոնականության հաղթանակների հետ կապված (համաձայն Կեսարիա-բյուզանդական թեորիայի)։ Հմմ. հինգերորդ գլխի 7 ծանոթությունը։

4. Ըստ այսմ, Շուշանիկի վկայությունը վերագրվում է VI դարուն, վոր, ի հարկե, անաքրոնիզմ է (հմմ. Իվ. Ջավախիշվիլի, Հին վրացական պատմական գրականությունը 90)։

5. Համաձայն 532 թ. «Հավիտենական դաշնագրության», Իվ. Ջավախիշվիլի, վրաց ժողովրդի պատմությունը, I, 1928, եջ 226—227)։

## Բ. ՄԱՍԻՑ

## [Ս. ՆՈՒՆԵՆ ՀԱՅՔՈՒՄ]

Հասնելով Կլառեթ յերկրի Բուղի* ավանը, [Նունեն] հիվանդացավ և ապա վախճանվեց...

Իսկ [մինչ նրա մահը] ժողովեցան նույն յերկրի թագավորն և իշխան-իշխանուհիները, և ժողովրդի հոծ բազմություն...

Սալոմե Ուջարմացի տիկինն (թագուհին) և Պերոժավր Սյունեցին և նրանց հետ գտնվող բոլոր իշխանները դիմեցին Նունեյին հարցնելով. «ո՞վ ես դու և ինչպես յեկար մեր յերկիրը...»

Ապա Նունեն պատասխանեց. «...յեթե ցանկանում եք գիտենալ [թե ինչպիսի եր] իմ՝ ձեր խեղճ աղախնու՝ ուղին, կասեմ...»...

Ապա Սալոմե Ուջարմոյեցին և Պերոժավր Սյունեցին բերին թանաք ու գրիչներ, և Նունեն սկսեց պատմել. իսկ նրանք գրում եյին։ Նա (Նունեն) սկսեց պատմել իր ծնողների մասին...

«...Իսկ պատրիարքն իմ մորս հանձնել եր թշվառ և հիվանդ կանանց ծառայելու, իսկ յես ծառայում եյի պառավ հայուհի Նիափորա**) Դվինեցու մոտ յերկու տարի...

«[Այդ Նիափորան, ի միջի այլոց,] ինձ ասաց. «Հյուսիսային յերկիրը [ուր Մցխեթում Քրիստոսի շապիկն է թաղված,] գտնվում է Հայոց [յերկրի] լեռնաստանում. այն հեթանոս յերկիր է, հունաց և խուժկաց պետությանն ստորադրյալ...

«[Կոստանդիանոս կայսեր մկրտվելուց] յոթերորդ տարին տեղի ունեցավ Նիկիո ժողովը և մեր փախուստը Հռոմաստանից։ Հռիփսիմե տիկինն (թագուհին) և Գայանե դայակը, և հիսուն հոգի [ուրիշները] յեկանք առաջին ամսվա տասն և հինգին։

---

*) Var. Բոդիսի **) Var. Միափորա։

«Ցետ յեկանք Հայքի (Սամխիթի) սահմանները Տրղատ (Թրղատ) թագավորի պարտեզը, ուր նրանք և սպանվեցին առաջին ամսվա յերեսունին՝ ուրբաթ օրը։

«Իսկ յես մնացի վարդենիի փշերի մեջ... և յես յեկա հասա Ուլոպորեթ*[1], ուր և մեծ թշվառության մեջ անցկացրի ձմեռը։

«Ցետ չորրորդ ամսին անցա Ջավախքի (Ջավախեթի) լեռների կողմը, վորպեսզի տեղեկանամ, թե ուր է Մցխեթը...»[2]...

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Ուլոպորեթի դիրքը դեռևս անհայտ է, համենայն դեպս, այն չպետք է շփոթել Ալան-Ուրբան-Ալբանոպոլիս,- Ուրբանոպոլիս-Քորբոնոպոլիս-Արեբան-Աղբակի հետ։

2. Առհասարակ «Վրաց դարձի պատմության» մանրամասնությունները նորագույն լուսաբանությամբ կարելի յե գտնել კორნ. კეკელიძის համապատասխան աշխատության մեջ, «Վրաց դարձի գլխավոր պատմա-ժամանակագրական խնդիրները», վրացերեն, — «Միմոմխիլվելի», I, 1926, եջ 1 — 53, գերմաներեն ռեզյումեյով. Նույնը գերմաներեն՝ *K. Kekelidze*, Die Bekehrung Georgiens zum Christentum [«Morgenland», Darstellungen aus Geschichte und Kultur des Ostens, Heft 18], Leipzig 1928, S. S. 1—51։ Տես, ივ.ჯავახიშვილი, Վրաց ժողովրդի պատմությունը, վրացերեն, I, 1928, եջ 162—215 (ուր, ի միջի այլոց, կարելի յե գտնել և კეკელიძის յեզրակացությունների քննադատությունը)։

---

*) Var. Ուլեպորեթա

## Դ.

# ԱՆԱՆՈՒՆ (IX Դ.)

## «ԿՈՆՍՏԱՆԴ-ԿԱԽԻ ՎԱՐՔԸ»

*Կոնստանդ-Կախը վրաց այն իշխաններից եր, վորը «Ափխազաց» թագավորի զորաբանակում եր գտնվում Բուղայի 853 թվի օգոստոսյան արշավանքի պահին Քարթլիի վրա և վորին՝ Տփղիսի ամիրա Սահակի պարտվելուց հետո, նույն թվի 26 օգոստոսի ձերբակալեցին ու տարան Տփղիս Բուղայի մոտ, իսկ այստեղից Ա. Ասիայի Սամարիա քաղաքը, ուր և գլխատեցին նույն 853 թվի 10 նոյեմբերի։*

*Եվ ահա այս պատմական անձնավորության «վարք»-ն է, վոր գրվել է նրա ժամանակակից անանուն հեղինակի կողմից, Բյուզանդական «Թեոդորա թագուհու որոք», մինչ վերջինիս Միքայել վորդու չափահաս դառնալը, ուրեմն 853—856 թ. թ.* (Կ. Կեկելիձե, *Վրաց գրականության պատմություն,* I, *566—567. հմմ.* Իվ. Ջավախիշվիլի, *Հին վրացական պատմական գրականությունը, 52—58)։*

*«Վարք»-ի մեջ առաջ բերած տեղեկությունները միանգամայն զուգադիպում են այն տվյալներին, վոր տալիս է Ատենի (Գորու մոտ) Սիոն հինավուրց տաճարի 853 թվի հազվագյուտ արձանագրությունն (տես И. Джавахов,* К вопросу о времени построения грузинского храма в Атене по вновь обследованным эпиграфическим памятникам.—«Христ. Восток», т. I 1912, стр. 277—285) *ու Թովմա Արծրունի (Պատմութիւն տանն Արծրունեաց, դպրութիւն Գ, գլուխ ԺԱ), մասամբ նաև արաբացի մատենագիր* Ալ-Տաբարին *(հմմ.* Բ. Խալաթյանց, *Արաբացի մատենագիրները Հայաստանի մասին [«Ազգային մատենադարան», ՁԴ], Վիեննա 1919, եջ 98—101)։*

*Ատենի արձանագրությունն ուղղակի նշում է, վոր «օգոստոս ամսի 5-ին, շաբաթ օրը, քրոնիկոնի 73 [=780+73=853],*

արաբական 239 թվին, Բուղան ավերեց Տփղիս քաղաքն և ձերբակալեց ու սպանեց Սահակ ամիրային, և նույն ոգոստոս ամսվա 26-ին, նույնպես շաբաթ օրը, Ջիրաքը ձերբակալեց Կախային ու նրա վորդի Թարխուջին» (*И. Джавахов*, op. cit., 278—279, համ. Իվ. Ջավախիշվիլի, *Վրաց ժողովրդի պատմությունը*, II, Տփղ. 1914, եջ 376)։

Թովմա Արծրունուն (հրատ. Ղուկասյան Մատենադարանի №ԺԶ, Տփղիս 1917, եջ 304 305) ևս ծանոթ է «Կախայ վերին աշխարհեցին», վորի մասին պատմագիրն ասում է, թե ինչպես նա և «Սողովմոն որ Սևորդին ճանաչի»՝ չկամենալով ուրանալ «աստուածային օրինացն»՝ «մեծաւ համարձակութեամբ» պատասխանում եյին թագավորին, վորի հրամանով յենթարկվեցին չարչարանքի ու «նահատակեցան արիաբար». «և եղեալ ի վերայ փայտին զերանելին Սողոմոն, —ասում է պատմագիրը (եջ 305—306), —և մօտ առ փայտն կայուցին զսուրբն Կահայ*), զի գոնեայ մինն ի միւսոյ տանջանացն երկուցեալ հնազանդիցի հրամանի թագաւորին»։ Այս պատմվում է, թե ինչպես «նոյն ժամայն եւ հրաման յարքունուստ, զի զսուրբն Սողոմոն ի նմին փայտի սպանցեն... իսկ զսուրբ Կահայ հրամայեաց սրով սպանանել» և այլն։

Կոնստանդ-Կախի «վարք»-ի վրացերեն բնագիրը հրատարակել է Մ. Սաբինինը («Վրաստանի դրախտը», եջ 363—370). Նույնը հրատարակած ունի և «վարք»-ի ռուսերեն թարգմանությունը (Полное жизнеописание святых грузинской церкви, ч. III, Спб. 1873, стр. 89- 96)**։ Դժբաղդաբար վերոհիշյալ միակ հրատարակությունը զուրկ չէ ակներև աղավաղումներից, վորոնց մեջ առանձնապես աչքի յե ընկնում «Կախա» անվան փոխարեն «կայցի» բառի ընթերցումը, ինչպես վաղուց մատնանշեց *Y. Marquart*-ն (Osteuropäische und Ostasiatische Streifzüge, Leipzig 1903, S. 413, B. 1), թեև վերջինիս միանգամայն իրավացի ուղղումը միմիայն նորերս ընդունելություն գտավ վրացագետների կողմից (տես՝ Իվ. Ջավախիշվիլի, *Հին վրացական պատմական գրականությունը*, եջ 54, ծան. համ. *И. Джавахов*, К вопросу о времени построения грузинского храма в Атене etc. стр. 283, прим. 1).

---

*) Անկասկած, նույն «Կախայ»-ն է։

** Իսկ P. Peeters-ը տվեց վրացերեն տեկստի լատիներեն թարգմանությունը համապատասխան ուսումնասիրությամբ հանդերձ (De S. Constantino, martyre in Babylonia, commentar. praevius.—«Acta sanctorum». Novembris, t. IV, Bruxellis 1925, p. p. 363—370։

չի՝ որ Marquart-ի առաջարկած ընթերցման հիման վրա միմիայն հնարավոր դարձավ Կոնստանդ մկայրին նույնացնել Կախաբչխանի հետ, իսկ «Կոնստանդ» և «Կախա» անուններն ընդունել իբրև միևնույն անձի՝ առաջինը մկրտության, իսկ երկրորդը հեթանոսական՝ անուններ։

Ապա Կ. Կեկելիձեն վերջերս իր հատուկ հոդվածում (Կոնստանդ Կախի մարտիրոսությունն ու ձվ լինելը, վրացերեն, — «Bulletin de l'Université de Tiflis», VII, 1926, էջ 160—173) մի շարք սրբագրություններ մտցրեց վկայաբանական տեկստի մեջ, ապացուցելով միաժամանակ, որ հնագույն ձեռագրերում ոչ թե «Կոնստանտին Կախա» չէ կարդացվում, ինչպես սովորաբար ընդունված էր, այլ «Կոնստանդ Կախ» (Կոնստանտի Կախի)։

Ստորև բերած հատվածի թարգմանությունը կատարված է համաձայն Մ. Սաբինինի հրատարակության։

## [ՀԱՅ ԻՇԽԱՆՆԵՐԸ ՍԱՄԱՐԻԱՅՈՒՄ]

....[Տփղիս բերելուց] մի քանի օրից հետո կապեցին նրան (Կոնստանդ-Կախին) զարհուրելի երկաթե կապանքներով և հանձնեցին Բաբելոնյան[1] երկիրը՝ Սամարիա կոչված քաղաքն, [ուր և] ներկայացրին իսմայելացվոց թագավորին, որի անունն էր Ջափար՝ որդի Աբրահամի,.... որը հրամայեց չենթարկել նրան (Կախիին) սաստիկ բանտարկության և ուղարկեց նրա մոտ այն երկու իշխաններին, որոնց գերելով բերել էին Հայքից (Սոմխիթից) և որոնք՝ Քրիստոսին ուրանալով՝ պատվելի էին դարձել թագավորից[2]. մոտենալով երանելիին՝ նրանք (իշխանները) ասացին, «...Մի՛ լինիր դյուրագրգիռ...»։

Ապա սուրբ Կոնստանդը պատասխանեց նրա մոտ ուղարկված հայերին՝ «....հեռացե՛ք ինձանից...»։

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. «Բաբելոն» է կոչվում վրաց հին գրականության մեջ Բաղդադը։ Այսպես է բացատրված «Բաբելոն»-ը, ի միջի այլոց, Մխիթար Սեբաստացու քերականության «ցանկի» հիման վրա կազմված «հայ-վրացերեն բառգրքում» (XVIII դարու), որը առայժմ 6 ձեռագիր օրինակով է հայտնի մեզ։

2. Թովմա Արծրունին (Պատմութիւն տանն Արծրունեաց, Տփղիս 1917, էջ 310) մի առ մի հիշատակում է այն իշխաններին, որոնց «խաղացուցին ի Սամառայ», այն է. «տէր Սմբատ սպարապետ Հայոց, և Գրիգոր Քուրդկայ որդի Մամիկոնէից տէր, և Ատրներսեհ Աղուանից իշխան, և Գրիգոր Սիւնեաց տէր, և Մահլ Սմբատայ որդի, Շարէոյ տէր, որ զԲաբանն կալաւ, և իշխանական Վասակ Վայոց ձորոյ տէրն, և Փիլիպպէ իշխանն Սիւնեաց, և Ներսէհ իշխան Գաբիթայանից, և ապա Եսայի Ապումուսէ»։ Պարզ է, ուրեմն, որ Կոնստանդ-Կախի «Վարք»-ի մեջ հիշատակված արաբացվոց թագավորին հավատուրաց երկու հայ իշխաններն, անկասկած, վերոհիշյալ իշխաններից պիտի լինեյին։

Ի.

# ԱՐՍԵՆ ՍԱՓԱՐԱՑԻ (IX Դ.)

## «ՎՐԱՑ ՅԵՎ ՀԱՅՈՑ ԲԱԺԱՆՄԱՆ ՄԱՍԻՆ»

*Արսեն Սափարացին, որը վրաց գրականության մեջ ավելի «Արսեն կաթողիկոս» կոչումով է հայտնի, ոմանք համարում եյին* X *դարու, իսկ ոմանք* XI *կամ* XIII *դարու գործիչ. իսկ* პროფ. ფრანც-ნიკ. ფინკი (*Franz Nikolaus Fink*. Die georgische Literatur,—«Die Kultur der Gegenwart», I. 7. Sonderabdruck Berlin und Leipzig 1906, S. 306) *քաշեց նրան նույնիսկ* XIV *դարը։ Վերջերս վրացագիտական գրականության մեջ այս հարցին վերաբերյալ նկատելի յե յերկու հոսանք, որոնցից մեկը դասում է Արսենին* IX *դարու գործիչների շարքը, իսկ մյուսը՝* VII *դարու։*

*Դեռ ելի 1920 թ. հունվարի 23-ին Մոսկվայի հնագիտական ընկերության կովկասյան ճյուղի հրապարակական նիստին կարդացած մեր զեկուցման մեջ* Трактат грузинского католикоса Арсения (IX века) о разделении Грузии и Армении, как памятник армяно — грузинских церковных отношений, *մենք ապացուցեցինք, որ Արսենը* IX *դարու հեղինակ է (այս զեկուցման մասին տես* «Известия Кавказского Отделения Московского Археологического Общества», вып. VI. Под редакцией *Л. М. Меликсет-Бекова и Д. П. Гордеева,* Тфл. 1921, стр. 55): *1921 թվին յերկրորդ բարեփոխված հրատարակությամբ լույս ընծայած իր «Հին վրացական պատմական գրականությունը (*V—XVIII *դ. դ.)» աշխատության մեջ* ივ. ჯავახიშვილი *առաջին անգամ վրաց գրականության մեջ փորձեց վերագրել Արսենին* IX *դարուն (եջ 60—63), որին ապա հետևեց* კორნ. კეკელიძე*՝ 1924 թվին հրատարակած իր «Վրաց գրականության պատմության»* I *հատորի մեջ (եջ 134—135)։ Միաժամանակ՝ նույն 1924 թվին* სარგის კაკაბაძე *իր հատուկ գրվածքում «Յե՞րբ է գրված Վրաց և Հայոց*

բաժանման մասին յերկպառակությունը» (Պատմական պրպտումներ, վրացերեն, էջ 38—55) և ապա մի շարք այլ գրություններում (Պատմության ժողովածու, վրացերեն, I, 1928, էջ 124, Ասորի հայրերի վարուց նախատիպերը, վրացերեն, 1928, էջ 11) արծարծեց այն դրույթը, որ Արսենը VII դարու գործիչ է։

Ինչպես 1920 թվին, նույնպես և այժմ մենք այն կարծիքի յենք, որ Հայոց և Վրաց բաժանման պատմության հեղինակ Արսեն կաթողիկոսը IX դարու Մեծն Արսեն կոչվածն է՝ Գրիգոր Խանձթեցու (վախճանված 861 թ.) աշակերտը։ Այդ յերևում է հետևյալ տվյալներից։

Արսեն կաթողիկոսի յերկը կրում է հետևյալ ընդարձակ վերնագիրը. «Մեր սուրբ հոր՝ Մցխեթի կաթողիկոս Արսեն վարդապետի, որը ծագումով Սափարայի շրջակայքիցն էր, որ է Սամցխե, ճառ Վրաց (Քարթլիի) և Հայոց (Սոմխիթի) բաժանման մասին»։ Այսպիսով, այս վերնագրից կարելի չէ յեզրակացնել, որ Արսենը ծագումով Սամցխե, այսինքն Մեսխք (ապագայում Ախալցիխեյի) գավառից է յեղել։ Սա անկասկած, այն Արսենն է, որ քանիցս հիշատակված է Գրիգոր Խանձթեցու «Վարք»-ի մեջ (տես *Георгий Мерчул.* Житие св. Григория Хандзтийского, грузинский текст, введение, издание, перевод *Н. Марра* [„Тексты и Разыскания по армяно-грузинской филологии", VII] Спб. 1911)։ Խոսելով Գրիգորի բարեկամների՝ Թեոդորոսի և Քրիստափորի մասին, «Վարք»-ի հեղինակ Գեորգ Մերչուլը (վախճ. 951 թ.) նկատում է, որ նրանք՝ «գալով Սամցխե՝ աստծու հրամանով աշակերտ վերցրին իրենց մոտ մեծն Միհրան (Միրիան) ազատի (ազնվականի) որդուն Արսեն անունով, որն ըստ արժանվույն կոչվեց մեծն Արսեն՝ կաթողիկոս վրաց (Քարթլիի) և Մցխեթի աթոռի անթառամ պսակ» (ibid., էջ Վրաց. տեկստի ոբ = ռուս. թարգմ. 100, գլուխ XIX)։ Բայց Գեորգ Մերչուլը հաղորդում է Արսենի մասին ավելի մանրամասն տեղեկություններ։ Այսպես, նույն «Վարք»-ից մենք տեղեկանում ենք, թե ինչպես Արսենը՝ Սամցխեյի «մեծ Միհրան ազատի (ազնվականի) որդին» նախ քան կաթողիկոսանալը ստանձնած ուներ Ածղուրի յեպիսկոպոսական աթոռը և թե ինչպես նույն «մեծն Արսեն ապագայում յեղավ Վրաց (Քարթլիի) կաթողիկոս, Մցխեթի կաթողիկե յեկեղեցում՝ Քրիստոսի շուղլի «թևանում» (ibid., վրաց. մե = ռուս. 119, գլուխ XLII)։ Նույն «Վարք»-ից մենք տեղեկանում ենք նաև, թե ինչպիսի հանգամանքներում Արսենը դարձավ կաթողիկոս, ինչպես

բեկանվեցին առաջին ընտրությունները, որ՝ Վրաց եպիսկոպոսների ու Տեր Գուրամ Մեծն Մամփալին հակառակ՝ անց էր կացրել նրա հայր Միհրանը (Միրիանը) միմիայն Սամցխեյի ուժեղ զինվորության աջակցությամբ ու մի քանի եպիսկոպոսների ներկայությամբ, և թե ինչպես ծագեց անհրաժեշտություն հատուկ եկեղեցական ժողով հրավիրելու եպիսկոպոսների կանոնավոր թվի մասնակցությամբ, որպեսզի ժողովը, որ իսկապես հրավիրել էր հիշյալ Գուրամ Մամփալը, Գրիգոր Խանձթեցու կրակոտ ճառից հետո վորոշեց վավերացնել առաջին ընտրությունն Արսենի ի կաթողիկոսությունն՝ հաղորդելով, որ Արսենը «կամոքն աստուծո լե կաթողիկոս» (ibid., վրաց. մզ=ռուս. 121, գլուխ XLII), Գեորգ Մերչուլը ապա մատնանշում է, որ այս Արսենը «սփռեց ուղղափառություն Վրաց (Քարթլիի) բոլոր եկեղեցիների վրա, վորովհետև հայրապետական աթոռը զարդարեց կատարելապես և [ինքը] զարդարվեց շնորհոք» (ibid., վրաց. մբ=ռուս. 123, գլուխ XLII)։ Ընդ սմին Գեորգ Մերչուլը ավելացնում է. «[նա] կաթողիկոսեց քսան և յոթ տարի և ապա փոխվեց այս աշխարհից» (ibid)։

Այս բոլոր տեղեկությունները Գրիգոր Խանձթեցու «Վարք»-ից մենք առաջ բերինք միմիայն այն նպատակով, որպեսզի պարզեինք վորքան արդյոք հնարավոր է այս «Վարք»-ում հիշվող Սամցխեյի Միհրան (Միրիան) ազատի (ազնվականի) վորդի, մեծն Արսեն Մցխեթի կաթողիկոսին նույնացնել հայ-վրացական եկեղեցական բաժանման պատմության հեղինակի հետ, որը կոչվում է «Մցխեթի կաթողիկոս Արսեն վարդապետ, ծագումով Սափարայի շրջակայքից, որ է Սամցխե»։ Ի նկատի ունենալով, որ «Սափարա»-ն, իրոք, Սամցխե (Մեսխք) երկրումն էր գտնըվում, որ ապա մայրավանքի վերածվեց և այժմ էլ գոյություն ունի (Ախալցիխեյից մի քանի կիլոմետր հեռավորությամբ), այս հարցը մենք լուծում ենք դրական իմաստով։

Ինչ վերաբերում է այն հարցին, թե վոր ժամանակվա հեղինակ է Արսենը, սա շատ հեշտ լուծվում է նույն «Վարք»-ի տվյալներով։ Ըստ վերջինի, Գրիգոր Խանձթեցին ապրեց մինչև 861 թվականը, իսկ Արսենի մասին ասված է, որ նա Աշոտ Կյուրապաղատի մահվան թվին (826) 6 տարեկան հասակում մտավ վանք, ուրեմն ծնված պիտի լիներ 820 թ., նաև այն, որ նա հայրապետեց 27 տարի։ Յեթե ի նկատի առնենք, որ Արսենը իբրև կաթողիկոս անձամբ օծեց Խանձթայի մենաստանի հին եկեղեցին դեռ ելի իր ուսուցիչ Գրիգոր Խանձթեցու կենդանության

որոք է, բացի դրանից, ներկա չեղավ վերջինիս թաղմանը, վոր տեղի ունեցավ 861 թվին, իսկ կաթողիկոս կարող եր դառնալ, համաձայն յեկեղեցական կանոնների, առնվազն 35 տարեկան հասակում, այն ե մոտավորապես 855 թվին, միանգամայն հավանալի յե, վոր նույն Արսենի կաթողիկոսության ժամանակաշըրջանը 855—882 թ. թ. մեջ պիտի ամփոփել, և ուրեմն «Վրաց (Քարթլիի) և Հայոց (Սոմխիթի) բաժանման մասին» յերկասիրությունը գրված պիտի լինի վոչ ուշ քան 882 թ., ըստ Կոռն. Կեկելիձեի (op. cit., 137) հավանական ե մինչև 862 թ.։ Մի խոսքով, Արսեն Սափարացին պիտի համարվի IX դարու յերկրորդ կեսի հեղինակ։

Այժմ տեսնենք, թե վոր տվյալների հիման վրա յե Սարգիս Կակաբաձեն ապացուցում Արսեն կաթողիկոսի VII դարու հեղինակ լինելը։ Ըստ Ս. Կակաբաձեյի, հայ-վրացական յեկեղեցական բաժանման պատմության հեղինակը «VII դարու վերջերում կաթողիկոսական աթոռի վրա բազմած՝ մինչ այժմ անհայտ Արսեն Վրաց (Քարթլիի) կաթողիկոսը պիտի լինի» (Պատմական պրպտումներ, 1924 թ., եջ 55)։ Այսպիսի դրույթի գլխավոր հենակետն այն ե, վոր Արսենի «պատմությունն ընդհատվում և Իսրայել կաթողիկոսով (667—683 թ. ըստ Կիրակոսի, 667—677 թ. ըստ Ասողիկի) և Գրիգոր մարզպանի (+682) շրջանով» (ibid., 43)։ Ապա նույն Ս. Կակաբաձեն ավելացնում ե. «Զարմանալի յե, թե ինչպես պատահեց, վոր հեղինակը, յեթե նա 9-երորդ դարումն եր ապրում, վորը կուսակցորեն, կարելի յե ասել, շահագրգռված եր պատմությունը շարունակելու, ընդհատեց իր աշխատությունն մի այնպիսի անհարմար տեղում, մինչդեռ Հայոց յեկեղեցվո 8-երորդ դարու պատմությունը նրան ավելի ձեռնտու նյութեր եր տալիս, օրինակ Հովհան կաթողիկոսի շրջանը, յերբ 726 թ. գումարվեց Մանազկերտի ժողովը, վորը կրկին և արդեն վերջնականապես հաստատեց Հայոց յեկեղեցվո ընդունած գիծը» (ibid.)։ Մի ուրիշ տեղ իր այս կարծիքը Ս. Կակաբաձեն կրկնում ե հետևյալ խոսքերով. «Այժմ պարզված ե VII դարու վերջերում հայտնի գրող՝ Վրաց յեվ Հայոց բաժանման մասին յերկասիրությանն հորինող Արսեն կաթողիկոսի գոյությունը։ Հիշյալ յերկասիրությունը, բնագրում բերած տեղեկությունների համաձայն, հասցրած ե մինչ 680 թվականը։ Այսու յենթադրելի յե, վոր յերկասիրությունը գրված պիտի լինի մոտավորապես 685—700 կամ 690—700 թվականներին։ Յեվ իրոք, իր ընդհանուր բնույթով, իր ներքին իմաստով և, վերջապես, վոճով եւ յերկասիրությունը շատ լավ համապատասխանում ե նշած շրջանին» (Ասորի հայրերի վարուց նախատիպերը, 1928 թ., եջ 11)։

Ս. Կակաբաձեյի դրույթն ջրելու համար բավական է մատնանշել, վոր, նախ՝ Արսենի, յերկասիրությունն ընդհատվում է վոչ թե VII դարու վերջերի դեպքերի արձանագրությամբ, այլ VIII դարու, յերկրորդ՝ նույն Արսենը 726 թվի Մանազկերտի ժողովի մասին վոչ թե չի լռում, այլ վորոշակի հիշատակում է այն, ինչպես և Հովհան Ոձնեցուն, և յերրորդ՝ մի վորևե յերկասիրության VII կամ VIII դարով ընդհատվելը դեռ ելի չի նշանակում, վոր այն անպայման նույն VII կամ VIII դարու հեղինակի հորինվածք լինի (չէ՞ վոր XX դարում ես կարելի յե գրել VII դարու պատմությունն՝ չհասցնելով մինչև մեր որերը)։

Վոր Արսեն Սափարացին վոչ մի դեպքում չի կարող լինել VII (յեվ վոչ ել VIII) դարու հեղինակ, այլ միմիայն IX դարուն է պատկանում, կարելի յե ապացուցել նաև նրանով, վոր նրա յերկասիրությանն աղբյուր են ծառայել այնպիսի գործեր, վորոնք VIII դարում են գրված։

Ինչպես իր ժամանակին Իվ. Ջավախիշվիլին (Հին վրացական պատմական գրականությունը, եջ 67) մատնանշեց, «Վրաց և Հայոց բաժանման մասին» յերկասիրության հեղինակը ձեռքի տակ է ունեցել զանազան աղբյուրներ, առաջին հերթին, բացի վրացերենից, հայերեն, նաև հունարեն, վորպիսիները նա, սակայն, չի հիշատակում։ Վաղուց H. Goussen-ը (Die Georgische Bibelübersetzung, — «Oriens Christianus», VI, Roma 1906, S. 315) այն միտքն եր հայտնել, վոր նույն յերկասիրությունը շատ կետերում շփվում է Combefis-ի հրատարակած Historia haeresis Monothelitarum-ի և մեծն Միքայելի «Ժամանակագրության» հետ։ Իսկ Ն. Ակինյանը (Կյուրիոն կաթողիկոս Վրաց, 289—290) կարծում է, վոր «Արսեն հիմնուած է ընդհանրապէս... Narratio de rebus Armeniae գրութեան վրայ, որուն թէև այժմ միայն յունարէնն կայ, բայց եղած է երբեմն նաև հայերէնը»։ Իսկ Narratio de rebus Armeniae-ն թեև ըստ նույն Ն. Ակինյանի (ibid., եջ 99, ծանոթ. 1) «Է դարու բ. կիսէն կ'երևայ», բայց իրոք VIII դարու գործ է (S. Weber. Ueber die Versuche, den Verfasser der Invektiven gegen die Armenier։ — Migne, Patrologia graeca 132, S. 1154 ff., zu bestimmen, — «Յուշարձան», Վիեննա 1911, եջ 175—180)։

Առանձնապես հետաքրքիր է Արսենի յերկասիրության՝ հայկական աղբյուրների հետ առնչության հարցը, վորի մասին մանրամասն խոսում է Իվ. Ջավախիշվիլին (Հին վրացական պատմական գրականությունը, 67—72)։

Մատնանշելով միմիայն մի-երկու օրինակի վրա, երբ Արսենը վորևե վրացական կամ հունական աղբյուրների ազդեցության տակ է գտնվում, Իվ. Ջավախիշվիլին ասում է. «Ինչպես պարզվում է, մեր պատմաբանը (Արսենը), համենայն դեպս, գլխավորապես հայկական աղբյուրներով է օգտվել. վոր նա տեղյակ է հայերենին, հաստատվում է այն հանգամանքով, վոր Արսենը երբեմն առաջ է բերում հայերեն բառեր, թեև վրացերեն էլ ուղիղ թարգմանված, օրինակ՝ Ներսես կաթողիկոսին անվանում էին շուայ, վոր է հայերեն միջին, Վարդան Մամիկոնյանին անվանում էին չոխի, վոր է ուր» (էջ 67)։ Բայց նույն գիտնականը ուզում է ապացուցել էլ ավելին։ Նրա ասելով, «Արսեն կաթողիկոսի տեղեկությունները հաճախ միանգամայն համաձայն են հայ պատմագիրների տեղեկություններին, իսկ հաճախ նրա խոսքերը հաստատվում են առանց այլևայլության» (էջ 67)։

Գալով այն հարցին, թե հատկապես վոր աղբյուրներով է օգտվել Արսենը իր յերկասիրությունն գրելիս, նույն Իվ. Ջավախիշվիլին ասում է. «Ինչպես պարզվում է, վոր Արսեն կաթողիկոսը կամ գուցե նրա հայկական դրավոր աղբյուրները Քաղկեդոնի ժողովին հետևող հայ կաթողիկոսների մասին վոչինչ վատ բան չեն ասում, նույնիսկ գովասանությամբ էլ են նրանց զարդարում, իսկ հայ պատմագիրները, վորոնց յերկասիրությունները պահպանվել են, յեթե այս յերեցապետներին հիշատակում են ամոթալից զատ վոչինչ լավ բան չեն ասում։ Հավանական է, վոր վրաց պատմագիրն էլ, կամ գուցե նրա աղբյուրը, կողմնապահությամբ են վերաբերում իր դավանակիցներին, իսկ հանդեպ միաբնակ հայ պատմագիրների՝ իրենց դավանական հակառակորդների՝ ցույց են տալիս անվստահելի վերաբերմունք» (էջ 70)։ «Իր հերթին, — շարունակում է նույն գիտնականը, — Քաղկեդոնի ժողովին հետևող «ուղղափառ» վրաց պատմագիրը և, հավանական է, նրա աղբյուրն էլ սկի չեն վստահանում հակառակորդ «հերձվածող» միաբնակ հայ յերեցապետներին. շահամոլությունից ու քաղաքական բռնադատությունից կամ կողմնապահությունից զատ Արսեն կաթողիկոսն ու նրա աղբյուրները նրանց գործունեության և ուղղության մեջ ուրիշ վոչինչ չեն տեսնում» (էջ 70—71)։ Ապա, քննության յենթարկելով Արսենի հաղորդած տեղեկությունները հայ միաբնակ կաթողիկոսների մասին՝ նա ասում է. «Պարզ է, վոր այս տեղեկություններն վրաց պատմագիրը քաղած պիտի լինի հայ պատմական աղբյուրներից, սակայն այս պատմական

աղբյուրներն անպայման Քաղկեդոնի ժողովին հետևող «ուղղափառ» հայ հեղինակների գրածը պիտի լինի, և հենց այդ պատճառով է, որ այնտեղ Քաղկեդոնի ժողովին հակառակ միաբնակ հայ հոգևորականությունն այսպիսի ստորացուցիչ տեղեկություններով է առատ զարդարված. [իսկ] քանի որ մեզ հասած հայ պատմական գրականության մեջ, որն ամբողջապես միաբնակ հեղինակներին է պատկանում, այսպիսի տեղեկություններ չեն գտնվում, մնում է ենթադրել, որ նրանից հետո, երբ հայ միաբնակությունը վերջնականապես հաղթող դուրս եկավ, հակառակորդ երկբնակ քաղկեդոնիկ դավանության հետևողների երկասիրություններն խնամքով ոչնչացվել են» (էջ 71—72)։

Իր տեսությունը Իվ. Ջավախիշվիլին վերջացնում է Արսենի երկասիրության այսպիսի գնահատումով. «Անաչառ և անառիկ պատմական երկասիրության փոխարեն Արսեն կաթողիկոսի գրվածքը, ինչպես և հայ հեղինակների եկեղեցական-պատմական աշխատությունները, դասակարգային կողմնապահությամբ և դավանական ատելությամբ են թելադրված և տոգորված» (էջ 72)։

Միանգամայն համաձայնվելով Իվ. Ջավախիշվիլու հետ, որ Արսենը՝ չհիշատակելով իր աղբյուրները՝ «ձեռքի տակ է ունեցել վրացերեն, հունարեն և, մանավանդ, հայերեն աղբյուրներ», Կ. Կեկելիձեն (op. cit., 138—139) գտնում է, որ «հայկական աղբյուրներից նա (Արսենը) օգտվել է, մասնավորապես, վրաց և հայոց բաժանման ժամանակվա գրագրությունից (Գիրք թղթոց), նաև Ղազար Փարպեցվո պատմությունից, քանի որ Ղազարն էլ, ինչպես Արսենը, պարսից քաղաքականությունն է ընդգծում վրաց, հայոց և աղվանից դավանական հալածանքների ժամանակ։ [Իսկ] նրա հայկական աղբյուրների մեծագույն մասը քաղկեդոնական ֆրակցիայից է բխում և այս պատճառով Արսենի աշխատության մեջ հարուցած հարցը կատարյալ անաչառությամբ չի լուսաբանված»։

Ավելորդ համարելով «ժամանակագրական անհամաձայնութիւնք և այլն մասնանշել, որոնք այնպէս կարկառուն կեցած են» Արսենի երկասիրության մեջ՝ «տեսանելի ամէնուն», Ն. Ակինյանը (Կիւրիոն կաթողիկոս Վրաց, 291) վաղուց այն եզրակացությանն էր եկել, որ «Արսէն ուզածին պէս հասկացած է յոյն անանունի պատմածները և իւր ճառը յօրինած՝ ինչպէս թելադրած է իրեն ազգասիրութիւնը»։

Ըստ մեր հետազոտության, որի արդյունքները իրենց ար-

տահայտությունն ունին գտած սորև հրատարակվող մեր թարգմանությանը կցված բազմաթիվ ծանոթությունների մեջ, Արսենը իր աշխատությունը գրելիս ոգտագործել է, մի կողմից, Սեբեոսի և նմանորինակ հայ պատմիչների գործերը, վորոնք X դարուց աղբյուր են ծառայել, ի միջի այլոց, Հովհան Դրասխանակերտցուն և Ասողիկին, իսկ մյուս կողմից և, առավելապես, հույն-բյուզանդական գրականության մեջ հայտնի անանուն (վոմն «Մահակ՝ Հայոց Մեծաց կաթողիկոսին» վերագրվող) գրվածքը, վորը Narratio de rebus Armeniae յե կոչվում։ Ընդ սմին, վերջինս էլ, հավանական է, ոգտագործված լինի հայերեն թարգմանությամբ, քանի վոր հայկական հատուկ անունները՝ թե անձանց և թե աշխարհագրականը, չնչին բացառությամբ, ներկայացրած է հարազատությամբ և վոչ թե հունարեն բնագրի աղավաղումներով հանդերձ։

Ի նկատի ունենալով, վոր Արսեն Սափարացու «Վրաց և Հայոց բաժանման մասին» յերկասիրության միակ հրատարակությունը, վոր տվել է Թ. Ժորդանիան իր «Քրոնիկաներ»-ի I հատորում (եջ 313—332), հեռու յե կատարյալ գիտական հրատարակություն լինելուց, սորև մենք տալիս ենք նույն յերկասիրության հայերեն թարգմանությունը՝ գրեթե ամբողջապես կամ ուղիղ ասած, չնչին կրճատումներով (վոր դավանաբանական ֆորմուլաներին են վերաբերում), ըստ վերականգնած բնագրի, վոր մենք ունենք պատրաստած տպագրության՝ համաձայն մինչ որս հայտնագործված 3 ձեռագրերի, այն է Տփղիսի նախկին յեկեղեցական թանգարանի հավաքածուի №№ 691 (XVII դ.), եջ 129—152, և 735 (XVII դ.), եջ 1r—10r, նաև Վրաց մեջ գրագիտություն տարածող նախկին ընկերության հավաքածուի № 3270 (XIX դ.), եջ 1—16, վորոնցից լավագույնն է № 735-ը։

## ՎՐԱՑ (ՔԱՐԹԼԻԻ) ՅԵՎ ՀԱՅՈՑ (ՍՈՄԽԻԹԻ) ԲԱԺԱՆՄԱՆ ՄԱՍԻՆ

... Բայց թե ինչպես հեռացան հայերը ուղիղ դավանությունից[1], պատճառն այս է....

Հունաց (բերձենների) Արկադ թագավորի և Հայոց (Սոմխիթի) Արշակ թագավորի որոք[2] հայերն հաստատապես հունաց (բերձենների) կրոնին եյին մասնակից, ինչպես նրանց ուսուցել եր սուրբ Գրիգոր Պարթևացին, և [հույները] արիաբար [ու] բազում ջանքերով գրաված ունեյին նրանց (հայոց) յերկիրը [՝ազատելով] պարսից ծառայությունից, իսկ հունաց (բերձենների)

թագավորներն օգնում էին [նրանց] զորքով և չորեքին էլ մեծ ուժով պաշտպան էին կանգնած նրանց մոտ. և այսպես էր նրանց գործը։ Իսկ Արկադ թագավորը, Թեոդոսի որդին, անուշադիր եղավ նրանց (հայոց) գործերի վերաբերմամբ, և պարսիկները հաղթեցին հայերին ու քշեցին իրենց երկրից, իսկ փախըստականները Ցեկեղյաց (Եկեղեցի) [գավառից] բազմիցս անցել են հարևան երկիրները և աղաչել Արկադին, որպեսզի զորք ուղարկի՝ իրենց երկիրը նվաճելու համար, սակայն տերը չլսեց նրանց աղաչանքը։ Ապա հայերը հնար գտան և հարկատու դարձան պարսիկներին, և յերդումով ու յերաշխավորությամբ հավաստիացրին պարսից թագավորին, որ անջատվում են հույներից (բերձեններից) և միանում նրանց (պարսիկներին). և այսու շատ ուրախացավ թագավորը, որը մեծ խնդությամբ և նվիրատվությամբ վերադարձրեց նրանց երկիրը[4]։ Յեվ մնացին հայերը մի առժամանակ խաղաղ [և] ուղիղ հավատով։

Իսկ սատանան, որը մահով է պայքարում մարդկային սեռի հետ, անաստված Նեստորի աղանդակից մի ազգին դրդեց, որպեսզի վոսկու մեծամեծ կաշառներով խնդրե թագավորից բարվոք դարձնելու Հայքը (Սոմխիթը) դեպի իրենց կրոնը. և փոխեցին թագավորի սիրտը՝ հավատացնելով, որ հայերը հենց որ գտնեն [բարեպատեհ] ժամանակ, նորից հույների (բերձենների) կողմն կանցնեն.... Յեվ Պերոզ թագավորը[5] ստիպեց հայերին պաշտել անաստված Նեստորի կրոնը. իսկ հայերը կտրականապես հանձն չառան այս և դեսպանի միջոցով դիմեցին թագավորին՝ [հայտնելով,] որ «այս չի իրագործվի վոչ միայն երկրի, այլև մեր և մեր զավակների գերության ու մահվան [գնով նույնիսկ]»։ Իսկ թագավորը նորից այլ նենգության դիմեց և հայտնեց իր վճիռը [հայերին] հույներից (բերձեններից) բաժանելու մասին և՝ վերադարձնելով դեսպաններին՝ [առաջարկեց] անել երկուսից մեկը. «Կամ ընտրեցեք ասորական բոլոր կրոն[ներ]ից [որևէ մեկը] բացի մելքիտներինը[6], որոնք կրոնով հույն (բերձեն) են, կամ թողեք ձեր երկիրը և հեռացեք մեզանից»։ Ապա հայերը շատ տխրեցին այս երկու առաջարկության առթիվ, որը նրանց հոգսեր պատճառեց, և խորհրդակցություններ ունեցան նրանք բազում օրերի ընթացքում, և հանձնեցին այս գործը Ներսես (Ներսե) կաթողիկոսին, որ կոչվում էր «Միջին»*[7]։ Յեվ ասաց Հայոց

* Գրված է հայերեն, սակայն վրացերեն տառերով և առանց որևէ թարգմանության։ Նույնը կրկնվում է և ներքև, բայց արդեն վրացերեն հոմանիշով հանդերձ։

Թագավորն ու ամբողջ ժողովուրդը հետևյալը. «Մեզանից լավ դու [ինքդ] գիտես. ինչ որ լավագույնը հրամայես հոգվոց անքննու-թյան համար, կհնազանդվենք քո հրամանին»։

Իսկ նա՝ վողորմելին (Ներսեսը)՝ հոգիները հնազանդեցրեց մարմիններին.... և ասաց. «Մեզ համար ավելի լավ է մահը, քան թե այս պահին կրկին վերադառնալ հունաց (բերձենների) [կողմն] և նորից թողնել յերկիրը և բնաջինջ լինել պանդխտությամբ»։ Յեվ ամբողջ նրա մտածել[ակերպ]ը բողեչական էր և գոռոզամիտ։ Յեվ [դեսպաններ] ուղարկեցին տրտմությամբ Թագավորի մոտ՝ խնդրելով հակոբիկների կրոնը, քանի վոր բոլոր մյուսներին առավել նզովեցին։ Իսկ փոքր մեղքը վերածվում է մեծի՝ պոր-տաքուծության մեջ, ինչպես գրված է։

Իսկ Թագավորն վստահացավ և ուղարկեց նրանց մոտ հակո-բիկ չար[ամիտ] վարդապետներին [թվով] ինն, իբրև նենգ աղվես-ների, ինչպես ասաց Սողոմոն՝ իմաստունն աստուծո. և նրանք ապականեցին Հայքում (Սոմխիթում) սուրբ Գրիգորի վաստակը, վորը վոռոգված էր նրա քաղցում յեռանդով ու արցունքներով. և սրանց անուններն են՝ Աբդիշո (Աբդիբո*)[8], Պետրոս Թափիչ[9], չարա[միտ] Սիմեոն, Հակոբ,—վորոնք իրենց հետ բերին Փիլոքսե-նոսի (Փիլաքսոսի) [և] Հուլիանոս Աղիկառնացվո գրությունները,— նաև Տիմոթեոս Կուզ[10], Սևերոս [և Փիլոքսենոս] Նարբոկայլին**[11]։ Յեվ ժողով գումարեցին քաղաք Դվինում, ուր և ընդունեցին «խաչեցար»ը[12]... և այսու հեռացան ուղիղ և ճշմարիտ դավանու-թյունից և ոտարացան սուրբ և մեծ առաքելական կաթողիկե յեկեղեցուց... և նույն Դվինում հաստատեցին առաջ[ավ]որ»-ն[13], ասելով. «Այս է մեր հավատո առաջին որը»[14]։ Յեվ չարը չարին ավելացրին ու նզովքով անիծեցին իրենց [գլուխը], քանի վոր չմիաբանեցան Քաղկեդոնի ժողովին[15]...

Յեվ յերբ Վրաց և Հերաց կաթողիկոսն Կյուրիոն (Կվիրիոն) Մցխեթացին[16] տեսավ, վոր հայերն Աբդիշո (Աբդիբո) Ասորվո

---

* Յեկեղեցական վրացերեն այբուբենում բ և շ տառերն իրար նման են. ուստի և հաճախ շփոթության հետևանքով տեղի ունի անունների աղավաղումը. Աբդիշո-Աբդիբո. Արշակ-Արբակ, Արտաշիր-Արտաբիր և այլն։

** Բնագրում՝ «Տիմոթեոս Կուզ և Սևերոս Նաշիկեցի (Նաշիկիլի)», sic. յեթե «Նաշիկելի»-ն կարդալ «Նաբիկելի», կստացվի «Նաբիկեցի», վորը մոտ է «Նարոկա» «Նարբոկա»-յին, այսինքն «Նարբոկացի»-ին. իսկ վերջինս վոչ թե Սևերոսի, այլ Փիլոքսենոսի հիշատակության հետ պիտի կապել, վոր բացակայում է վրացերեն բնագրում և վորը մենք վերականգնել ենք, անկյունավոր փակագծի մեջ դնելով։

ձեռքով ժողով գումարեցին քաղաք Դվինում և նզովքով հեռացան ս. կաթողիկե եկեղեցվո դավանությունից ու բաժանվեցին չորս պատրիարքությունից, և դրժեցին այն ուխտին, որ սուրբ Գրիգորը դրել էր Կեսարիայի եկեղեցուց հավիտյանս չբաժանվելու՝ այնտեղից առնելով եպիսկոպոսական ձեռնադրությունն չորից Հայոց (Սոմխիթի) համար[17], Հայքն (Սոմխիթն) հրաման առացավ պարսից թագավորից, որ [իրենց] եպիսկոպոսները իրենք ձեռնադրեն։ Արդ, երբ այս ճշմարտությամբ լսեցին Կյուրիոն (Կվիրիոն) [Վրաց և Հերաց] կաթողիկոսն, Աբաս (Աբազ) Աղվանից (Հերաց sic) կաթողիկոսն[18] և Գրիգոր Սյունյաց եպիսկոպոսն[19], մեծ վեճ ծագեց Հայոց (Սոմխիթի) և Վրաց (Քարթլիի) միջև։ Վրացիք ասում էին, որ «սուրբ Գրիգորը Հունաստանից բերել տվեց մեզ [այն] հավատքը, որը՝ իբրև նրա սուրբ դավանություն՝ դուք թողեցիք և ենթարկվեցիք Աբդիշո (Աբդիեշո) Ասորվույն և այլ չար հերձվածողներին... և չհնազանդվեցիք սուրբ Գրիգորի դավանությանը[20] և կիրք հատկացրիք անչարչարելի երրորդությանը, ինչպես ձեզ ավանդեց ամբարիշտն Պետրոս Թափիչ Անտիոքացին»։ Ապա հայերն ամբաստանեցին վրացիներին (Քարթլին) պարսից թագավորի մոտ, թե նրանք հոռոմաց հավատքն են դավանում։ Եվ մեծ վեճ տեղի ունեցավ հայոց և վրաց միջև Ներսես (Ներսե) հայոց կաթողիկոսի օրոք և [նույն] Ներսեսի մահվան պահին։ Ներսեսը (Ներսեն), որ կոչվում էր միջին (շուայ), չարությամբ փոխվեց այս աշխարհից (կյանքից), և նրա աթոռը գրավեց Աբրահամը[21]։ Եվ քշեց Կյուրիոն՝ Վրաց (Քարթլիի) կաթողիկոսն՝ Մովսես Ցուրտավացուն[22] իր աթոռից, որ հաստատված էր սուրբ Շուշանիկի մասունքներին կից՝ Հայքում (Սոմխիթում)[23], և Աբրահամը պահանջեց Կյուրիոնից նրա աթոռը. բայց վերջինս չխոնարհվեց[24]։ Եվ խորացավ վեճը նրանց միջև[25], և դիմեց Աբրահամը Արարատյան [երկրի] քահանաներին, ասելով. «Կամ նզովեցեք ժողովն Քաղկեդոնի, կամ հեռացեք ձեր բաժնից»։ Եվ որոնք հնազանդվեցին, ինչպես գրված է, մեծարելի դարձան,... իսկ որոնք չհնազանդվեցին, հանվեցին իրենց բաժիններից և օտարության մեջ մահացան։ Աբրահամից հետո [կաթողիկոս] նստեց Կոմիտասը (Կոմիտոսը)[26], որն ընչավետ էր և հարկատու գզբանների և գրաստների և որն ազնիվ բյուրեղաքարով էր զարդարում իր գավազանի ծայրն (գլուխն)։ Սա ամենից առավել ևս խորացրեց վեճը Քաղկեդոնի ժողովի մասին և յոթն եպիսկոպոսություն զիջեց Աղվանից (Հե-

րաց) կաթողիկոսին, վորի [աթոռ]ն գրավեց և մերժել տվեց ժողովը Քաղկեդոնի. և խաչ շնորհեց Սյունյաց յեպիսկոպոսին, վորպեսզի խաչով ընթանան նրա առաջ՝ ինչպես կաթողիկոսի[27], և ընդարձակեց նրա բաժինը, և ապա այլ յեպիսկոպոսներին էլ ընդլայնացրեց նրանց բաժինները, և այսպես ամբողջ Հայքը (Սոմխիթը) միացրեց Քաղկեդոնի ժողովի ընդդեմ։ Յեվ Մայրագոմեցի (Մայրեգուեմելի) վոմն անիծյալ Հովհաննին, վորն, յերևակայեցեք, վարդապետ կոչվեց, հակաճառական գրություններով գինեց Քաղկեդոնի սուրբ ժողովի ընդդեմ[28]։ Յեվ սրան ուխտեց [Կոմիտասն] բազմել իրենից հետո իր աթոռի վրա[29] և մեկնաբանեց հերձվածողական գրություններն Տիմոթեոս Աղեքսանդրացվո, վորը Կուզ կոչվեց[30], և Պետրոս Թափիչինը, վորը Գայլ կոչվեց[31], և Սևերոսի (Սևերիոսի) և այլ հերձվածողների. և [այս գրություններն] մակագրեց [այնպես], իբր թե ուղղափառ վարդապետների՝ սուրբ Սահակի և Մովսեսի՝ ճառերն են, և այսպիսի կեղծիքով հավատացրեց ամբողջ յերկիրն Հայոց (Սոմխիթը)[32]։

Յեվ շատ ընթերցվածքներ հորինել տվեց [Կոմիտասն] և իր անվանը վերագրեց[33], նույնպես և առաջին [հայերի] կանոններն ու կարգերը փոխեց, նրանց տեղը դնելով չեղը, վորով հինը խանգարվեց և նորն էլ չհաստատվեց. սակայն ամեն մարդ իր համար է հոգս քաշում՝ մինչև այժմ։ Յեվ այս բոլորը [Կոմիտասն] իրագործեց կատաղած Հովհան Մայրագոմեցվո (Մայրեգուեմելիի) ձեռքով[34]... Ապա [կաթողիկոս] նստեց վոմն Քրիստափոր, վորը թշնամի յեր Մայրագոմեցուն (Մայրեգուեմելիին), և տրտմեց Հովհաննը։ Յեվ յերբ ինչ-ինչ պատճառով գահընկեց արին [Քրիստափորին][35], Հովհաննն ուրախացավ, սակայն այս դեպքումն էլ նա չարժանացավ աթոռին, քանի վոր այն գրավեց Յեզրը (Եզրան), վորն առավել ևս հուզեց նրա (Հովհանի) նենգ հոգին... Յեվ այսպիսի նենգությամբ մեծարեցին վերոհիշյալ Կոմիտասին (Կոմիտասին), վորն տիրեց սուրբ Գրիգորի մասունքներին. և Մայրագոմեցվո (Մայրեգուեմելիի) ձեռքով Հայոց (Սոմխիթի) յերկիրը լցվեց մահուչափ խաբեբայական ուսմունքով[36]։

Այստեղ արդեն կատարվեց սուրբ Գրիգորի տեսիլքը, վոր նրան հայտնագործեց սուրբ հոգին, իբր վոչխարների մի մասը՝ կերպարանափոխվելով և գայլերի վերածվելով՝ հարձակվեց վոչխարների վրա և անողորմ պատառոտեց նրանց։ Նմանապես կատարվեց սուրբ Սահակի տեսիլքը, վորը տեսավ վոսկե գունդ և նափորտ սուրբ սեղանի վրա, քանի վոր Արշակունյաց (Արբակ-

յան*) թագավորության անկումով բարձավ և քահանայ[ապետ]ությունն սուրբ Գրիգորի զարմից[38]... Այսպես նրանք հարեցան Մայրագոմեցվո (Մայրեգուեմեյլի) վարդապետությանն։

Սակայն վոչ աննշան ուխտ տվեց Խոսրով (Խուասրո) թագավորը Ներսես (Ներսե) կաթողիկոսին, վորը կոչվում եր შუაჲ, այսինքն և հայերեն «միջին», վորով խախտեց նրա [առանց այն ել] անխոհեմ միտքը։ [Ցեվ Ներսեսը] գումարեց առաջին ժողովը Դվինում, վորով [հայերը] հեռացան կրոնով հույներից (բերձեններից) ու Յերուսաղեմից։

Իսկ ամբողջ Քարթլին և Զորբորդ Հայքը (Սոմխիթը) հրաժարվեցին հայերից քահանայական ձեռնադրությունն առնելուց։ Իսկ աղվանները (հերացիք) ու սյունեցիք մի առժամանակ հեռացան և կրկին հարեցան Ներսեսին[39], վորն իր մորուքը վոսկվով եր ներկում[40]։ [Ապա] ժողով գումարեց հայոց Հովհան կաթողիկոսն Մանազկերտում և ջրախառն [գինին] ու խմորահացը վտարեց սուրբ խորհրդից՝ հաստատելով բաղարջն ու անխառն [գինին][41]...

Ցեվ բազմատեսակ եյին նրանց (հայոց) հերձվածքները՝ Սաբելիանոսի, Հակոբի և Տիմոթեոս Կուզի հետևողների, վորոնց ախտը յուրացրել եյին մանիքեյացիք....

Ցեվ լուր տարածվեց, վոր Հայքը (Սոմխիթը) հեռացավ սուրբ Գրիգորի դավանությունից և Կեսարիայից ձեռնադրությունն [առնելուց], ինչպես վերջինս եր ուսուցել[42]։ Ցեվ [դեսպաններ] ուղարկեցին [հայերն] Ներշապուհ Տարոնի յեպիսկոպոսի մոտ, վորին պարսից թագավորն եր նշանակել հանդերձ յերկու ընկերներով, և հայտնեցին, վոր «բոլորը [դավանա]փոխ են յեղել՝ ընդունելով Նեստորի աղանդն և հաստատելով Քաղկեդոնի ժողովը, և մենք չունինք աթոռ, ուր ձեռնադրություն կատարենք. ուստի և դիմում ենք քո բարեպաշտությանն, վոր մեզ յեպիսկոպոսներ նշանակես, քանի վոր բոլորը ճանաչեցին նրանց՝ աղանդի մեջ ընկնելը»։

Ցեվ քանի վոր պարսից թագավորները ստիպում եյին հայերին, վոր հեռանան հունաց (բերձենների) դավանությունից, ինչպես վերև հիշեցինք, և վորպեսզի կրոնափոխությամբ նրանց միջև թշնամությունն ընկնի, և այսու առավել ևս հնազանդ լինեն պարսից պետությանն, մեծամեծ կաշառներ խոստացան հայոց վար-

* Տես 36-րդ յերեսի * ծանոթությունը։

դապետներին իրագործելու այս, յերբ բարձավ քահանայապետությունն Գրիգորի զարմից[43]։

Յեվ հենց վոր Ներշապուհ յեպիսկոպոսը տեղեկացրեց Ներսես (Ներսեհ) կաթողիկոսին, վոր եր Աշտարակեցի (Աշխարակ[ե]ցի ?)[44] և չար հերձվածող, և վոհ Պետրոս Քերդողին[45], այլ և ուրիշ յեպիսկոպոսներին և ազատներին (ազնվականներին), հրամայեցին յերկրորդ մեծ ժողովը գումարել նույն Դվինում[46] նույն Ներսեսի [կաթողիկոսության]յերկրորդ տարին, Հուստինիանոս (Յուստինիան) թագավորի տասնուչորսերորդ տարին, Խոսրով (Խուսրո) պարսից թագավորի յերկրորդ տարին, այն տարին, յերբ վկայեց սուրբ Ցիզտիբուզիտը (Ազիզ-բուզիտը)[47]. և կրկին նզովեցին նույն սուրբ ժողովը Քաղկեդոնի[48], վոր կոչեցին նեստորական՝ համաձայն անաստված Աբդիշոյի (Աբդիբոյի). և նույն թվին յերևան հանեցին մեկնողական գրությունն Տիմոթեոս և Փիլոքսենոս (Փիլաքսոն) հերձվածողների, վորոնք ասորի եյին և առաջինները յեղան, վոր գրեցին Քաղկեդոնին ու Քրիստոս աստուծո յերկու բնությանն ընդդիմադրելու մասին. և Կուղի գրվածքին[49] ստորագրվեցին իրենց իսկ մեղցնելու համար և ասացին «մի բնություն բանին աստուծո և մարմնոց», և անմահական բնությամբն խաչեցյալ և մեռյալ Քրիստոսն քարոզեցին, այսինքն՝ «խաչեցյալ» ավելացրին «սուրբ աստված»-ի մեջ, վոր և «խաչեցար», համաձայն Պետրոս Անտիոքացվո[50], վոր Սաբելիոսի (Սաբելի) ախտով եր վարակված։ Յեվ նզովքով կրկին սահմանեցին ուղիղ դավանությունից բաժանումը և վերոհիշյալ հերձվածող վարդապետներին ուղարկեցին՝ ամբողջ Ասորիքում ավետելու, վոր միաբանությամբ հավիտյանս ընդունել են նրանց աղանդն[51],

Ցեվ իրենց մետրապոլիտ կացուցին մահագործ (մահաձեռն) Աղիկառնացվո և մասամբ Աբդիշոյի (Սբդիբոյի) կողմնակից [համարվող] մեկին։

...[Ցեվ] հեռացան ճշմարտությունից, վոր ուղիղ սովորել եյին սուրբ Գրիգորից։

Յերեք տարի անց Քաղկեդոնի ժողովից հետո սուրբ Սահակն ու Մաշտոցը (Մաստոցն)[52], Գրիգորի շառավիղները (թոռները), և նրանց բոլոր աշակերտներն ու վարդապետներն՝ առաջինները մեկնաբանեցին Ղևոնդ (Լեոնտի) և Հովսեփ Հայոց (Սոմխիթի) վարդապետների և այլ անթիվ սրբոց [վկայա]բանությունները (գրքերը), վորոնք բարի (սուրբ) սերմ[եր] ցանեցին նրանց (հայոց) մեջ[53]. իսկ նրանք (հերձվածողները) տարաշեկ տատասկով դիտ-

ժամբ խոցեցին նրանց հոգիներն ու անմեղ ժողովրդին. և ինքն Մովսես Քերթողն [նախա]զգուշացրեց նրանց կործանումը[57], բայց [հերձվածողները] նրան էլ չլսեցին։

Սրանից հետո անցավ մի քանի ժամանակ, [և] մեռավ Վահան Մամիկոնյանը (Մամկունենին), վորն իր քաջագործությամբ գրավեց պարսիկներից մարզպանությունն, ձեռք բերեց քրիստոնյաների իրավունքները, Տրդատ (Թրդատ) թագավորից սահմանված՝ յեկեղեցական և չքավորաց կարգերն, գավառներն վերադարձրեց ու առանց հարկի ազատեց[55]։ Այս ժամանակից պարսից մարզպանները գրավեցին Հայքն (Սոմխիթը), և քրիստոնեյական կարգն արհամարհվեց ու յեկեղեցական վարչապետությունն վերացավ, և ազատների (ազնվականների) իշխանությունն տապալվեց պարսից մարզպաններից, և կաթողիկոսներն ու յեպիսկոպոսները ճշմարտությունից շեղվեցին և հանդգնություն սովորեցին պարսիկներից ազատների (ազնվականների) ընդդեմ [գործելու], և գավառների հարկն [էլ] իրենք էյին վճարում՝ հանձնելով յերկիրն յեպիսկոպոսներին ու քորեպիսկոպոսներին, վորպես պարսից թագավորության հլուներին։

Յեվ կաթողիկոսներից ու յեպիսկոպոսներից ոմանք վորդեգրեցին պարսից թագավորներին և վորդեգիր էյին անվանում Կավատին ու Խոսրովին (Խուասրոյին), վորի պատճառով կառավարության իրավասությունն յուրացրին և վարվում էյին վոչ թե համաձայն ճշմարտությանն օրինաց, այլ ըստ իրենց քմահաճույքի, և յեկեղեցիների պետքերը սկի յեկեղեցիների համար չէյին սահմանված, այլ իրենց ծառայեցնելու նպատակով, [վոր] և մարդկանց ցույց տալու համար ցիրուցան էյին անում. [և] այս [պատճառ]ով բոլոր յեպիսկոպոսներն ու բոլոր վանահայրերն՝ անսաստված թագավորների հաճությամբ՝ աստուծո զայրույթն հարուցող ունայն գանձումների յետևիցն ընկան։ Յեվ ապա ազատներն (ազնվականներն) ու գլխավորականներից ոմանք՝ նրանց օրինակին հետևելով՝ միանգամայն հեռացան սուրբ Ներսեսի[56] և սուրբ Սահակի[57] սահմանված կանոններից։ [Զբ] վոր Վահան Մամիկոնյանի (Մամկունենիի) օրոք վորոշվեց՝ բոլոր մեծամեծների տներում տարին մի անգամ տոնել սրբերից մեկի հիշատակը, վորպեսզի սիրո սեղանով (ագապով)[58] մխիթարվեն նրանց տներում և փառաբանություն աստուծո՝ չքավորները, ակարներն ու ցավագարները, վորբերն ու տնանկները։ Այս բոլորը նրանք վերացրին իրենց սեփական գանձումների համար, և խանգարվեց ու խախտ-

վեց հոգևորական բոլոր բարի սովորույթն ու կարգը, և որեցող հաստատվեց չարն, և յեպիսկոպոսարանները դարձան կռատներ. և յերբ նախարարները գնում եյին յեպիսկոպոսական դուռն, ժամանակ չեյին գտնում այնտեղ մտնելու և ամոթալի վերադառնում եյին ինչպես պարսից մարզպանի դռնից և ավելին[59]. Այս [պատճառ]ով այս մեծ անպատվությանը չհանդուրժեց Վարդան Մամիկոնյանը (Մամկունը), որը Զոխ[60] եր կոչվում, այն է «կամակոր» (sic), և նրա ազգական ուրիշ նախարարները, որոնց անպատվել եյին, սպանեցին փոքր պարսիկ Սուրեն մարզպանին՝ նրա տունը կրակի յենթարկելով, և ընտանիքով հանդերձ փախուստի դիմեցին դեպի Կոստանդնուպոլիս։ Գնալով այնտեղ, նրանք բարյաց[ակամ] ընդունելություն գտան Հուստինիանոս (Իուստինիան) թագավորի կողմից։ Սակայն նրանք չմիաբանեցան հույների (բերձենների) հետ. և թագավորը զարմացավ և հարցրեց պատճառը։ Յեվ նրանք ասացին, որ «մեծ յեղավ Քաղկեդոնի ժողովի մասին, որը մեր վարդապետները չընդունեցին»։ Յեվ թագավորը հրամայեց կանչել Հայոց (Սոմխիթի) վարդապետներին ու յեպիսկոպոսներին, որպեսզի հարցափորձի յենթարկվեն և ճշմարիտն ճանաչեն։ Յեվ գումարվեց մեծ ժողով Կոստանդնուպոլսում, ուր մեծ քննություն արին և ճշտվեց այն, ինչ որ իրավացի չեր, և բոլորը միաբերան ընդունեցին ժողովը Քաղկեդոնի, և ամբողջ Հայքն (Սոմխիթն) իսկ անիծեց և նզովեց նրա կշտամբողին և՝ միանալով հույների (բերձենների) հետ՝ խնդրեց թագավորից բարվոք [ընդունի], որ նրա (Հայոց) ծախքով շինվի Սոփիայի արևմտյան դուռն, որն այն պահին եյին կառուցում։ Յեվ թագավորն [իրավունք] շնորհեց կատարելու նրանց (հայերի) բաղձանքը, և նրանք տվին շինության գինը՝ մաքուր արծաթ հարյուր հազար (տասը բյուր) և կոչեցին այն «դուռն Հայոց», [ինչպես այն կոչվում է և] մինչ որս[61].

Յեվ՝ վերադառնալով նույն ժողովից՝ [ժողովական հայերը] հասան Հայք, և ոմանք ջերմեռանդությամբ ընդունեցին [այն] և հնազանդվեցին միաբանությանն, իսկ ոմանք՝ իբրև օձեր՝ առավել ևս ուժ տվին ժողովրդի գրգռմանն ու վրդովմունքին՝ Մայրագոմեցվո (Մայրեգուեմելիի) դրդմամբ. և այս յեղավ Հովհան կաթողիկոսի օրոք։

Սրանից հետո Մորիկ (Մավրիկ) կայսրն[62] [Խոսրովի մոտ] ուղարկեց Հայոց (Սոմխիթի) մեծ զորավար Մուշեղ (Մուշել) Մա-

միկոնյանին (Մամկունենին), և Հայոց (Սոմխիթի) թագավորությունը տվեց Խոսրովին (Խուասրոյին)[63]։

Իսկ ամբողջ [Հայքը՝ սկսած] Դվինից՝ Խոսրովը (Խուասրովը) յենթարկեց կայսեր, և խաղաղություն ընկավ նրանց միջև. իսկ Մուշեղին (Մուշելին) մեծամեծ ընծաներ տվեց և ուղարկեց արքայանիստ [քաղաքն]։ Յեվ հասավ Մուշեղն (Մուշելն) Կոստանդնուպոլիս խաչվերացի տոնին[64], և [ինչպես] ինքը, [նույնպես] և նրա ուղեկիցները չհաղորդվեցին հույների (բերձենների) հետ. և հարցրեց թագավորը [պատճառի մասին] և պատասխանեցին, վոր «Քաղկեդոնի ժողովի և Քրիստոսի յերկու բնության համար է»։

Իսկ թագավորն ասաց. «Բեզանից (Մուշեղից) առաջ Վարդանն ու նրա [կողմնա]կից ազատները (ազնվականները) ձեր իսկ քահանայապետների ձեռքով ու գրով բազմազան քննությամբ ընդունեցին [ժողովը Քաղկեդոնի]»։ Մուշեղն (Մուշելն) պատասխանեց. «Գուցե՞ տգիտությամբ կամ ձեզանից յերկյուղ կրելով [արին այդ]. իսկ յեթե քրիստոսասեր արքայությունդ հրամայի և ճշմարտությամբ լինիս միջնորդ, դու սրա մասին մեր վարդապետներից ճշմարիտն կգտնես»։

Յեվ հրամայեց թագավորն Հայոց (Սոմխիթի) կաթողիկոս Մովսիսին[65] և բոլոր յեպիսկոպոսներին, վորպեսզի գան Կոստանդնուպոլիս և նորից քննեն ու հաստատվի ճշմարիտն։

Բայց Մովսես կաթողիկոսը չհամաձայնվեց գնալու, այլ այսպես պատասխանեց դեսպաններին. «Զեմ անցնի Ազատ գետն[66], վոր է սահմանն պարսից, չեմ ուտի հունաց (բերձենների) թըխվածքը և չեմ խմի նրանց թերմոնը[67]»։ Նույնպես և Վասպուրականի յեպիսկոպոսները, վորոնք պարսից պետության ներքո եյին, չկամեցան գնալ։ Միմիայն Տարոնի յեպիսկոպոսն ու բոլոր [այն] յեպիսկոպոսները, վորոնք հունաց (բերձենների) ձեռքի տակ եյին, շտապ կերպով ուղևորվեցին դեպի արքայանիստ [քաղաքն] և՝ կրկին անգամ քննելով՝ նորից հաստատեցին ժողովը Քաղկեդոնի բոլորը միաձայն Մորիկ (Մավրիկ) թագավորի առաջ, և խոստովանեցին յերկու բնությունն Քրիստոսի ճշմարիտ, նույնպես և միաբանության յերդումն գրեցին, և վերադարձան։ Բայց յերբ նրանք յեկան Հայք (Սոմխիթ), նրանց [վորոշումն] չընդունեց[ին] Մովսես կաթուղիկոսն ու այլ յեպիսկոպոսները, վորոնք պարսից մասում եյին[68]։

Յեվ բաժանվեց Հայքը (Սոմխիթը), և սրանք (քաղկեդոնիկները) կաթողիկոս կացուցին Հովհան Կոգովիտեցուն[69], և սրանից

հետո տասնևյերկու տարի՝ մինչև Մորիկ (Մավրիկ) թագավորի մահը՝ բազում ընդդիմադրությամբ էր ընթանում [Հայքը] Քաղկեդոնի ժողովի ու մեր տեր աստված Քրիստոսի յերկու բնության պատճառով։

Ցեվ վերոհիշյալ Աբրահամ կաթողիկոսն քշեց Ա[յ]րարատից [Քաղկեդոնի ժողովի կողմնակից] քահանաներին և Հովհան՝ վանահորն սուրբն կաթողիկեյին, վոր կոչվում է նաև Շողակաթ (Շուլկաթ), և [վանահայրերին] սուրբն Հռիփսիմեյի, և՛ Ոշականի (Ուշականի) և՛ Ցեղվարդի (Նլիվարդի) և՛ Արամոնաց և՛ Գառնիի և բոլոր վանքերի ու ամբողջ Ա[յ]րարատի, իսկ վոմանց հարկադրեց նզովել սուրբ ժողովը [Քաղկեդոնի][70]։

Յերեք տարուց հետո պատերազմ ծագեց Բասենում (Բասիանում), ուր հույները (իոնները) պարտվեցին պարսիկներից, և [վերջինները] գրավեցին Կթուին քաղաքն [Հ]աշտենից. իսկ չորրորդ տարին անաստված Փոկա կայսեր, վորը սրով սպանեց Մորիկ (Մավրիկ) թագավորի[ն ու նրա] վորդոց, Կարնո (Կարնու) քաղաքն [էլ] հանվեց ասպարեզից։

Սույն թվին Ահմադը գրավեց [նույն] Կարնո (Կարնու) քաղաքն [՝գերելով նա]և Հովհան կաթողիկոսին, վորը [Հայքի] հույնաց (բերձեններ) մասումն էր[71], և սույն թվին Մովսես կաթողիկոսը բաց թողեց (քշեց) իր ձեռքից Հովհանի կողմնակից քահանաներին, վորոնք գնացին՝ մի մասը հույների (իոնների) մոտ, մյուսը՝ Տայք (Տաո)[72], և սրանց կոչում են (?) «Շողակաթ» (Շուլակաթ)։

Ինչպես սուրբ Գրիգորին յերևաց տեսիլքում, վոր յերկինքը բացվեց և լույս իջավ այն տեղում[73] [,նույնը կատարվեց այժմ]։ Ցեվ մի առժամանակ անց Հերակլ կայսրը[74] յեկավ Հայք (Սոմխիթ) և՝ տեսնելով Հայոց հերձվածքն՝ շատ ցավեց նրանց կործանման առթիվ, [վոր հետևանք էր նրանց իսկ] ակամա չեղման. և հրամայեց գումարել մի մեծ ժողով Հայոց (Սոմխիթի) յեպիսկոպոսների ու վարդապետների, և գիր գրեց Յեզր (Եզրա) կաթողիկոսին[75] ու ազատներին (ազնվականներին), վորպեսզի ժողովեն Կարնո (Կարնու) քաղաքն[76] և քննեն հավատքը, Քաղկեդոնի ժողովի առթիվ, և հայերը ճշմարիտ ճանաչեն Քրիստոսի յերկու բնությունը։

Ցեվ յեկան բոլորը միասին թագավորի մոտ և յերրորդ անգամ մանրամասն քննեցին ու հաստատեցին ճշմարիտն և հնազանդվեցին հայերն յերդումով [ու] ստորագրությամբ, վոր նրա

(Քաղկեդոնի) մասին վիճելով՝ վոչվոքի չեն ընդդիմադրի. բայց յերբ Դվին վերադարձան, նույն կործանիչ աղանդին չենթարկվեցին, վորովհետև նրանց (աղանդավորների) վարդապետության տեղն այն եր, ուր ամեն ինչ ճշմարիտն խեղաթյուրելով ե ասվում։

Իսկ նույն Մայրագոմեցին (Մայրեգումեցին) գրգռում եր վոմն հերձվածող վանականներին (մոնոզոններին) և Ստեփանոս (Ստեփանե) Գարդմանից յեպիսկոպոսին[77] և Մաթուսաղա (Մաթուսալա) Սյունյաց քերդողին[78] և այլ պատահական մի վոմն քահանայի, վորոնք ներկա չեյին յեղել այն (Կարնո) ժողովին, վորպեսզի չհաղորդվեն Յեզր (Եզրա) կաթողիկոսից և [բոլոր նրանցից,] վորոնք նրա հետ եյին միացել։ Մի քանի որից հետո Ստեփանոս (Ստեփանե) յեպիսկոպոսն ու Մաթուսաղան (Մաթուսալան) յեկան Յեզր (Եզրա) կաթողիկոսի մոտ և հաղորդվեցին նրա մոտ։ Հենց վոր չար[ամիտ] Մայրագոմեցի (Մայրեգումեցի) վանականը լսեց, վոր նրանք միացան Յեզրին (Եզրային) և Մաթուսաղան (Մաթուսալան) Սյունյաց յեպիսկոպոս ձեռնադրվեց, մեծ վիրավորանքով հայհոյում եր Ստեփանոսին (Ստեփանեյին) և Քերդողին, ասելով. «Փոքր ե Յեզրի (Եզրայի) ուրացումը ձեր սխալմունքի հանդեպ, քանի վոր նա՝ թագավորից յերկյուղ կրելով կամ գիտուն մարդկանց հետ մերձենալով՝ ուրացավ կրոնը, իսկ դուք սնափառության ու շողոքորթության համար անբուժելիորեն կործանվեցիք»։

Հենց վոր Յեզրը (Եզրան) իմացավ այս, դիմեց այն չար[ամիտ] վանականին և բոլորի ներկայությամբ ասաց. «Յես յերեք անգամ կանչեցի քեզ և յերեք անգամ Մաթուսաղային (Մաթուսալային) և Ստեփանոսին (Ստեփանեյին), — քանի վոր դուք եք յերկրի[ս] վարդապետներն ու գիտնականները, — վոր գայիք և պատասխան տայիք թագավորին, բայց դուք չեկաք, և այժմ մեր վորոշմանը հանդգնորեն ընդդիմադրում ես, մեր [դեմ,] վորոնք գրքերից ու վարդապետներից ճշմարտապես քննեցինք արդարացին, ընդունեցինք տեր մեր Հիսուս Քրիստոսի յերկու բնությունն կատարյալ աստվածությամբ և կատարյալ մարդկայնությամբ, մի դեմք և մի պատկեր, նախախնամությամբ անբաժան. և առաջին սուրբ հայրերի գրությունները, վոր կարդացինք, նույնն եյին վկայում. և մենք հնազանդվեցինք նրանց (հայրերի) հրամաններին և տրամադրվեցինք դեպի բարին. և այժմ վոչինչ չե անցած՝ աստվածային գրությունները մեզ մոտ են, վերցնենք և ճշմարիտն սովորենք»։

Եվ դրոց վկայությամբ փակեց նա (Եզրը) բերանը թե վոչ, [վանականը] գարշահոտությամբ վորձկալ՝ նման չար հերձվածքին, և ասաց. «Ի վիճակի չեմ ընդունել այդ գիրը, վորովհետև սուրբ գրքերին նեստորականներն են այդ ավելացրել»։ Եվ գնաց բազում մարդկանց գայթակղեցնելու,... և նրա աշակերտներն իր գյուղի անունով «Մայրեվանեցի» (Մայրենեցի) էյին կոչում նրան[79]։

Իսկ նա (Մայրագոմեցին) գնաց Հունաստան նույն ընդդիմադրությունն ցույց տալու համար և մի փոքր [հունարեն] լեզուն [էլ] սովորեց, վորպեսզի դրանով ավելի ևս հավատացնել տա [իրեն] հայերին, և վերադարձավ Հայք (Սոմխիթ). առաջվանից վատթար տարածում էր հերձվածքն և աշխատում էր՝ մեծամեծ մարդկանց աջակցությամբ ու հերձվածողների ցանկությամբ՝ Եզրից (Եզրայից) հետո գրավել նրա աթոռը, վոր նրան խոստացել էյին Քաղկեդոնի ժողովին ընդդիմադրություն ցույց տալու համար[80]։

Իսկ Եզրից (Եզրայից) հետո աթոռը գրավեց Ներսես (Ներսե) Իշխանցին, վորը կամոքն աստուծո արժանի և ուղղահավատ մարդ էր. և բոլորովին հուսախաբ յեղավ այն նենգ[ամիտ] Հովհան վանականը, նամանավանդ նրա համար, վոր Ներսեսին (Ներսեյին) տեսել էր Հունաստանում հաղորդվելիս Կոստանդին Փոքր թագավորի հետ, և վոչվոք չեղավ ընդդիմադրելու և ասելու, վոր «Քաղկեդոնից հետո Ներսեսն (Ներսեն) էլ Եզրի (Եզրայի) պես սխալվեց»։ Այս պատճառով էլ Ներսեսը (Ներսեն) կանչեց նրան, և բազում յեպիսկոպոսների և վարդապետների ու ազատների (ազնվականների) ներկայությամբ մեծ քննություն արին նույն վեճի առթիվ, և նրանք բոլորը վճիռ կայացրին կարգալույծ անել նրան (Մայրագոմեցուն) [և քշել] յերկրից իբրև խաբեբայի. և սուրբ Ներսես (Ներսե) կաթողիկոսն ցասմունքով արտաքսեց նրան [Հայքից][81]։

Եվ Թեոդորոս՝ Ռշտունյաց տերն, իշխանն Հայոց (Սոմխիթի), պղնձե աղվեսն տաքացրած նրա ճակատին կպցրեց իբրև նշան հերձվածքի, հանդերձ նրա յերկու ընկերակից — վանականներով (մոնոզոններով)։ Ապա նա փախուստի դիմեց դեպի Կովկասյան լեռները և այնտեղից շուտով վերադարձավ, վորովհետև լեռնականները նրան չեյին ընդունել, քանի վոր վերջինները կռապաշտներ էյին, և անցավ Կամբեչ[ով]ան՝ տիրելով փոքր ձորին, վոր «Հայոց (Սոմխիթի) ձոր» է կոչվում, և շատերին աշակերտ վերցրեց վոչ այնքան այդ [ձոր]ում, վորքան Կուր [գետի] հայակույս՝

Այրարատում, Կարգմանում, Ջորոփորում (Ջորոձորում) և Սոմխիթում և շատերին վանական (մոնոզոն) դարձրեց նույն անկանոն վարդապետությամբ. և լցվեց երկիրը վորոմով։

Ցեվ Ներսես (Ներսե) կաթողիկոսի մահից հետո, Անաստաս կաթողիկոսի օրոք[82], [Մայրագոմեցին] լցվեց Այրարատ՝ աշակերտայիններով հանդերձ։

Ցեվ Անաստասի մահից հետո [Նույնը] գազանի պես ներս խուժեց Հայք (Սոմխիթ)՝ առաջին [հերթին] իր իսկ գավառն Բջնի (Բյուզանդի Մանազկերտցուն՝ նաև - ոնոզկավորությամբ [վրդովեցուցի], լի. և հերձվածքով մնաց այնտեղ այդ՝ լկտին ու Հայքն (Սոմխիթն) ապականող՝ քոփակ շունը, վասն որում ՃԼԴ թվին[83], Իսկ նրա աշակերտները՝ մի առժամանակ վանականներ լինելով Մայրեվանքում, Ցեղվարդում (Եղիվարդում) և Սուրբ-Թեոդորոսում՝ Իսրայել կաթողիկոսի և Գրիգոր իշխանից քշվեցին և ցիրուցան յեղան ամբողջ Հայքում (Սոմխիթում), այս ու այն տեղ՝ քաղաքներն ու գյուղերը, դայթակղեցնելու բոլոր մարդկանց որեցոր և մինչև այսոր[84]։

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Վրաց պատմիչի խոսքերը՝ «Հայերը հեռացան ուղիղ դավանությունից» արդեն ցույց են տալիս, վոր նա սկզբից և յեթ վորոշած ունի, թե Վրաց (Քարթլիի) և Հայոց (Սոմխիթի) բաժանման» խնդրում ով է իրավացի և ով անարդար, ճիշտ այնպես, ինչպես, մյուս կողմից, հայ պատմիչ Ուխտանեսը տալիս է մեզ «պատմութիւն բաժանման Վրաց ի Հայոց» (և վոչ «Վրաց և Հայոց»), հմմ. Իվ. Ջավախիշվիլի, Հին վրացական պատմական գրականությունը, եջ 64 և ծանոթ. *. Լ. Մելիքսեթ-Բեկ, «Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց», հայ-վրացական փոխ-հարաբերությանց հարցերի հետ զուգընթաց (փորձ պատմա-գրականական հետազոտության), վրացերեն, Տփղիս 1928, եջ 76, ծանոթ. 4)։

2. Հունաց Արկադ թագավորի (395—408) և Հայոց Արշակ թագավորի (378—387). իբրև ժամանակակիցների, միասին հիշատակելը, անկասկած՝ այն անախրոնիզմներից է, վորով առհասարակ լի յե Արսենի յերկասիրությունը։

3. «Հունաց (բերձեններ) կրոն» ասելով հեղինակը հասկանում է քաղկեդոնիկ կամ յերկաբնակ (դիոֆիզիտ) դավանությունը, վոր նա համարում է «ուղղահավատ» և «ուղղափառ»՝ հակադրելով «Ասորվոց» կրոնին, վորը հակաքաղկեդոնիկ կամ միաբնակ (մոնոֆիզիտ) լինելով՝ նրա կարծիքով, «չարափառ» է և հերձվածողական (հմմ. Իվ. Ջավախիշվիլի, op. cit., 66, 65)։

4. Ինչպես Կ. Կեկելիձեն (Վրաց գրականության պատմություն, I, 139) իրավացիորեն մատնանշեց, այս դեպքը տեղի ուներ վոչ թե IV դարու վերջում, այլ V-ի կեսում՝ 450 թվին։ Համմ. Ցեղիշեյի համապատասխան վկայությունը

*ի դիւէի պատմութիւն Վարդանանց [«Ղուկասեան Մատենադարան» ԺԱ], Թիֆլիս 1913, էջ 89—93)։*

*5. 458—484 թ.թ.*

*6. Այսինքն քաղկեդոնիկ-սարկիներին։*

*7. Տարօրինակ է, որ այստեղ Ներսես կաթողիկոս Միջինի մասին խոսվում է իբրև Պերոզի (458—484) ժամանակակցի մասին, մինչդեռ մի ուրիշ տեղ, ստորև, նույն Ներսեսի մասին խոսվում է իբրև Վրաց Կյուրիոն կաթողիկոսի (VI—VII դ.) կամ նաև Խոսրով Ա.-ի (577—579) ժամանակակցի մասին. հմմ.* Կ. Կեկելիձե, op. cit. 139։

*8. Սա այն «Աբդլիսոյ եպիսկոպոս Ասորւոց»-ն է, որ քանիցս հիշատակվում է «Գիրք Թղթոց»-ի մեջ (էջ 54, 55, 57, 59, 62, 66, 68, 73, 78, 81, 344 վերջինում «Աբդիշոյ»] և որի թղթերից մի քանիսը ամփոփված են նույն ժողովածուի մեջ (էջ 59—69)։ Հմմ. նաև* Narratio de rebus Armeniae (*Migne*) Patrologiae cursus completus, series graeca, t. CXXXII, col, 1244 et pass).

*9. Պետրոս Թափիչի* (Κναφεύς) *մասին հատկապես տես. Л. Меликсет-Беков,* Грузинский извод сказания о посте «араджавор»,—«Христианский Восток» изд. Р. Академии Наук, т, V, Пгр. 1917, стр. 100—108:

*10. Տիմոթեոս Կուզի մասին հատկապես տես. Տիմոթէոս եպիսկոպոսապետի Աղէքսանդրեայ՝ Հակաճառութիւն առ սահմանեալսն ի ժողովոյն Քաղկեդոնի, հրատ.* Կարապետ Վ. Տէր-Մկրտչեանի և Երուանդ վ. Տէր-Մինասեանի, *Էջմիածին 1908 (նույնը գերմաներեն առաջաբանով՝* Timotheus Äluruss' des Patriarchen von Alexandrien Widerlegung der auf Synode zu Chalcedon Festgesetzen Lehre. Armenischer Text mit deutschen und armenischen Vorwort, herausgegeben von lic. Dr. *Karapet Ter-Mekerttschian* und lic.Dr. *Erwand Ter-Minassiantz,* Leipzig 1908). Գալուստ Տէր-Մկրտչեան, *Տիմոթէոս Կուզի հակաճառութեան հայ թարգմանութեան ժամանակը և սուրբ գրքի երրորդ կամ «Նորագիւտ» հայ թարգմանութիւնը, — «Արարատ» 1908, էջ 564—589,707—708.* Ներսէս վ. Ակինեան, *Տիմոթէոս Կուզ հայ մատենագրութեան մէջ, և* Հրաչեայ Աճառեան, *Հայերէն նոր բառեր Տիմոթէոս Կուզի հակաճառութեան մէջ [երկուսը միասին «Ազգային Մատենադարան»-ի ԾԸ գրքում], Վիեննա 1909. Հ.* Աճառեան. *Տիմոթէոս Կուզ և ս. գրքի նորագիւտ թարգմանութիւնը,— «Շողակաթ»,* I, *Վաղարշապատ 1913, էջ 1—22.* Н. М[арр], Сирийская версия Возражений Тимофея Элура против Халкедонского собора,—«Христ, Восток», т. II, 1913, стр. 405—406, *հմմ.* Изв. Акад. Наук, 1914, стр. 457. *հմմ. նաև* Լ. Մելիքսեթ-Բեկ, *«Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց»* etc, *վրացերեն, Տփղ. 1928, էջ 70—71։*

*11. Պերոզ թագավորի կողմից 9 հակոբիկ վարդապետների ուղարկելը Հայք ակներև անաքրոնիզմ է այն պարզ պատճառով, որ այս հատվածում հիշատակված Սևերոսը, ինչպես և Փիլոքսենոս [Մաբուգեցին] ու Հուլիանոս Ալիկառնացին (Հալիկառնացին)* VI *դարու գործիչներ են (հմմ.* Կ. Կեկելիձե, *Վրաց գրականության պատմություն,* I, *139)։*

*12. «Խաչեցար»-ի մասին մանրամասն խոսվում է* Narratio de rebus Armeniae-*ի մեջ* (*Migne*, PG, t. CXXXII. p. p. 1240, 1242, 1245). *ըստ Կարապետ եպ. Տեր-Մկրտչյանի, այն ընդունված է հայոց մեջ* V *դարու վերջում. տես՝ Կնիք հաւատոյ, հրատ.* Կարապետ եպիսկոպոսի, *Էջմիածին 1914, էջ* LXXIII—LXXV, *հմմ.* Л. М[еликсет].-Б[еков], Тезис Θεὸς ἐσταυρώθη у армян.—«Христ. Восток», т. III, 1915, стр. 198—199. Նույնը, Грузинский извод сказания о посте «ара-

джавор», т. V, стр. 105—108. *Տե՛ս նաև* Исповедание христианские веры Армянския церкви, переведенное с Армянского на Российский язык и изданное тщанием преосвященного *Иосифа* Архиепископа всего Армянского народа обитающего в России и Кавалера Князя *Аргутинского-Долгорукого* Спб. 1799, стр, 73—75, *И. Троицкий*, Изложение веры церкви Армянския, Спб. 1875 стр. 203–210

*13 Հայ մատենագրության մեջ գոյություն ունին այլ և այլ վկայություններ «առաջավորաց» պասի մասին հետևյալ հեղինակներից. 1)* Զենոբ Գլակի *Գիրք պատմութեանց երկրին Տարօնոյ, որ կոչի Զենոբ, Կ. Պոլիս 1708, եջ խդ), 2)* Պողոս Տարոնացու *(Յաղագս առաջաւորացն պահոց... Պատասխանի ... [չհրատարակված], տես՝* Յակովբոս Վ. Տաշեան, *Ցուցակ հայերէն ձեռագրաց մատենադարանին Մխիթարեանց ի Վիեննա, 1895, եջ 769,* Գ. Զարբհանալեան, *Հայկական հին դպրութեան պատմութիւն, բ. տպ., Վենետիկ 1897, եջ 605. Տե՛ս.* Լ. Մելիքսեթ-Բեկ, *«Վարդապետ Հայոց Վրաստանի կողմանց»* etc., *եջ 160), 3)* Ներսես Շնորհալու *(Գիր հաւատոյ խոստովանութեան Հայաստանեայց եկեղեցւոյ... ի խնդրոյ գերապատիւ փեսայի Կոմնենեան Թագաւորին Յունաց Մանուէլի Ալէքսի մեծի պռոտոսեբաստոսի..., տես «Թուղթ ընդհանրական», Էջմիածին 1865, եջ 126—127, 141—143), 4)* Մխիթար Գոշի *(Ծագրութիւն... յաղագս Վրաց. տես [Կարապետ Վ.] Թուղթ Մխիթար վարդապետին. որ Գոշն կոչիւր, — «Արարատ» 1901 թ., եջ 60. Տե՛ս.* Լ. Մելիքսեթ-Բեկ, op. cit., 246*), 5)* Հովհաննես վանականի Տավուշեցին *(Պատճառ վասն առաջաւորացն պահոցն, արարեալ Վանական վարդապետի Վասն հակառակացն և այլազգացն զոսա պահն [չհրատարակված], վոր մենք պատրաստած ունենք տպագրության. տես* Յ. Կարինեանց, *Մայր ցուցակ ձեռագիր մատենից գրադարանի սրբոյ աթոռոյն Էջմիածնի, Տփղիս 1863, եջ 65, 129,* Գ. Զարբհանալեան, op. cit., 735. Հ. Համազասպ Ոսկեան, *Յովհաննէս վանական և իւր դպրոցը [«Ազգային Մատենադարան» ՂԹ], Վիեննա 1922, եջ 31. Տե՛ս.* Լ. Մելիքսեթ-Բեկ op. cit., 253), *և այլն։ Վորբջին վերաբերյալ գրականությունը տես հետևյալ մենագրություններում՝* Л. Меликсет-Беков, Грузинский извод сказания о посте «араджавор»,—«Христ. Восток», т. V, стр. 73—111, *ուր, ի միջի այլոց, ամփոփված է վրաց գրականության ավյալները «առաջավորաց»-ի մասին, վորը վրացերեն «ալաջորի» յե կոչվում. Տե՛ս.* Մեսրոպ Վ. Մաշտոցյանցի *գրախոսականը այս մեր աշխատության մասին, — «Արարատ» 1918, հունվար-մարտ, եջ 148—150.* Դոկտ. Հ. Ակեքսանդր Վ. Մատիկեան, *Արայ գեղեցիկ. Համեմատական-քննական ուսումնասիրութիւն [«Ազգային Մատենադարան» ՃԻԶ], Վիեննա 1930, եջ 153—170 (նույնը տես նաև՝* Ա. Մատիկեան, *Դիցաբանական շունը յարաբերութեամբ Միքայէլ-Գաբրիէլ հրեշտակներու և ս. Սարգսի, — «Հանդէս ամսօրեայ» 1927 թ., եջ 43—55)։ Հույն գրականության ավյալներից, ուր այս պասը կոչվում է* Ἀρτζηβούριος, *առանձնապես հիշատակելի յե* Sancti patris nostri Isaaci Magnae Armeniae catholici Oratio invectiva adversus Armenios *գրվածքը, ուր այս հարցին հատկապես և մանրամասն նվիրված է առաջին «ճառի»* (Oratio I contra Armenios-*ի*) XIV *գլուխը, վոր կրում է հետևյալ վերնագիրը՝* Περὶ τῆς σατανικῆς νηστείας τοῦ Ἀρτζηβουρίου — De satanico jejunio, quod Artzeburii vocant (*Migne*, PG, t. CXXXII, p. 1197—1209) *և յերկրորդ «ճառի»* (Oratio II contra Armenios-*ի) 23-րդ կետը, վոր կրում է հետևյալ վերնագիրը՝* Περὶ τῆς ἐσκοτισμένης νηστείας τοῦ Ἀρτζηβουρίου — De obscuro Artzeburii jejunio (ibid p. 1233—1235). *Հարևանցի կերպով նույնը հիշատակվում է նաև հասվածում.*

Quomodo recipiendi sunt Armenii haeretici (ibid., 1257 -1260)։ *Տես նաև* *И. Троицкий*, Изложение веры церкви Армянския, Спб. 1875, стр. 215—220. *И. Мансветов*, О постах православной восточной церкви, Москва 1886, стр. 46—53 *(վերջիններում, ի միջի այլոց, ամփոփված են և սլավոնական գրականության տվյալները նույն պասի մասին, որ կոչվում է* «арцивур» *կամ* «арцивурнев»)։ *Ինչպես պարզվում է, «առաջավոր»-ը բավականին տարածված է յեզդի հնում կուրդերի, հարաչների և այլ քրիստոնյաների միջև* (*В. Болотов*, Из истории церкви сиро-персидской, Спб. 1901, стр. 172, «Исторические Известия», издаваемые Историческим Обществом при Московском университете, 1917. г. № 2, стр. 209), *ինչպես և ծանոթ է յեզդի քյուրդերին* (*С. А. Егиазаров*, Краткий Этнографический очерк курдов Эриванской губернии, — «Записки Кавк. Отд. Рус. Геогр. О-ва», кн. XIII, вып. 2, Тифл. 1891, стр. 190 и прим. *Н. Марр*, Еще о слове «челеби». К вопросу о культурном значении курдской народности в истории Передней Азии, — «Записки Вост. Отд. Рус. Археолог. О-ва», т. XX, в. 2—3, 1911, стр. 130, прим. 2).

*14. Այստեղ միանգամայն հասկանալի չե* Կ. Կեկելիձեյի (op. cit., *եջ 139—140*) *տարակուսանքը յերբ նա գրում է. «*խաչեցար*»-ն ու* պաչար-ը *հայոց մեջ մացրեց, ասում է Արսենը, Ներսես կաթողիկոս Միջինը, և այս նորմուծությունը կարծես թե Դվինի առաջին ժողովում է կատարվել 527 թ. [պետք լինի 507 թ. Լ. Մ.-Բ], սակայն մի այլ տեղում մատնանշում է, որ այս տեղի ունեցավ Դվինի յերկրորդ ժողովում (551 թ.)» [ուղիղ 554 թ. Լ. Մ.-Բ.], բայց «*խաչեցար-ն *իսկապես ընդունված է հինգերորդ դարու վերջը, իսկ պաչարը հնապույն պաս է արեել-քում, որի արմատները հեռավոր անցյալում պետք փնտրենք»։*

*15. Վրացի հեղինակն ի նկատի ունի Դվինի 554 թ. ժողովը, որի կանոն-ները քանիցս հրատարակվել են. տես.* Ներսէս Վ. Մելիք-Թանգեան, *Հայոց եկեղե-ցական իրաւունքը,* I, *Շուշի 1903, եջ 370—389,* Արսէն Վ. Ղլտճեան, *Կանոնք Ներսէսի Բ. կաթուղիկոսի և Ներշապուհ Մամիկոնէից եպիսկոպոսի,—«Արարատ» 1905 թ., հոկտեմբեր, հավելված, եջ 943—968.* Նոյնը, *Կանոնգիրք Հայոց [«Ղու-կասեան Մատենադարան» ԺԲ], Թիֆլիս 1914, եջ 107—116, լատիներեն թարգ-մանությունը՝ Ang. Maius,* Scriptorum veterum nova collectio e Vaticanis codicibus edita, t. X, p. 2, Roma 1838, p. p. 272—276 *(մանրամասն բիբլիո-գրաֆիան հմմ. Л Меликсет-Беков,* Об источниках армянского права, — «Христ. Восток», т. II, 1917—1925, стр. 155, 156, прим. 2, 157)։ *Սակայն ժա-մանակագրական անհամաձայնությունները այս կետում բավականին ակներև են։*

*16. Կյուրիոնի մասին, բացի* Ն. Ակինեանի *ուսումնասիրությունից (Կիւրիոն կաթողիկոս Վրաց), տես նաև՝ И. Джавахов,* История церковного разрыва между Грузией и Арменией в начале VII века, — «Известия И. Академии Наук», 1908, стр. 433—446, 511—536.

*17. Ջորս պատրիարքության և Գրիգոր Պարթևի Կեսարիայից ձեռնադրվելը՝ Հայոց յեկեղեցու մասին հորինած այն թեորիաներից է, որոնք սկիզբ են առնում* VI-VII *դարուց. «Կեսարիայի» թեորիայի մանրամասն վերլուծությունն տես. Н. Марр,* Крещение армян, грузин, абхазов и аланов святым Григорием (Арабская версия), Спб. 1905, *նույնը հայերեն՝ Մկրտութիւն Հայոց, Վրաց, Աբխազաց և Ալանաց ի սրբոյն Գրիգորէ, թարգմ. Յուսիկ արքեպիսկո-պոս, Վաղարշապատ 1911, ուր, ի միջի այլոց, կարդում ենք. «Հայ գրականու-*

*թեան մէջ ազգային հոսանքի երեւան գալուց առաջ տեղի է ունեցել յունական եկեղեցական զօրեղ ազդեցութիւն, որը, բնականաբար, կարող էր առաջ մղել կեսարիական քարոզչի գործունէութիւնը։ Յոյն եկեղեցական հոսանքը կարող էր տեղական քարոզչից, որ գործում էր բիւզանդական անմիջական ազդեցութեան սահմաններում մի որեւէ տեղ, ստեղծել համահայկական լուսաւորչի տիպ. դիտմամբ չտեսնելու տալով սիրիական եկեղեցական ազդեցութիւնը։ Հետեւանքին նայելով, յունական ազդեցութիւնը ոչ միայն ստեղծել է իսկապէս հարկաւոր տիպը, այլեւ կարողացել է յաջողցնել որ բոլոր հայերը ճանաչեն նրան. այնպէս որ, ազգային ուղղութեամբ գրողներին թւում էր Ս. Գրիգորի, որպէս համահայկական լուսաւորչի, փառքը, որ իրանից ժամանակին արդէն հաստատուած էր, առաւել եւս հռչակել։ Ս. Գրիգորի պատմութեան զարգացման առաջին շրջանից, երբ նրա քարոզչական գործունէութիւնը դեռ տեղական էր, ժամանակը չի պահել որեւէ ժամանակակից մշակուած զրոյց։ Զեմ վիճում, թէ դա կարող է այն էլ խնդիր լինել, եղել է արդեօք այդպիսի սկզբնական զրոյցի ձեւ, գրի առնուած է, թէ միայն բերանէ բերան էր խօսւում։ Առ այժմ կարելի է գուշակել, թէ սկզբում, այդ մի աւանդութիւն էր Կապադովկիայի յոյն եկեղեցու նահատակ քարոզչի գործունէութեան մասին Լազիքի եւ Իմերեթի (թարգմանության մէջ՝ Իմերեթիայի.* sic. Լ. Մ.-Բ.) *սահմանակից, արեւմտեան Հայաստանում, հռովմէական կայսրութեան մերձաւոր ազդեցութեան շրջանում։ Բոլոր խմբագրութիւններն էլ պահպանել են թէ Գրիգոր լուսաւորիչը եւ անգամ նրա սերունդը կենտրոնացած էին Հայաստանի այդ մասում... Կապադովկիական Կեսարիայի եկեղեցու սան եւ այդ եկեղեցու կարգած մի նման տեղական քարոզչի համատարած ստեղծագործող դերի վերայ կարող էին ի հարկէ պնդել իրանք յոյները, իսկ հայերից նրանք՝ որոնք ընդհանրապէս յունական եկեղեցականութեան կուսակիցներն էին եւ խմբուած էին ամենից առաջ, բնականաբար, բիւզանդական կայսրութեան կազմի մէջ գտնւող հայ գաւառներում եւ ընտելացած էին յունական կուլտուրային անմիջապէս։ Այսպիսի յունա-հայկական միջավայրը կարող էր տեղական քարոզչական գործը ընդհանրացնելու առաջին փորձը տալ...» (էջ 95)։*

*Մասնաւորապէս այս կէտում վրացի հեղինակն, ըստ յերեւոյթին, օգտագործած ունի* Quomodo recipiendi sunt Armenii haeretici *(կամ սրա նման մի փոքր այլ գրվածք), ուր, ի միջի այլոց, կարդում ենք* (Migne, PG, t. CXXXII, col. 1264). «Ἐν οἷς καὶ ὁ ἅγιος καὶ θεοφόρος Πατὴρ ἡμῶν Γρηγόριος ὁ της μεγάλης Ἀρμενίας χειροτονηθεὶς τῇ ἁγιωτάτη μητροπόλει Καισαρείας, ὅρους καὶ κανόνας ἔθετο τοῦ μὴ ἔχειν ἐξουσίαν ἀλλαχοῦ χειροτονηθῆναι τὸν τῆς μεγάλης Ἀρμενίας ἀρχιερέα, εἰ μὴ ἐν τῇ ἐκκλησίᾳ τῶν Καισαρέων»:

*Ինչ վերաբերում է «չորս պատրիարքութեան» խնդրին, դրա մասին խօսում է Կյուրիոնը Աբրահամին ուղղած թղթի մէջ (Գիրք թղթոց, 179)։ Նույնը հայ մատենագրության մէջ արծարծում է* VIII *դարու գործիչ* Սողոմոն կաթողիկոս Մաքենացին, *որի գրութիւնը բառացի առաջ է բերում* Մովսես Կաղանկատվացին X *դարում եւ, ըստ վերջինիս՝* Անանիա Սանահնեցին XI *դարում (մանրամասնությունները այս հարցին վերաբերյալ* Մովսես Կաղանկատվացու *և* Անանիա Սանահնեցու *համապատասխան հատվածների զուգընթաց հրատարակությամբ, տես՝* Լ. Մելիքսեթ-Բեկ, *«Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց»* etc., *էջ 110—120 (ուր 112—120 էջերի վրա զետեղած են լոկ հայերեն բնագիրները)։*

18. Այս Աբասը լավ հայտնի յե Աղվանից պատմությունից (Մովսես Կաղանկատուացու Պատմություն Աղուանից աշխարհի [«Լուսկանեան Մատենադարան», Ը], Թիֆլիս 1913). «Ընդ դաւանութիւնս այս (ժողովոյն Բաղկերանի) և յաշխարհս Աղուանից ի ժամանակս տեառն Աբասայ կաթուղիկոսի, որ յոյժ քննութեան առնելով խռով եպիսկոպոսօք... նորօք հանդերձ հալածեաց ի տանէն Աղուանից զվարդապետս կրօնին այնմիկ...» (էջ 142—143 [հատոր յերկրորդ, գլուխ Ը]). Նաև՝ «Տէր Աբաս, որ ի սկզբան թուականին Հայոց փոխեաց զաթոռ հայրապետութեանն ի Չորայ ի Պարտաւ՝ կալեալ ամս քառասուն և չորս, եպիսկոպոսութենէն Մեծիրանց կոչեցեալ։ Առ սովաւ կալան սովորութիւն գրել ի պարուակի ծղթոյն «Աղուանից, Լփնաց և Չորայ կաթուղիկոսի»։ Եւ առ սա գրեցին ի ժողովոյն Դունայ՝ ասել «Մի բնութիւն աստուածութեան և մարդկութեանն Քրիստոսի», և յաւելուլ ի Սուրբ Աստուածն «անմահ և խաչեցար» (ibid., էջ 391—392 [հատոր երրորդ, գլուխ ԻԴ])։ Բացի դրանից, նա (Աբասը) հայտնի յե այլ և այլ գրագրություններով, վորոնցից մեկին Մովսես Կաղանկատվացին նվիրում ե իր «պատմության» յերկրորդ հատորի ամբողջ Է գլուխը հետևյալ վերնագրով. «Թուղթ Յովհաննիսի Հայոց կաթուղիկոսի առ տէր Աբաս Աղուանից կաթուղիկոս սակս հաւատոյ հաստատութեան երկնաւոր շնորհօք ասցեալ» (ibid., 137—142), իսկ մյուսը հրատարակել ե Կարապետ Վ. [Տեր-Մկրտչյանը] առանձին գրքույկով. «Երուսաղեմի Յովհաննու եպիսկոպոսի թուղթը առ Աբաս Աղուանից կաթուղիկոս», Վաղարշապատ 1896 (= «Արարատ» 1896 թ., էջ 252—256)։ Հմմ. Narratio de rebus Armeniae-ի (Migne, PG, CXXXII, 1245) վկայությունը նույն Աբասի մասին. «...Ἔγραψαν τοίνυν ἐπιστολὴν πρὸς τὸν Ἀπᾶς τὸν καθολικὸν Ἀλβανίας χώρας, περιέχουσαν οὕτως...» (հմմ. Ն. Ակինեան, Կիւրիոն կաթողիկոս Վրաց, 99—100)։

19. Ըստ յերևույթին, Գրիգոր Քերթողն ե, վորը հայտնի յե «Գիրք թղթոց»-ից (էջ 153—160). «Որբասիրի տեառն Աբրահամու Հայոց կաթուղիկոսի ի Գրիգորէ նուաստէ Քերթողէ»։ Հմմ. Ն. Ակինեան, op. cit., 152—155։

20. Այստեղ կրկնված ե այն դրույթը Գրիգոր Պարթևի Հայոց և Վրաց լուսավորիչ լինելու մասին, վոր ընդհանրապես արծարծված ե «Գիրք թղթոց»-ի մեջ (նաև Ուխտանեսի մոտ). «Եւ ճշմարտապատում սուրբն Գրիգորիոս զնոցայն ուսոյց մեզ» (Պատճառք Դ. ժողովոյն երկաբնակացն Մովսէսի Վրաց ուղղափառ եպիսկոպոսի, էջ 123), «յիշեցուցանելով զսուրբ և զուղիղ հաւատն զոր մեծին սրբոյն Գրիգորի սերմանեալ էր յայս ի Կովկասային կողմանս» (Պատասխանի թղթոյն տեառն Վրթանիսի, էջ 132), «մի եղիցի նորոգաձեւութիւն հաւատոց ի մէջ երկուց աշխարհացս, որ սքանչելի հիմնադրութեամբ տնկեցաւ յանզանգիտողէ և ի քաջ նահատակէն Տեառն Գրիգորի» (Տեառն Կիւրիոնի ի Վրթանէսէ, էջ 138), «վասն հաւատոյ գրեալ էր, թէ հարքն մեր և ձեր ապարան ունէին յորմէհետէ և սուրբն Գրիգոր զուղղափառ հաւատ կարգեաց» (Պատասխանի [թղթոյն Սմբատայ Վրկան մարզպանի ի Կիւրիոնէ Վրաց կաթողիկոսէ], էջ 171), «հարքն մեր և ձեր զԵրուսաղէմի հաւատն ունէին, և սուրբն Գրիգոր զայն ետ նոցա, և մեք զնոյն ունիմք» (Պատասխանի [թղթոյն տեառն Սմբատայ ի Մովսէսէ], էջ 174), «դուք այժմ եւս պարծելով գրեցէք առ մեզ, թէ հարցն մերոց և ձերոց սուրբն Գրիգորիոս զԵրուսաղէմի հաւատն ետ, և մեք զնոյն ունիմք» (Թուղթ երկրորդ տեառն Աբրահամու Հայոց կաթուղիկոսի առ Կիւրիոն Վրաց կաթուղիկոս, էջ 176), «եւ միաբանութիւն էր Վրաց և Հայոց ընդ միմեանս, և

ամենայն իսկ վիճակիս սրբոյ տեառն Գրիգորի միաբանութիւն էր ընդ հաւատոյն Երուսաղէմի, որով հոռոմք վարին» (Պատասխանի [Թղթոյն տեառն Աբրահամայ Հայոց կաթուղիկոսի ի Կիւրիոնէ Վրաց կաթուղիկոսէ], էջ 179), «արդ մի հեղգասցուք զսէրն հոգևոր, որ կայր ի մէջ երկուց ազգացս, նորոգել զայն, որ ի միջէ ազգերէ առեալ էր զմարգարէութիւն... որպէս ուսուցին... Նախ երանելին սուրբն Գրիգոր և ապա Մաշտոց և գրոց ծանօթութիւն ի պնդութիւն հաւատոյ, և այժմ ապաւինեսցուք նոքիմբ կալ մեզ» (Թուղթ երրորդ տեառն Աբրահամու Հայոց կաթուղիկոսի առ Կիւրիոն Վրաց կաթուղիկոս, էջ 180 [հմմ. Գնիք հաւատոյ, էջ 139]), և այլն

Ն. Մառը (Крещение армян, грузин, абхазов и аланов св. Григорием, 153—154 - *Մկրտութիւն Հայոց, Վրաց, Աբխազաց և Ալանաց ի սրբոյն Գրիգորէ, էջ 91—92*) *առանձնապէս կանգ է առնում վրաց դրականութեան մեջ պահպանված նյութերի վրա «Գրիգորի մասին», որոնք, նրա ասելով, «բաւական առատ են». «Կան վարքագրութեան զանազան վերսիաներ, հետաքրքիր օրհներգներ»:*

*«Այս ամենը ինձ մի միտք էր ներշնչում, — ասում է ապա նույն գիտնականը* (ibid.), *— թէ Գրիգորի վրացական պաշտամունքի մէջ մենք ունենք հետքը առաջին հայ-վրացական այն եկեղեցու, որ հաստատուած էր անեղծերական եկեղեցու ընդամ աւելի հին-արիացիների ձեռքի: Իմ մէջ տարակոյս է յարուցանում միայն այն՝ որ յիշեալ յիշատակարանների ոճը այնքան էլ հին չէ: Սակայն սկսած այն ժամանակից, երբ սկսեց պարզուել վրաց եկեղեցու սերտ յարաբերութիւնը հայկականի հետ յետին ժամանակում եւ, յատկապէս հայ քաղկեդոնական եկեղեցու հետ, վրացիների առ Ս. Գրիգոր պաշտամունքը ստանում է այնպիսի բացատրութիւն, որ շատ լաւ պատշաճում է յիշուած յիշատակարանների լեզուի յատկութիւններին: Աւելի յետնագոյն, նմանօրինակ յիշատակարանների փոխառած մասերը, քանի որ յունարէնից չեն թարգմանուած, կարող են առաջ եկած լինել հայ աղբիւրից, բայց հայ-քաղկեդոնական աղբիւրից, այսինքն. այդ յիշատակարանները, ուրեմն, մօտաւորապէս Ը.-Թ. դարերին են պատկանում եւ, յամենայն դէպս, ոչ առաջ քան Է. դարը»:*

*Այս հարցի վերաբերյալ, հիշատակված աղբյուրներից և Ն. Մառի դիտողություններից զատ, տես նաև. И. Джавахов,* История церковного разрыва между Грузией и Арменией, стр. 519—527. Ն. Ակինեան, *Կիւրիոն կաթողիկոս Վրաց, էջ 83—84.* Կ. Կեկելիձե, *Վրաց պարձի գլխավոր պատմական-ժամանակագրական խնդիրները, վրացերեն, էջ 12—13. K. Kekelidze,* Die Bekehrung Georgiens zum Christentum, S. S. 17—20 *(գլուխ IV):*

*21. Այսինքն Աբրահամ Աղբաթանեցին (607—615), որը հայտնի է իր գրագրությամբ Կյուրիոն Վրաց կաթողիկոսի հետ (Գիրք թղթոց, 164—165, 174—177, 180—185 (երեք թղթեր), նաև այսպես կոչված «շրջագայական թղթով»,* (ibid., *189—197). սրա մասին առհասարակ տես* Ն. Ակինյանի *«Կիւրիոն կաթողիկոս Վրաց», 149—157:*

*22. Ըստ* Ն. Ակինյանի (ibid., *197—199) ապրած է 570—604 թ. թ. հայտնի է իր գրագրությամբ Վրթանես Քերթողի, Աբրահամ և Կյուրիոն կաթողիկոսների հետ (Գիրք թղթոց, 110* pass.), *նաև իբրև հեղինակ դրվածքին «Պատճառք Դ. ժողովոյն երկաբնակացն Մովսէսի Վրաց ուղղափառ եպիսկոպոսի» (Գիրք թղթոց, 119—127). սրա մասին առհասարակ տես.* Ն. Ակինյան, op. cit. **197-223**:

23. Այսինքն Ծուրտավում, որի մասին մանրամասն տես այս պրակի առաջին գլխի 6-րդ ծանոթությունը։

24. Մանրամասնությունները «Գիրք թղթոց»-ի, նաև Ուխտանեսի «Պատմութիւն բաժանման Վրաց ի Հայոց»-ի մեջ, հատկապես Է. գլխում (գնայն Մովսէսի եպիսկոպոսին Ցուրտաւայ առ Կիւրիոն), էջ 19—20։

25. Սկսած խոսքերից՝ «...Յետ Պետրոս Թագաւորի ստիպեց հայերին պաշտել անաստված Նեստորի կրոնը» մինչև այստեղ, ամբողջ հատվածը, Ն. Ակինյանը բերում է «բառացիաբար»՝ հայերենի վերածելով գերմաներեն թարգմանությունը, որի մասին ասում է. «[Վրաց Արսէն կաթողիկոսի (Ժ. դար) գրութեան] կարևոր մասերը աչացս առջև ունիմ գերմաներէն թարգմանութեամբ Հ. Գուսէնի, որ հաճեցաւ զայն ձեռագիր տրամադրութեանս տակ դնել» (op. cit., 289—290)։

26. Այսինքն Կոմիտաս Աղցեցին (616—628), որը առանձնապես հայտնի չէ իբրև հեղինակ կամ, ավելի ճիշտ ասած, «ստացող» կամ խմբագիր «Կնիք հաւատոյ» կոչված ժողովածուի և այլ գրվածքների (դրա մասին տես ստորև), նմանապես իբրև Հռիփսիմեի տաճարի և վկայարանի, որի արևելյան abside-ի կոնքում փորագրած ունի հետևյալ ուղղագրով արձանագրությունը 4 տողից բաղկացած, որը վերագրվում է 618 թվին. «Ես, Կոմիտաս եպիսկոպոս սրբոյ Հռիփսիմէի, կոչեցայ յաթոռ սրբոյն Գրիգորի, շինեցի զտաճարս սրբոց վկայիցս Քրիստոսի» (տես Գարեգին Վ. Յովսէփեան, Կոմիտաս կաթուղիկոսի մի նոր արձանագրութիւն, — «Արարատ» 1898, նոյեմբեր, էջ 441—442. Նույնը. Գրչութեան արուեստը հին Հայոց մէջ, մասն Գ. Քարտէզ հայ հնագրութեան. Վաղարշապատ 1913, էջ 6. *И. Орбели,* Шесть армянских надписей VII—X вв, I. Надписи католикоса Комитаса, — «Христ. Восток», т. III, 1914. стр. 72—76): Մանրամասնությունները նրա մասին տես Սեբեոսի պատմության մեջ (Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն [«Ղուկասեան Մատենադարան» է], Թիֆլիս 1913, էջ 124, 132, 136, 141, 156—157, 197, 272—273, 281, 288, 295—296, 304—306։ Narratio de rebus Armeniae-ի մեջ ևս (Migne, PG, t. CXXXII, col. 1249) կոչվում է Κομιτᾶς։

27. Այս հարցի շուրջը հատկապես խոսվում է IX դարու հեղինակ Մաշտոցի (ապագայում կաթողիկոսի) գրության մեջ՝ «Թուղթ երանելոյն Մաշտոցի, նախ քան զկաթուղիկոսութիւն, առ Տէր Գէորգ Հայոց կաթուղիկոս՝ վասն Սիւնեաց խաչին, թէ է՞ր աղագաւ տուաւ (var. տուեալ եղև)» (տես [Ց. Գիլխանդանեան,] Մայր Աթոռի Գիրք թղթոց ձեռագիրների մէջ ամբողջութեամբ անտիպ մնացած թղթեր, — «Արարատ» 1902 թ., հավելված հուլիս-օգոստոսի, էջ 748—753, հմմ. Լ. Մելիքսեթ-Բեկ, «Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց» etc., էջ 77)։

28. Հովհան Մայրագոմեցու մասին հատկապես տես՝ Կարապետ եպ., Յովհան Մանդակունի և Յովհան Մայրագոմեցի, — «Շողակաթ», Վաղ. 1913, էջ 84—136. Նույնը, Կնիք հաւատոյ, էջ XXVI—XXXII, LXXXIX—CVII, 52—55, 142—146, 253—256, 281, 288, 327—330, 363—364։ Գարեգին եպ., Պատմութիւն Յովհաննու Մայրագոմեցւոյ, — «Արարատ» 1917 թ., էջ 735—745։

29. Միանգամայն համապատասխանում է Սեբեոսի (op. cit., 273) հետևյալ խոսքերին. «Եւ ի սորա (Կոմիտասի) ժամանակս փայլէր վարդապետութեամբ Յովհան Մայրագոմեցի, որում զկաթողիկոսութիւնն հաւատացեալ էր Կոմիտաս»։

*30. Հմմ. 10-րդ ծանոթությունը։*

*31. Այսինքն Պետրոս Անտիոքի պատրիարքի (471, 475—478, 485—488), որը, ըստ «Գիրք Թղթոց»-ի ([Ջրուցատրութիւն ընդ մէջ հայրապետին Հայոց Կոմիտասայ և պատրիարքին Կոստանդնուպոլսոյ], էջ 491), իրոք, «Գայլ» է կոչվել. «զՊետրոս Անտիոքացին՝ Գայլ կոչելով». հմմ. մանրամասնությունները՝ Л. Меликсет-Беков,* Грузинский извод сказания о посте «араджавор», стр. 100—102։

*32. Կոմիտասի գրական գործունեության մասին հատկապես խոսում են* Ասողիկն *ու* Վարդան *պատմիչը, որը գրեթե բառացի կրկնում է առաջինի խոսքերը, նաև* Narratio de rebus Armeniae *գրվածքը, ըստ որի նա «բանս բազումս արար»։*

*Ըստ* Ասողիկի *(Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան պատմութիւն տիեզերական, Բ. տպ., Սպբ. 1885, էջ 87).*

*«Սա (Կոմիտաս) գրեաց երիս գիրս, և զանուն իւր ոչ վերագրեաց ի նոսա, վասն չընդունելոյ ժողովրդեանն. անուն միոյն՝* Խրատ վարուց, *և անուն միւսոյն՝* Հաւատարմատ, *և անուն միւսոյն՝* Նոյեմակ»։

*Ըստ* Վարդանի *(Հաւաքումն պատմութեան Վարդանայ Վարդապետի լուսաբանեալ, Վենետիկ 1862, էջ 62).*

*«Սա (Կոմիտաս) գրեաց երիս գիրս, զանուն իւր չդնելով ի նոսա. զմինն կոչեաց* Խրատավարք, *զմիւսն* Հաւատարմատ, *և զմիւսն* Նոյեմակ»։

*Վրացի հեղինակի ցուցմունքն համապատասխանում է* Narratio de rebus Armaniae-*ի տված տեղեկությանը* (Migne, PG, CXXXII, 1249—1251)՝ «Οὗτος ὁ Κομιτὰς μᾶλλον ὑπὲρ πάντας διήγειρε τὴν φιλονικείαν, εἰς τὸ ἀναθεματίσαι τὴν σύνοδον Χαλκηδόνος· ὃς καὶ λόγους πολλοὺς πεποίηκε τῷ ἰδίῳ ὀνόματι τοῦ ἁγίου Ἰσαὰκ ἐνὶ βιβλίῳ τὸ ὄνομα ἐστὶν Ἀμαρτανὰκ κατα τὴν Ἀρμενίων διάλεκτον» *(հմմ. մասամբ Կնիք հաւատոյ, էջ* XXIV*)։ Ըստ* Կարապետ *յեպ-ի (Կնիք հաւատոյ, էջ* XXVI*), այստեղ հիշված* Ἀμαρτανὰκ*-ը (Ամարտանակ)՝ «Հաւատոյ նամակ»-ը պիտի լինի։ «Նորա ապացոյցը, — ասում է այս նույն հեղինակը* (ibid.), *— համարում եմ նույն գրուածքի այն օտարոտի յիշատակութիւնը, թէ Կոմիտաս բաներ է հրատարակել ս. Սահակի անունով, որի համար դժուար կլինի ուրիշ բացատրութիւն գտնել, բայց եթէ այն, որ Թղթոց գիրքը սկսուում է ս. Սահակի և Պրոկղ ու Ակակ եպիսկոպոսների մէջ տեղի ունեցած թղթակցութեամբ»։ Հմմ.* Լ. Մելիքսեթ-Բեկ, *«Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց»* etc., *էջ 78։*

*33. Կոմիտասի անունն կրող ժողովածուներից, ճառերից ու թղթերից առայժմ հայտնաբերված են հետևյալները. 1) «Կնիք հաւատոյ ընդհանուր սուրբ եկեղեցւոյ յուղղափառ եւ ս. հոգեկիր հարցն մերոց դաւանութեանց յաւուրս Կոմիտաս կաթուղիկոսի համահաւաքեալ» (հրատ.* Կարապետ յեպ. [Տեր-Մկրտչյանն]*ի, Էջմիածին 1914, էջ* I—CXXVIII, *1—436). 2) «Տեառն Կոմիտասու Հայոց կաթուղիկոսի՝ Վասն հաւատոյ» (Գիրք թղթոց, էջ 212—219). գ) «[Ջրուցատրութիւն ընդ մէջ հայրապետին Հայոց Կոմիտասայ և պատրիարքին Կոստանդնուպոլսոյ]» (Թերի,* ibid., 484—497)*. 3) «Թուղթ Մոդեստոս երիցու առ Տէր Կոմիտաս և պատասխանի ի Կոմիտասայ կաթուղիկոսէ առ Մոդեստոս» (Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն, էջ 132—140)։ Բացի դրանից, ի նկատի առնելով այն հանգամանքը, որ Կոմիտասի «Վասն հաւատոյ» գրվածքին, որին «Գիրք Թղթոց»-ի մեջ հետևում է «Յովհաննու իմաստասիրի Հայոց կաթուղիկոսի՝ Սակս ժողովոց որ եղեն ի Հայքս»-ը, անմիջապես կցված է մի ուշագրավ հիշատակա-*

գրությամբ, վոր վրացերենի յե փոխադրված 1081 թվին Կ. Պոլսում (վրացերեն տեկստը տես մեր հրատարակության մեջ. Vita s. Gregorii Parthianensis, edidit *Leo Meliksel-Bek*, Tiflis 1920, p. p. 32—35): Ըստ Կ. Կեկելիձեյի (Վրաց գրականության պատմություն, I, 535—536), այն գոյություն և ունեցել և առանձին IX—X դ. դ. թարգմանությամբ. իսկ մեր կարծիքով՝ վոչ ուշ քան IX դ.:

38. Ի նկատի յե առնված «Ս. Սահակի տեսիլքը», վորը վորոշ ժամանակից մտած է Ղազար Փարպեցվու պատմության մեջ (Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց և Թուղթ առ Վահան Մամիկոնեան. աշխատ. Գ. Տէր-Մկրտչեանի և Ստ. Մալխասեանի [«Պատմագիրք Հայոց», հ. I, Դ. IV], Տփղիս 1904, եջ 28—37), բայց գոյություն ունի և առանձին (Սոփերք Հայկականք, II, Վեն. 1853, եջ 45—67): Ըստ յերևույթին, թեյթե փոխադրված և թարգմանված է յեղել վրացերեն IX դարում կամ գուցե ավելի առաջ (վրացերեն տեկստը տես մեր հրատարակությամբ և ուսումնասիրությամբ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Սահակ Պարթևի «մարգարեության» վրացական վերսիան, վրացերեն,—«Bulletin de l'Université de Tiflis» № 2, 1921—1922, եջ 200—221, տեկստը՝ 207—217. հմմ. նույնը ռուսերեն [մինչև ուսումնասիրությունը]՝ *Л. Меликсет-Беков*, О грузинской версии апокрифического Видения Саака Парфянина о судьбе Армении, — «Известия Кавказского Историко-Археологического Института», т. II, Лнгр. 1917—1925, стр. 164—176):

Ի դեպ, ավելորդ չի լինի վրացի հեղինակի խոսքերը համեմատել «Տեսիլքի» համապատասխան տողերի հետ (հայերենը՝ Ղազար Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց, եջ 29—30, 34 . վրացերենը՝ «Bulletin de l'Université de Tiflis», № 2, եջ 208, 213). «Եւ ի վերայ սկտեղն կայր նափորտ մի քահանայական ծալեալ և եդեալ, և առ նմին գունդ մի ոսկի բոլոր. և մագաղաթ հատուածաձև չորեքկուսի, գրեալ ի սկզբանն կարգս ինչ ոսկեաւ՝ ոսկէտառսն դրով սքանչելապէս, որը թէ ձեռամբ գրչի ճարտարի. և ի միջոյ կողման մագաղաթին, հնոյ յոսկէգիր կարգացն, երևէին այլ կարգք ինչ եղծեալք ջնջադիրք, որոց ոչինչ բնաւ երևէր տեսիլ դրոյն և կամ կերպարանի... Եւ զի երևեցաւ ի մ ջոյ կողմն մագաղաթին, հնոյ յոսկէգիր կարգացն, կարգք ինչ խանգարեալք և ջնջադիրք գրեանն, զի նուազեցին քահանայապետք սմանք յաթոռ սրբոյն Գրիգորի, որք... ըստ փառաց աշխարհիս ձգտին ի պատիւն յանդգնութեամբ... Եւ այլ կարգն և միւս ևս կէս կարգին, որ երևեցաւ քեզ գրեալ սքանչելապէս ոսկի դրով ի ստորին եզեր մագաղաթին՝ ծածկեր հաւաստեաւ, զի մերձ յերևումն աղծոյն անապատ դարձեալ յառնէ թագաւոր յազգէն Արշակունեաց, և նորոգի աթոռ հայրապետութեան ի շառաւեղէ սրբոյն Գրիգորի»:

39. Վրացի հեղինակի խոսքերը Ներսես Մեծի մասին այս գլխում միանգամայն համապատասխանում են այն հատվածին, վոր հայտնի յե «Վարք սուրբ ժողովոցն, որ եղեն ի Հայս ի սրբոյն Գրիգորէ սկսեալ» վերնագրով անանուն գրվածքի մեջ, ուր կարդում ենք հետևյալը (Կարապետ Վ., Երուսաղէմի Յովհաննէս եպիսկոպոսի Թուղթը առ Աբաս Աղուանից կաթողիկոս, եջ III). «Վեցերորդ [ազգային] ժողով արար Ներսէս Մեծն ի Դւինի և բաժանեաց զհայս ի հոռոմոց և Երուսաղէմ դնալոյ, յորում խոստովանեն մեծ արար Աստուծ, Թագաւորն Պարսից, Ներսէսի, և ի ձեռն այսր ժողովոյ Վիրք և Չորրորդ Հայք որոշեցան ի Հայոց ձեռնադրութենէ. իսկ Աղուանք և Սիւնիք առ ժամանակ մի և դարձեալ միացան»:

40. Մորուքը վոսկեվոլ ներկելու «ախտով», վորը վրաց աղբյուրները հատկապես վերագրում են հակաքաղկեդոնիկներին, ըստ նույն աղբյուրների, «վա-

բակված» է յիշել ոչ միայն այս Ներսեսը, այլ և վերջինիս փոխակալ (լուսարար) վաճի Սարգիսն ու Պետրոս Թափիչ Անտիոքացին (մանրամասնությունները տես այս սրբի հետագա գլուխներում, իսկ առ այժմ՝ *Л. Меликсет-Беков*, Грузинский извод сказания о посте «араджавор», стр. 93, 102): Այս դեպ-
-քում ուշադրության [illegible] ի նկատի ունի այն ավանդությունը, որը մեզ հասցրել է հայ գրականությունը հանձինս Հովհան Դրասխանակերտցու և Ասողիկի ոչ թե Ներսեսի, այլ Հովհան Օձնեցու նկատմամբ։ Հովհան Դրասխանակերտցին (*Հովհաննու Դրասխանակերտեցւոյ Պատմութիւն Հայոց, էջ 101*) գրում է. «[Յովհաննէս] յայծեաց ցփսիս զմարմնովն զգեստաւորէր. իսկ զարտաքոյսն ի պատուական երանգէ նիւթից զգեստաւորեալ պճնազարդէր։ Եւ ոսկի մանր խարտեալ աղացեալ և խառնեալ անուշահոտ յոյն ընդլաստեալ՝ փչէր ընդ ծաղկեալ ալեօք մօրուսն, որ իջանէր մինչև ցգրպանս զգեստու նորա»։ Մոտավորապես նույնը կրկնում է և Ասողիկը (*Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական, էջ 103*) հետևյալ խոսքերով. «Եւ ինքն Յովհաննէս էր յոյժ գեղեցիկ տեսլեամբ, (և) ամենայն առաքինութեամբ. ունէր զգեստս այծեայս, և ի վերայ պայծառերանգ նիւթով զգեստաւորեալ պճնազարդէր. և ոսկի մանր խարտեալ աղացեալ՝ անոյշ իւղովք խառնեալ և փչեալ ծաղկեալ ալեօք մօրուացն»։ Ըստ յերևույթին, մորուքը կամ մազերը փոշիացնելու մեջ պիտի փնտրել արմատները մահմեդականների «հինա»-ով ներկելու սովորույթի։

41. Վրացի հեղինակն ի նկատի ունի Մանազկերտի 726 թ. ժողովը, որի մասին Ասողիկը (*Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական, էջ 102—103*), ի միջի այլոց, հաղորդում է հետևյալը. «Սա (Յովհաննէս) արար ժողով ի Մանազկերտ քաղաք..., սրբելով յաշխարհէս զքաղկեդոնականացն երկաբնակ խոստովանութիւն և զաւանդութիւնն՝ որ խմորով և ջրով պատարագեն զաւուրբ խորհուրդն»։ Նույն ժողովի կանոնները տես՝ *Սամուէլի Անեցւոյ Հաւաքմունք ի գրոց պատմագրաց, հրատ.* Արշակ Տէր-Միքելեանի, *Վաղարշապատ 1893, էջ 287—288, ծանոթ. 36,* Առաքել Գլոձեանց, *Կանոնգիրք Հայոց, էջ 149—164։ Վավերական արձանագրությունը ասորերեն՝* Chronique de Michel le Syrien, patriarche Jakobite d'Antioche (1166—1199). Editée pour la première fois et traduite en français par *Y.-B. Chabot*, t. II, 3, Paris 1904, p. p. 457—461 *(ասորերեն բնագիր), 492—500 (ֆրանսերեն թարգմ.). հայերեն թարգմ.* Երուանդ վ. Տէր-Մինասեանց, *Հայոց եկեղեցու յարաբերութիւնները Ասորւոց եկեղեցիների հետ, Էջմիածին 1908, էջ 179—183, նույնը՝* Gregorii Barhebraei Chronicon Ecclesiasticum, *ed. Abbeloos* et *Lamy*, I, Lovanii 1872, p. 299—303. *հայերեն թարգմ.* Ե. Տեր-Մինասյանց, op. cit., *էջ 183—185, ծանոթ. 1։ Մանազկերտի ժողովի մասին առհասարակ տես՝* Ե. Տեր-Մինասյանց, op. cit., 118—119, 173—176 etc. Նույնի, *Մանազկերտի 726-ի ժողովի Ասորի եպիսկոպոսները և Խոսրովիկ Թարգմանչի յիշած երկու ասորական վանքերը,—«Արարատ» 1907 թ., հունվար, էջ 75—80. բիբլիոգրաֆիան տես.* Ե. Տէր-Մինասեանց, op. cit., *էջ 173—174, ծանոթ. 2. Л. Меликсет-Беков,* Об источниках армянского права, стр. 155 и прим. 4, стр. 158:

*42. Տես 17-երորդ ծանոթ.*

*43. Սկսած նախադասությունից՝ «Յետ [դեսպաններ] ուղարկեցին [հայերն] Ներշապուհ Տարօնի յեպիսկոպոսի մոտ» մինչ այստեղ համառոտություն է* Nar-

atio de rebus Armeniae-ի (Migne, PG, CXXXII, 1244) հետևյալ հատվածի Πάλιν ἡλαττώθησαν οἱ τῆς αἱρέσεως ταύτης ἐπίσκοποι, καὶ ἐπειδὴ οὐκ ἠδύνατο χειροτονηθῆναι διὰ τὴν αἵρεσιν αὐτῶν, διαλογισάμενοι προσετέθησαν τὴν τῶν 'Αρμενίων ἐπισκόπων. Διὸ τοῦτο προσφιλεῖς ἐγένοντο τῶν ἐν Σαπῶ ἐπισκόπων [l. τῷ Νερσαπῷ ἐπισκόπῳ] Ταρῶν, ὅστις τῷ ιθ' ἔτει τοῦ Καβατᾶ, ἐκράτησε τῆς ἐπισκοπῆς, καὶ διετέλεσεν ἔτη πολλά, μετὰ τοῦ ἑταίρου αὐτοῦ 'Απτυσῶ τοῦ Σύρου, ἀπὸ τοῦ Σαρεπᾶ τῆς μονῆς τῶν πλησίων Σασῶν λέγοντες, ὅτι πάντες ἐπλανήθησαν ὀπίσω τοῦ Νεστορίου, καὶ τῶν ὁμοίων αὐτῷ ἐν Χαλκηδόνι, καὶ διότι οὐκ ἔχομεν πόθεν χειροτονεῖσθαι, προσωρμήσαμεν τῇ ὑμετέρᾳ, εὐσεβεῖ χειροτονίᾳ ποιῆσαι ἡμῖν ἐπισκόπους. Καθὼς ἄνωθεν εἴπομεν, εὗρον αὐτοὺς ἀποβαλόντας τὴν παράδοσιν τοῦ ἁγίου Γρηγορίου, καὶ ἐκ τοῦ θρόνου Καισαρείας ἀπωσθέντας, λαβόντας πρόσταγμα παρὰ τοῦ βασιλέως Περσῶν, ποιεῖν ἑαυτοὺς ἐκεῖνος τὴν χειροτονίαν. Ἔλεγον δέ, ὅτι 'Από τοῦ ἁγίου Γρηγορίου ἐλάβομεν τοῦ χειροτονεῖν, καὶ τοῦ αὐτοῦ ἐσμὲν ἐν Χριστῷ μαθηταί, ψεύδοντες»:

*44. Թէև վրացերէն բնագիրը տալիս է «աշխարհակիցի» ընթերցանութիւնը, որը կարող է «աշխար[հ]ակ[ա]լ» նշանակել, բայց անկասկած է, որ այստեղ «Աշտարակ[ե]ցի» պիտի լինէր, այսինքն «աշտարակեցի»։ Այս առթիվ* Թ. Ժորդանիա *(Քրոնիկոններ,* I, *էջ 324, ծան. 71) իր տարակուսանքը լուծում է այսպես. «Այսինքն աշխարակլ (տպված՝ ևշխարակլ) գյուղից, ըստ Ասողիկի՝ Աշտարակեցի»։*

*45. Անտարակույս, Պետրոս Սյունյաց յեպիսկոպոսի մասին է խոսքը, որը բավականին հայտնի յե հայ մատենագրության մեջ (տես* Գալուստ Տէր-Մկրտչեան *Պետրոս եպիսկոպոս Սիւնեաց,—«Արարատ» 1902, էջ 80—98, 183—203, 368—400.* Ներսէս Վ. Ակինեան, *Պետրոս եպիսկոպոս Սիւնեաց,—«Հանդէս ամսօրեայ» 1903, էջ 245—252, 1904, էջ 18—22, 77—83, 105—113, հմմ.* Լ. Մելիքսեթ-Բեկ, *«Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց»* etc., *էջ 75) և որին չպետք է շփոթել հայ-վրացական «բաժանման» շրջանի Պետրոս Գետլի հետ (հմմ. Ն. Ակինեան, Կիւրիոն կաթողիկոս Վրաց, 267—272. Л. Меликсет-Беков* Грузинский извод сказания о посте «араджавор», стр. 100—102):

*46. Ինչպես առաջին, նույնպես և այս յերկրորդ Դվինի ժողովի ժամանակագրությունը խառնաշփոթ դրության մեջ է. հմմ. 15 ծանոթ.։*

*47. Այս հատվածի ժամանակագրությունը* Թ. Ժորդանիան (op. cit., *էջ 324 ծանոթ. 72) մեկնաբանում է հետևյալ կերպով. «Հուստինիանոս թագավորի տասնուչորսերորդ (պետք է լինի 24-րդ), այն է 527+24=551 թվին, Պարսից Խոսրով թագավորի յերկրորդ (պիտի լինի «քսաներորդ»), այն է 531+20=551 թվին (Խոսրով* I+*578), այն տարին, յերբ վկայեց սուրբ Իզիդ-Բուզիդը, այն է 552 թվին»։ Մասնավորապես, ինչ վերաբերում է Ցեզիդբուզիդին, պետք է ասել, որ սա պատմական անձնավորություն է, ծագումով Ասորի, որը «վկայել» է Դվինում, և որի վկայաբանությունը պահպանվել է հայերեն (տես. Վարք և վկայաբանութիւնք սրբոց, հատոր Բ, Վենետիկ 1874, էջ 124—130), նաև վրացերեն թարգմանությամբ (А. Хаханов,* Материалы по грузинской агиологи, По рукописям X века [«Труды по востоковедению», в. XXXI], Москва 1910, стр. 51—57, *հմմ.* XXI—XXII). *հմմ. Н. Марр, Из* поездки па Афон, стр. 23—24. Նույնը, Агиографические материалы по грузинским рукописям Ивера, стр. 64: *Ցեզիդբուզիդի «վկայության» մասին տես. Յովհաննու կաթուղիկոսի Դրասխանակերտեցւոյ Պատմութիւն Հայոց, էջ 64։ Վկայաբանութիւն*

*հայերէն բնագրում ժամանակագրությունը ներկայացված է հետևյալ կերպով. «Եւ այսպէս քաջութեամբ վկայեաց սուրբն Յիզտիբուզիտ ի քսաներորդի երրորդի ամին Խոսրովու թագաւորին, որ օր երկու էր քաղոց ամսոյ, յաւուր կիւրակէի երրորդ ժամու», էջ 130։ Ըստ* Ն. Ակինյանի *(Եղիշէ վարդապետ և իւր Պատմութիւն Հայոց պատերազմին) [Ազգային Մատենադարան, ՃԼԴ], Վիեննա 1932 թ. էջ 553։*

*48. Ամբողջ հատվածը սկսած նախադասությունից՝ «Յետ հնգ վեր Ներշապուհ յիշխանութեան տեղեկացուցեալ» մինչ այստեղ հետաքրքիր է համեմատել* Առաքելի *(Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական, էջ 82—83) հետևյալ հաղորդագրության հետ. «Եւ ի սորա (Մեծին Խոսրովու) ևթներորդ ամին եկաց կաթողիկոս Հայոց Տէր Ներսէս ի գաւառէն Բագրեւանդայ ի գեղջէն Աշտարակաց՝ սա ըստ Սա ի չորրորդ ամի հայրապետութեան իւրոյ և ի տասներորդ ամի իշխանութեան Մեժէժայ արար ժողով ի քաղաքն Դուին Եւ էին գլխաւորք ժողովոյն Պետրոս եպիսկոպոս քերթող Սիւնեաց և Ներշապուհ ի Տարօնոյ. և կարգեցին զԹուականն Հայոց ի* ծդ-ն *Յուստինիանոսի կայսեր, որ զսուրբն Սոփիա շինեաց, և ի* իդ-ն *Խոսրովայ, որդւոյ Կաւատայ Պարսից արքային Յորում ամի սուրբն Յեզիտբուզիտ* (var. *Եզիտբուզիտ) կատարեցաւ ի Բրիտատս Եւ Հայք յայնմ ամի և յայնմ ժամանակի ի բաց կացին ի Յունաց հաղորդութենէ»։*

*49. Տես 10-երորդ ծանոթ.*

*50. Տես 12-երորդ ծանոթ.*

*51. Սկսած նախադասությունից՝ «Յետ հնգ վեր Ներշապուհ յիշխանութեան տեղեկացուցեալ» մինչ այստեղ գրեթե կրկնություն է, միմիայն չնչին տարբերությամբ,* **Narratio de rebus Armeniae**-*ի* (Migne, PG, CXXXII, 1244—1245) *համապատասխան հատվածի.* «Ἄτινα γνωρίσας Νερσαπῶ ἐπίσκοπος τῷ Ναρσεσῇ τῷ καθολικῷ τῷ ὄντι ἀπὸ Ἀσταραξ, καὶ τοῖς Ἀζάτοις ἐδήλωσεν. Ὥρισαν δὲ μεγάλην σύνοδον ἐν πόλει Τιβήν, τῷ κδ' ἔτει τοῦ αὐτοῦ καθολικοῦ Νορσέση, καὶ τῷ ιβ' ἔτει Ἰουστίνου Καίσαρος, καὶ τῷ κδ' τοῦ Χοσρόη τῶν Περσῶν βασιλέως, καὶ τῷ ἐνιαυτῷ ᾧ ἐμαρτύρησε Νεστιποστὶ, καὶ ἐν ἀρχῇ τοῦ ἀριθμοῦ τῶν Ἀρμενίων. ὅτε καὶ τὴν ἁγίαν σύνοδον τὴν ἐν Χαλκηδόνι ἀνεθεμάτισαν ὡς Νεστοριανήν, κατὰ τὸν λόγον Ἀπτισῶ, ὅτι αὐτῷ τῷ χρόνῳ τὰς Γραφὰς ἑρμήνευσαν, τὰς ἐνεχθείσας ἀπὸ τοῦ Ἀπτισῶ, τὰς προμνημονευθείσας, τὰς γραφείσας παρὰ Τιμοθέου καὶ Φιλικοῦ τῶν Σύρων, κατὰ τῆς συνόδου τῆς ἐν Χαλκηδόνι καὶ κατὰ τῶν ὁμολογούντων δύο φύσεις ἐπὶ Χριστοῦ τοῦ Θεοῦ ἡμῶν, καὶ ἐναντίαν σύνοδον ἐδογμάτισαν, λέγοντες, μίαν φύσιν τοῦ Θεοῦ Λόγου καὶ τῆς σαρκός. καὶ τῇ ἀθανάτῳ φύσει αὐτὸν ἐσταυρῶσθαι καὶ τεθνᾶναι. ὅθεν καὶ τό, Ὁ σ τ α υ ρ ω θ ε ὶ ς, προσέθηκαν εἰς τό, Ἅ γ ι ο ς ὁ Θ ε ό ς, κατὰ Πέτρον Κναφέα, τὸν παθόντα τὰ Σαβελλίου. Ὥρισαν μετὰ τοῦ ἀναθηματισμοῦ ἀποστῆναι τῆς κοινωνίας Ἱερουσαλήμ, καὶ ἐκ τῶν νέων Ῥωμαίων, καὶ ἐκ τῶν ὁμολογούντων μετὰ τὴν ἐνανθρώπησιν τοῦ Κυρίου ἡμῶν δύο φύσεις. Ἐχειροτόνησαν δὲ τὸν Ἀπτισῶ ἐπίσκοπον καὶ ἑτέρους β', ἀποστείλαντες αὐτοὺς εἰς Μεσοποταμίαν Συρίας, ἔχειν συμφωνίαν μετὰ ἀλλήλων εἰς αἰῶνα, ἰδιοχείρως γράψαντες καὶ ἀσφαλίσαντες»:

*52. Վրացի հեղինակի կողմից գործածված «Մատոյ» ձեռ՝ փոխանակ «Մաշտոց»-ի՝ ինքնին ապացույց է նրա հունական ծագման, բայց թե հատկապես վոր աղբյուրից, դժվար է դուշակել։ Համենայն դեպս, խնդիրը առայժմ չի կարող լուծվել վոչ* Narratio de rebus Armeniae-*ին կցված* Catholici Armeniae-*ի ցանկի օգտին, ուր նա* (*Migne*, PG, CXXXII, col. **1256**) *կոչվում է* Μαστήνζης, *վոչ էլ* **Pothii Myrobiblon sive Bibliotheca** *81-ի օգտին* (Նույնը, CIII. col. 281),

ուր նա հիշված է իբրև Μαστώβιος: Միաժամանակ, տարօրինակ է թվում, որ Ն. Ադոնցն իր հատուկ ուսումնասիրության մեջ «Մաշթոց և նրա աշակերտները ըստ օտար աղբյուրների» [«Ազգային Մատենադարան» ԾԺԱ, Վիեննա 1925]՝ հաշվի առնելով վերոհիշյալ Catholici Armeniae-ի և Փոտի վկայությունն Μαστήντζη—Μαστούβιος-ի մասին՝ միանգամայն անտես է առնում վրաց աղբյուրների և մասնավորապես Արսենի հիշած «Մաստոց»-ին: Հիշատակելի է նաև, որ Թ. Ժորդանիայի հրատարակության մեջ (op. cit., 325) «Մաստոխ (Մախտոց?)»-ը թյուրիմացության արդյունք է: Հմմ. սույն պրակի վեցերորդ գլխի 3-րդ ծանոթ.:

53. Բոլոր այսպես կոչված «Վարդանանց» պատմությունից հայտնի գործիչներին է վերաբերում, որոնց թվում, ի միջի այլոց, հիշվում են «սուրբն Յովսէփ ի Վայոց ձորոյ՝ ի գեղջէ Հողոցմանց» և «Ղևոնդ երէց ի Վանանդայ՝ և գեղջէ Իջաւանից» (Եղիշէի Պատմութիւն Վարդանանց, 231. հմմ. Ղազարայ Փարպեցւոյ Պատմութիւն Հայոց, 101):

54. Ի նկատի չի առնված Մովսես Խորենացու անվամբ մեզ հասած «վողբը» (Մովսիսի Խորենացւոյ Պատմութիւն Հայոց, աշխատ. Մ. Աբեղեան և Ս. Յարութիւնեան [«Պատմագիրք Հայոց», հ. II, գ. I, Տփղիս 1913], եջ, 358—366), որը Ներսես Ակինյանը ջանում է վերագրել Ղևոնդ յերեց պատմագրին՝ վերջինիս պատմության վերջաբան համարելով այն (տես. Ն. Ակինեան, Մովսէս Խորենացւոյ ժամանակն և անձնաւորութիւնը, —«Անահիտ», նոր շրջան, 1929 թ., № 4, եջ 67—77 P. N. Akinian, Moses Khorenatzi. Die Abfassungszeit der «Geschichte Armeniens» und die Persönlichkeit des Ceschichtsschreibers in neuem Lichte betrachtet, «Wiener Zeitschrift für die Kunde des Morgenlandes, XXXVII, 1930, S. S. 204—217. Ներսէս Վ. Ակինեան, Մատենագրական հետազօտութիւններ, քննութիւն և բնագիր. հատոր Գ [«Ազգային Մատենադարան» ՃԻԷ], Վիեննա 1930, եջ 127—291, հատկապես 127—181):

55. Հմմ. Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն, եջ 37—39, նաև Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական, եջ 79—82 (հատկապես եջ 81. «Իսկ Վահան զեկեղեցիս աստուծոյ լուսազարդեալ նորոգէր, զպաշտօնեայս ուխտին մեծարելով, բարեշէն զաշխարհս առնելով»):

56. Ի նկատի չի առնված Ներսես Մեծի (353—363) անունով հայտնի կանոնները, որ քանիցս հրատարակվել է. տես. Արսէն Ղլտճեան, Սահմանք և կանոնք կարգի եկեղեցւոյ սրբոյն Ներսէսի Հայոց (կաթողիկոսի) Հայրապետի, —«Հանդէս ամսօրեայ» 1908 թ., 133—139, 161—166, 227—232, Նույնը, Կանոնգիրք Հայոց, 117—121. լատիներեն թարգմ. A. Maius, op. cit., 312—314 (բիբլիոգրաֆիան հմմ. Л. Меликсет-Беков, Об источниках армянского права, стр. 159):

57. Ի նկատի չի առնված Սահակ Պարթևի (387—439) անունով հայտնի կանոնները, որ քանիցս հրատարակվել է. տես. Սոփերք Հայկականք, II, Վենետիկ 1853, եջ 72—134. Աբէլ Մխիթարեան, Պատմութիւն ժողովոց Հայաստանեայց եկեղեցւոյ, Վաղարշապատ 1874, եջ 40—52. Ն. Մելիք-Թանգեան, op. cit. I, 532—588. Ա. Ղլտճեան, Կանոնգիրք Հայոց, 15—56, լատիներեն թարգմ. A. Maius, op. cit., 276—290, անգլիերեն՝ F. C. Conybeare, The Armenian Canons St. Sahak catholicos of Armenia,—«The American Journal of Theology», v. II, № 4, 1898, եջ 832—848 (բիբլիոգրաֆիան հմմ. Л. Меликсет-Беков, ibid., 159):

58. «Միրո սեղան» = ἀγάπη-ի մասին, որոց խոսվում է Սահակին վերագրըված կանոններում ԻԹ (ԻԸ), Լ (ԻԹ) և ԽԱ (ԽԲ), տես՝ Ն. Մելիք-Թանգեան, I, 539, 545—546. Ա. Ղլտճեան, 26—27, 37։ Առ հասարակ այս հարցի շուրջը տես հետևյալ գրականությունը. *Н. Марр*, След ἀγάπη у армян, — «Христ. Восток», т. I, 1912, стр. 41—42. Գարեգին Վ. Յովսէփեան, *Ագապի հաստատութիւն հայոց եկեղեցւոյ մէջ*, — «Արարատ» 1912, № 10—11, էջ 997—1001. *Н. М[арр]* К вопросу об ἀγάπη в Армении, — «Христ. Восток», т. II, 1913, стр. 145—147։

59. Ամբողջ հատվածը սկսած Նախադասությունից՝ «Այս ժամանակից պարսից մարզպանները գրավեցին Հայքն» մինչ այստեղ՝ Ի. Ջավախիշվիլու (Հին վրացական պատմական գրականությունը, 71—72) ասելով՝ «սկլի չի հիշեցնում տվյալներին այն հայ պատմիչների, վորոնց յերկասիրությունները պահպանվել են»։ «Այնուամենայնիվ պարզ է, — շարունակում է նույն գիտնականը, — վոր այս տվյալները վրաց պատմիչը հայկական պատմական աղբյուրներից պիտի քաղեր», սակայն այնպիսի աղբյուրներից, վորոնք «անպայման Քաղկեդոնի ժողովին հետևող «ուղղափառ» հայ հեղինակների ձեռքով կլինեին գրած, և հենց այս է պատճառը, վոր նրանց մեջ Քաղկեդոնի ժողովին հակառակ միաբնակ-հայ հոգևորականությունը այսպիսի ստորացուցիչ տեղեկություններով է զարդարված»։ Այս հարցի յուրատեսակ, վոչ գիտական լուծումն տես՝ Թ. Ժորդանիա, op. ct., էջ 326 ծան. 83։

60. Խոսքը բդեշխ Վարդան Մամիկոնյանի մասին է, վորի մականունը «Զոխ», սակայն, անհասկանալի յե. գուցե հայերեն «քաջ» բառի աղավաղումն լինի։ IX-դարու Վրաց հեղինակ Արսենը այս «չոքխ» բառը թարգմանում է «կամակոր» (վրացերեն՝ բառայի «ուրչ»)։

61. Ամբողջ հատվածը սկսած Նախադասությունից՝ «Այս [պատճառ]ով այս մեծ անպատվությունը չհանդուրժեց Վարդան Մամիկոնյանը» մինչ այստեղ գրեթե համապատասխանում է Narrato de rebus Armeniae-ի (Migne, PG, CXXXII 1245) հետևյալ հատվածին. «Μετὰ δὲ χρόνον πολὺν, Βαρτᾶς τις ἄρχων, ἀποκτείνας τὸν Σουριένην τὸν Πέρσην τὸν τύραννον, ἀποστατήσας ἐκ τῶν 'Αρμενίων, ἀδεῶς πρὸς τὴν [λείπ. ἦλθε] Κωνσταντινούπολιν, τῷ τεσσαρακοστῷ ἔτει τοῦ Χοσρόη, καὶ τὸ λ' ἔτει τοῦ 'Ιουστινιανοῦ, τοῦ καὶ τὴν 'Αγίαν Σοφίαν δειμαμένου. ἐκ τῆς κοινωνίας δὲ αὐτοῦ ἐκχωρίσας σὺν τοῖς μετ' αὐτοῦ. "Ελεγε γὰρ ὅτι οὐκ ἔχω ἐντολὴν ἐκ τῶν διδασκάλων ἡμῶν μεθ' ὑμῶν κοινωνεῖν. Διὸ προσετάχθη ὁ αὐτὸς Βαρτᾶς παρὰ τοῦ Καίσαρος συγκαλέσεσθαι ἐπισκόπους καὶ διδασκάλους τοὺς τῶν 'Αρμενίον. 'Εγένετο δὲ σύνοδος μεγάλη- ἐν τῇ Κωνσταντινουπόλει, κατά τινων αἱρετικῶν, ἣν έ σύνοδον καλοῦμεν. καὶ ὁμοφανήσαντες αὐτοῖς, τῷ ὀνόματι αὐτῶν ἐκάλεσαν ἁγίας πύλας τῆς 'Αγίας Σοφίας, ἥτις μέχρι σήμερον καλεῖται τῶν 'Α ρ μ ε ν ί ω ν π ύ λ η»: Նույնը՝ տեղ տեղ ավելի ընդարձակ, իսկ տեղ տեղ համառոտ, կարդացվում է և Ասողիկի մոտ (Ստեփանոսի Տարօնեցւոյ Պատմութիւն տիեզերական, էջ 84—85). «Եւ ապա Խոսրով արքայ Պարսից զՍուրէն ոմն ազգական իւր, որում անուն էր Ճիհովր-Վշնասպ՝ հանէ ի հազարապետութիւն Հայոց։ Որ եկեալ կալաւ զերկիրս մեր, յոյժ հարստահարելով զնախարարս Հայոց. զի շնայր ընդ կանայս ազատաց, ոչ անսելով զայրն տէր կենաց լինել։ Ընդ որ զայրացեալ Վարդանայ բդեշխի որդւոյ Վասակայ, որ էր յազգէն Մամիկոնէից՝ սպասեալ դիպող ժամանակի սուսերահար առնէր զՍուրէն մարզպան [և] երկիր կործանէր, յամի քառասներորդի առաջներորդի թագաւորութեան Խոսրովու, որ է ամ եօթներորդ թագաւորութեան Յուստինիա-

նոսի, յամսեանն արեգի քսաներկուսն ամսոյն, որ է փետրուարի, յաւուր երեք-շաբաթւոջ։ Եւ իշխանքն Հայոց համօրէն ապստամբեալ ի Պարսից՝ ձեռն եռուն ի Յունականն, նոքօք ընդդէմ կալով սատարիկ մարտիւ։ Իսկ Վարդանայ առեալ զընտանիս իւր և զայլ պայազատսն՝ փախստեայ անկանի յաշխարհն Յունաց ի թագաւորեալ քաղաքն Կոստանդնուպոլիս։ Եւ երթեալ յանդիման լինէր թագաւորին Յուստինիանոսի, որ զաւրքն Սոփիա շինեաց. և հայորդի ընդ նմա օրինաց, և յիւր անուն անուանէ զաւազ դուռնն սուրբ Սոփիայ, որ մինչև ցայսօր կոչի դուռն Հայոց»։ Հմմտ. «Հանդէս ամսօրեայ» 1932 թ., էջ 369—370։

62. 582—602 թ.թ.։

63. 590—628 թ.թ.։

64. Այստեղ, ըստ Կ. Կեկելիձեի (Վրաց գրականության պատմություն, I, 139) նկատողության, անաքրոնիզմ է այն պարզ պատճառով, որ խաչվերացի կամ խաչի հայտնության տոնը իսկապես սահմանեց Հերակլ կայսրը՝ «տերունական խաչը» Պարսկաստանից Կ. Պոլիս վերադարձնելուց հետո՝ 629 թվին։

65. Այսինքն Մովսես Եղիվարդեցուն (574—604)։ հմմ. մանրամասն Ն. Ակինեան, Կիւրիոն կաթողիկոս Վրաց, էջ 108—124։

66. Որ պարսկական և հունական Հայքի միջև Մորիկի և Խոսրովի օրոք սահմանը, իրոք, Ազատ գետով է անցել, դրան ապացույց կարելի է բերել Հովհաննես Դրասխանակերտցու (Հովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ Պատմութիւն Հայոց, էջ 72—73 հետևյալ վկայությունը. «...Ըստ հրամանի կայսերն Մօրկայ զՅոհան ոմն ի գաւառէ Կողայ ի Բագարան գեղջէ կացուցանեն կաթողիկոս Յունական կողմանն՝ բնակեցուցանելով զնա ի քաղաքագիւղն Աւան... իսկ մեծ հայրապետն Աբրահամ... ի Դուին քաղաքի բնակէր ի Պարսից բաժնի անդ. վասն զի գետն Ազատ զսահման բաժնիցն երկոցունց ընդ մէջ հատանէր»։ հմմ. Իվ. Ջավախիշվիլի, Հին վրացական պատմական գրականությունը, 68։

67. Այսինքն «տաք ջրախառն գինի»։ հմմ. Հր. Աճառյան, Հայերէն արմատական բառարան, II, 1203—1204։

68. Ամբողջ հատվածը սկսած նախադասությունից՝ «Սրանից հետո Մորիկ (Մավրիկ) կայսրն [Խոսրովի մոտ] ուղարկեց» մինչ այստեղ գրեթե կրկնություն է Narratio de rebus Armeniae-ի (*Migne*, PG, CXXXII, 1245, 1248—1249) հետևյալ կտորի. «'Εν αἷς ἡμέραις πολλάκις συστασίαι ἐγένοντο, διὰ τὴν ἀποστασίαν τῶν ἀρχόντων, ἐν πολλαῖς ἡμέραις, ἔν τε τῇ Ῥωμανίᾳ καὶ τῇ Περσίδι, συζητούντων τῇ πίστει ἐπὶ κ' ἔτη, ἐν ἡμέραις τοῦ Βιανίση τοῦ καθολικοῦ, καὶ Μωσῆ, ἕως ἑνὸς ἔτους Χοσρόη, ὃς ἐβασίλευσεν ἐν χειρὶ Μαυρικίου Καίσαρος, ἐν πολλῇ δυνάμει τῶν 'Ρωμαίων. 'Ο δὲ στρατηλάτης Μουσίλης, τοῦ Μαγκόνι τὸν ἐπικληθέντα Ταρωνίτην, ἀπέλειπεν ἐν Περσίδοι. Ἔτη λ' ἐβασίλευσε καὶ ή. ὃς ἔδωκε τὴν 'Αρμενίαν πᾶσαν Μαυρικίῳ Καίσαρι ἕως τοῦ Τιβῆ, ἀνθ' ὧν ὑπ' αὐτοῦ κατέστη βασιλεύς, καὶ δῶρα πολλὰ παρ' αὐτοῦ ἔλαβεν αὐτὸς καὶ τὰ στρατεύματα αὐτοῦ. Τῷ αὐτῷ ἔτει ἀπέστειλε τὸν Μαυσίλην πρὸς τὸν Μαυρίκιον, καὶ φθάσας ἐν Κωνσταντινουπόλει, ἐν τῇ ἡμέρᾳ τῆς μεγάλης ἑορτῆς τοῦ τιμίου Σταυροῦ, ἐκ τῆς κοινωνίας ἑαυτοὺς ἔξωσαν ὁ Μουσίλης, καὶ οἵ σὺν αὐτῷ στρατιῶται. 'Ερωτήσαντος δὲ τοῦ βασιλέως, καὶ τὴν αἰτίαν μαθόντος, αὐτὸς ἔλεγε ὅτι διὰ τὴν σύνοδον τῆς Χαλκηδόνος, καὶ δία το ὁμολογεῖν ἡμᾶς δύο φύσεις. 'Ο βασιλεὺς ειπεν: «῾Ο πρὸ ὑμῶν βαρτὰκ, διατί συνωμολόγησε, καὶ οἱ σὺν αὐτῷ 'Αζάτοι, καὶ διδάσκαλοι αὐτῶν ἐγγράφως συνταξάμενοι». Λέγει ὁ Μουσίλης: «Διὰ ἄγνοιαν, ἢ διὰ φόβον. Εἰ οὖν προστάττεις καὶ επιεικῶς ἀκούεις, καὶ ἐν δικαιοσύνη κρῖμα κατευθύνης, εὐ-

ρήσεις τὴν ἀλήθειαν ἐν τοῖς ἐμοῖς διδασκάλιος». Διὸ προσέταξε πάντας τοὺς ἐπισκόπους, καὶ τὸν καθολικὸν Μωσῆν σὺν τοῖς στρατεύμασι, τοῦ παραγενέσθαι εἰς Κωνσταντινούπολιν. Ὁ δὲ καθολικὸς Μωσῆς οὐ προσέχετο τοῖς προσταχθεῖσι. λέγων: «Οὐ μὴ γὰρ παρέλθω τὸν ποταμὸν, Ἀζάτ, οὐδὲ μὴ φάγω φουρνητόριν, οὐδὲ μὴ πίω θερμόν». Ὡσαύτως καὶ οἱ ἐπίσκοποι τῆς Ἀσπουρὰν χώρας, ὅσοι ὑπῆργον ὑπὸ τῆς τῶν Περσῶν χώρας καὶ ἐξουσίας, οὐκ ἠθέλησαν. ἀπελθεῖν. Οἱ δὲ ἐπίσκοποι τοῦ Ταρῶν, καὶ οἱ ἐπίσκοποι οἱ ὄντες ὑπὸ τὴν ἐξουσίαν τῶν Ῥωμαίων, ἀπῆλθον εἰς Κωνσταντινούπολιν. καὶ μεγάλα ἐρευνήσαντες, ἐπείσθησαν. αὐτοῖς, καὶ γράψαντες γραφίδια μεθ' ὅρκου, συνωμολόγησαν αὐτοὶ, ἰδίαις χερσὶν ἐγγράψαντες. Ὑποστρέψαντες ἐν τῇ Ἀρμενίᾳ, οὐκ ἐδεχθησαν παρὰ τῷ Μωσῆ, καὶ τοῖς λοιποῖς ἐπισκόποις, τοῖς ἐν Περσίδι, καὶ τῇ Ἀρμενίᾳ. Ἐποίησε δὲ αὐτὸς Καθολικὸν τὸν Ἰωάννην, ἀπὸ τοῦ Κωκοστᾶ Παγράτων χώρας» *Հմմտ. նաև* Ն. Ակինեան, *Կիւրիոն կաթողիկոս Վրաց, էջ 119—121)։*

*Հետաքրքիր է լսել, թե հայ պատմիչներից* Սեբեոսը *(Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն, էջ 84) ինչ է այս առթիվ ասում. «Հրաման եղանէ դարձեալ ի կայսերէն վերստին այլ՝ քարոզել զժողովն Քաղկեդոնի յամենայն եկեղեցիս Հայաստան երկրի, և միաւորել հաղորդութեամբ ընդ զաւր իւր։ Իսկ մանկունք ուխտի եկեղեցեացն Հայոց փախստական գնացեալ յաւտար երկիր վարէին։ Եւ բազմաց առ ոչինչ համարեալ զհրամանն՝ զանգէն կալան և անշարժ մնացին։ Եւ բազումք հաւանեալ փառասիրութեամբ հաղորդեալ միաւորեցան աւրինաւորքն։ Բաժանեցաւ ապա և Աթոռ կաթողիկոսութեանն յերկուս. անուն միոյն Մովսէս. և միւսոյն՝ Յովհան։ Մովսէս ի Պարսից կողմանէ, և Յովհան՝ Յունաց։ Եւ Յովհան ընդ նոսա հաղորդեալ միաւորեցաւ, բայց Մովսէս ամենևին ոչ լինէր ի նոսա հուպ»։*

*69. 608—611 թ.թ.։*

*70. Ամբողջ հատվածը սկսած խոսքերից՝ «Ցեվ բաժանվեց Հայքը (Սոմխիթը)» մինչ այստեղ համարյա թե նույն տեղեկություններն է պարունակում, ինչ* Narratio de rebus Armeniae-*ի* (Migne, PG, CXXXII, 1249) *համապատասխան արգացը, միմիայն այն տարբերությամբ, որ Արտնի յերկարության մեջ, նախ, նախադասությունները յետ ու առաջ են դասավորված, իսկ յերկրորդ՝ ավելացրած է Հայոց վանքերի և ուխտատեղիների անունները, որ հունարենում բացակայում են։ Ահա և հունարեն տեկստը.* «Πολλὴν δέ ἔνστασιν εἶχον περὶ τῶν ἐν Χριστῷ δύο φύσεον μετ' ἀλλήλων, καὶ διὰ τὴν ἐν Χαλκηδόνι σύνοδον, ἔτη ιδ', ἕως τῆς τελευτῆς. ἐν ᾧ ἔτει, προσέλαβε ὁ Χοσρόης ὁ βασιλεὺς τὴν χώραν Ἀρμενίας, ὅτε καὶ Ἀβραὰμ κατεστάθη καθολικός. καὶ τῷ αὐτῷ ἔτει κατηνάγκασε τοὺς ἐπισκόπους, καὶ πρεσβυτέρους, καὶ ἡγουμένους, ἀναθεματίσαι τὴν ἐν Χαλκηδόνι σύνοδον, ἢ ἐκχωρῆσαι ἀπὸ τῆς χώρας. Οἱ δὲ ἀναθεμάτισαν, καὶ ἔπαυσεν ἡ ἀντιλογία»:

*71. Տես 69-րդ ծանոթ.։*

*72. Այս յերկու արգացին մինչ այստեղ համապատասխանում է* Narratio de rebus Armeniae-*ի* (ibid.) *հետևյալ կտորը, միմիայն այն տարբերությամբ, որ հունարենում վոչ մի խոսք չկա Անանիի մասին.* «Μετὰ δὲ χρόνους τρεῖς ἐγένετο πόλεμος τοῖς Φρασιανοῖς, καὶ ἐπάταξαν οἱ Πέρσαι τοὺς Ῥωμαίους, καὶ ἐπολιορχίσθη πόλις Κιτρίε, καὶ ἡ Θεοδοσιούπολις, τῷ ε' ἔτει τοῦ Καίσαρος Φωκᾶ, καὶ τῷ κ' τοῦ Χοσρόη, καὶ ἄλλαι πολλαὶ χωμοπόλεις. ἐν αἷς, καὶ τὸν Ἰωάννην, τον Καθολικὸν, τὸν ὄντα μὲν εἰς τὴν Ἀρμενίαν, ὑπὸ τῶν Ῥωμαίων, δὲ τότε ἠμάγκασεν Ἀβραὰμ ὁ Καθολικὸς,

ὁ Στέφανος ὁ Καρταμὰν ἐπίσκοπος πρὸς Ἔσδραν τὸν καθολικόν. Ἀκούσας δὲ ὁ εἰρημένος Ἰωάννης, ὅτι οὐκ ἐκοινώνησεν αὐτῷ, μετὰ μεγίστης θρασύτητος ἔχθραν τῷ Στεφάνῳ κατηργάσατο, οἷον καὶ τῷ Μαθουσάλᾳ, ὅτι καὶ αὐτὸς προσῆλθε τῷ Ἔσδρᾳ. Ἔλεγε δὲ ὁ εἰρημένος Ἰωάννης, ὅτι Κουφότερόν ἐστι τὸ πταῖσμα τοῦ Ἔσδρα καὶ τὸ σφάλμα, πρὸς τὰ ἡμέτερα πταίσματα: «Αὐτὸς γὰρ διὰ φόβον τοῦ βασιλέως ἐξέκλινεν τῆς ἀληθείας· ὑμεῖς δὲ, διὰ κενοδοξίαν καὶ δῶρα, ἐξεπέσατε ἀνίατον πτῶσιν». Ἔπειτα παρεκάλεσε τὸν αὐτὸν Ἰωάννην ὁ Ἔσδρας, λέγων, ὅτι: «Τρίτον ἐκάλεσα, καὶ τὸν Μαθουσάλα, καὶ τὸν Στέφανον, εἰπών· ὅτι Τοῦ κόσμου διδάσκαλοι καὶ γραμματεῖς ὑμεῖς ἐστε. ἔλθετε ἵνα ἀπολογηθῶμεν τῷ βασιλεῖ, καὶ νῦν μέμφεσθε ἡμῶν, ὡς συνομοφρονησάντων αὐτοῖς. Ἡμεῖς ἃ ἠκούσαμεν παρ' αὐτοῦ, ἀληθῆ εἶναι ἐνομίσαμεν· καὶ ὡμολογήσαμεν δύο φύσεις τοῦ Κυρίου ἡμῶν Ἰησοῦ Χριστοῦ· τέλειον ἐν θεότητι, καὶ τέλειον ἐν ἀνθρωπότητι, ἐν μιᾷ ὑποστάσει, ἑνὶ προσώπῳ· ἀδιαίρετον οἰκονομίαν· καὶ ὅτι καὶ τὰς γραφὰς, ἃς ἀνεγνώμεν, τῶν ἁγίων Πατέρων, αἱ ἡμέτεραι, καὶ τῶν αὐτῶν, τὸ αὐτὸ ἐμαρτύρησαν· καὶ ἡμεῖς ἐπείσθημεν τοῖς λόγοις αὐτῶν, κατὰ τὰς Γραφὰς τὰς ἁγίας. Καὶ νῦν οὐ διῆλθον χρόνοι. αἱ Γραφαὶ πᾶσαι τῶν ἁγίων Πατέρων παρ' ἡμῖν εἰσι· ἐρευνήσαντες μάθετε τὴν ἀλήθειαν». Καὶ ὅτε ὑπέδειξε τὴν μαρτυρίαν τῆς Γραφῆς, εἶπεν ὁ Ἰωάννης: «Ταῦτα πάντα οἱ Νεστοριανοὶ προσέθηκαν ἐν ταῖς γραφαῖς τῶν ἁγίων Πατέρων...». Ἐφάνησαν δὲ τὰ ῥήματα ταῦτα τοῦ Ἰωάννου ἐνώπιον Ἔσδρα, καὶ τῶν σὺν αὐτῷ ἐπισκόπων, ἐναντία· καὶ πάντες ἀπέστησαν αὐτοῦ, στραφέντες ἀπὸ τοῦ λόγου ἐκείνου»:

*Հայ պատմիչների՝* **Սեբեոսի, Հովհան Դրասխանակերտցու** *և* **Ասողիկի** *տվյալները այս կետում մի փոքր բան [illegible] տարբերվում են այն հաղորդագրությունից, որը տալիս է վրացի հեղինակը՝ հենվելով, անտարակույս,* **Narratio de rebus Armeniae**-*ի բնագրի կամ դրա նման հայերեն թարգմանության վրա, քանի որ այդ պատմիչները Եզրի քաղկեդոնականությանը հարելու պատճառները կապում են Հերակլ կայսրից Կողբի աղահանքը պարգև (համարելով՝ կաշառ) ստանալու փաստի հետ (տե՛ս* Իվ. Ջավախիշվիլի, *Հին վրացական պատմական գրականությունը, էջ 70)։ Տեքստը տանք, նախ և առաջ, Սեբեոսին (Պատմութիւն Սեբէոսի եպիսկոպոսի ի Հերակլն, էջ 162—163). «Եկն... զաւրավարն յունաց Մժէժ Գնունին ի Հայաստան աշխարհն, և յինքն կոչեաց զամենայն եպիսկոպոսն բաց ի տանցկուծ սահմանին։ Ասէ ցկաթուղիկոսն Եզր՝ երթալ նմա յերկիր սահմանացն և հաղորդել ուրինաւք ընդ կայսեր. ապա թէ ոչ՝ արասցուք մեզ այլ կաթուղիկոս. և դու կալ զիշխանութիւնդ քո ի տանէդ կողմանէ։ Իսկ կաթուղիկոսն Եզր ոչ կարաց թողուլ զերկիր իշխանութեան իւրոյ՝ խնդրեաց ձեռնարկ հաւատոյ ի թագաւորէն։ Եւ փոխանակն առաքեցաւ նմա առ մեր գրեալ ձեռամբ թագաւորին, և նզովեալ զՆեստոր և զամենայն հերձուածողս։ Բայց ոչ էր նզովեալ զժողովն Քաղկեդոնի։ Եւ գնաց կաթուղիկոսն յերկիրն Ասորեստանի, ետես զթագաւորն և հաղորդեցաւ ընդ նմա ուրինաւք։ Եւ խնդրեաց ի թագաւորէն պարգև զաղն Կողբայ, և առեալ զպարգևն դարձաւ մեծաւ շքով ի տուն իւր»։*

*Համեմատաբար ավելի շփման կետեր ունեն, թեև տարբեր լուսաբանությամբ, վրացի հեղինակի (և* **Narratio de rebus Armeniae**-*ի) հաղորդագրությունը* **Հովհան Դրասխանակերտցու** *և* **Ասողիկի** *տվյալները։*

Ըստ Դրասխանակերտցու՝

(Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտցւոյ Պատմութիւն Հայոց, էջ 77—79):

Եւ Ներսէս... յանձն առնու երթալ առ կայսրն։ Եւ լինելն չոգաւ՝ ոչ առնէր ընդ իւր զՅոհան փակակալ սրբոյն Գրիգորի, որ էր յայնմ ժամանակի փիլիսոփայ կատարեալ և աստուածային գրոց գիտութեան բանիբուն ճանաչէր. այլ զայլ ոմն զիւր քեռորդի՝ կիսակատար ուսմամբ, առեալ գնայր նովաւ վճարել զգործ իւրն։ Եւ ի հանդիպել կայսերն՝ խնդրեն առ ի նմանէ ձեռնարկ հաւատ նամակի. որ և վաղվաղակի խոկ գրեալ առ նոսա՝ նզովեալ զամենայն հերձուածողս բաց ի ժողովոյն Քաղկեդոնի։ Իսկ Ներսէս և իւրայոցն տգիտաբար իմն իբր անծանօթ գրոց աստուածայնոց՝ ոչ կարացեալ ի միտ առնուլ զխորամանկ հնարիմացութիւն հերձուածոյն, որ ընդ կայսերական ձեռագրին իւր ընդ գրուածն էր թաքուցեալ, զուգաձայնեալ խաբեցան ընդ նոսա ըստ օրինի առմարբին Լեւոնի։ Եւ ապա մեծարեալ յարքայէ և ընկալեալ պարգեւս զերիր մասն գիւղաքաղաքին Կողբայ և զայլս նորուն բովանդակապար՝ դառնայ մեծաւ չքով յաշխարհ իւր։ Իսկ ի չուել գալ նորա՝ ըստ օրինի սովորական կարգացն կղերք եկեղեցւոյն իւրոյ փութացեալ ընդառաջ լինէին։ Բայց փիլիսոփայն Յոհան, զոր վերագոյն ասացաք՝ ոչ եւս ընդ այլսն երթալով լինել զատ հարկին, որ ի վերայ կայր... Եւ... եկեալ գնայ։ Եւ երթեալ առկայանայր ի Մայրոյ վանս, որ ի ծործորս լերինն ամրոցին Բջնւոյ. և սակս ի նմա բնակելոյն Յոհաննու՝ փոխեալ Ներսէս զանուն տեղւոյն Մայրոյ վանաց, Մայրագոմ կոչ անուանէր, և զՅոհան՝ Մայրագոմեցի։

Ըստ Ասողիկի՝

(Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական, 87—88):

Սա (Ներսէս) հանդիպեալ Հերակլի ի Կարնոյ քաղաքի, ոչ տանելով ընդ իւր զՅովհան փակակալ սրբոյն Գրիգորի, որ յայնմ ժամանակի կատարեալ էր աստուածային գրոց գիտութեամբ, այլ զոմն կիսակատար գիտութեամբ ընդ իւր տանէր։ Եւ հասեալ ի ժողովն՝ խնդրէ ի նմանէ Հերակլ ձեռնարկ հաւատոյ։ Իսկ նորա իբրև տգէտ գոլով աստուածային գրոց՝ խաբեալ խորամանկութեամբն Յունաց՝ նզովեալ զամենայն հերձուածողս բաց ի ժողովոյն Քաղկեդոնի, հաղորդելով նոցա ըստ օրինաց, մեծապարգեւ փառօք դառնայրն. զԿողբ ժառանգեաց փոխան հաւատոյն։ Որոյ ընդ առաջ եկեալ նմա ուխտ եկեղեցւոյն՝ իսկ Յովհան ոչ եկ... [որ] գնաց յերեսաց նորա անարգանօք։ Եւ երթեալ բնակեցաւ ի Մայրոյ վանս. ուստի հալածեալ զնա Ներսէս՝ կոչէ զանունն Մայրոյ գոմ, և Յովհաննէս՝ Մայրագոմեցի։

80. Այս կէտում (ամբողջ արդար չարադրելիս) վրացի հեղինակը, ըստ յերևույթին, օգտագործել է մի ինչ-որ՝ առ այժմ մեզ համար անհայտ՝ աղբյուր:

81. Այս Ներսեսը (641—652, 658—661) իբրև «Իշխանցի» հայտնի է միմիայն Սեբեոսին (op. cit., 228—229), որի տվյալները վրացի հեղինակը յուրատեսակ կեր-

84. Ի վերջո, դնում ենք Արսենի յերկասիրության մեջ հիշված վորոշ կարգի աշխարհագրական և անձանց անունների (Ortsnamen und Personennamen-ի) համեմատական աղյուսակը վրացերեն, հայերեն և հունարեն, վորպեսզի ընթերցողի համար պարզ լինի, վոր վրացի հեղինակը կույրաբար չի վերաբերվել դեպի հունական աղբյուրները կամ, մի գուցե, ձեռքի տակ է ունեցել այդպիսիները հայերեն թարգմանությամբ ևս։

| Վրացերեն | Հայերեն | Հունարեն |
|---|---|---|
| Եկլեցի | Յեկեղյաց [գավառ] | |
| Աբգիրո (?) | Աբգիշո | 'Απτισώ |
| Փիլաքսոս | Փիլոքսենոս | |
| | (Փիլիքսենոս) | Φιλόξενος |
| Ալիկարնելի | Աղիկառնացի | |
| | (Հալիկառնացի) | τοῦ 'Αλικαρνασέως |
| Կվիրիոն | Կյուրիոն | |
| Դվին | Դվին ; Դուին | Τιβῆ, Τιβην |
| Աբազ | Աբաս | 'Απᾶς |
| Ներսե | Ներսես | Νορσέσης |
| Կոմիտաս | Կոմիտաս | Κομιτᾶς |
| Սիւնիելթա | Սյունյաց | τοῦ Σινῆς |
| Եզրա | Յեզր | ''Εσδρα |
| Ներշապո | Ներշապու | Νερσαπῷ |
| Աշտարակելի | Աշտարակեցի | ἀπὸ 'Ασταράξ |
| (Աշխարակելի ?) | | |
| Իուստինիան | Հուստինիան | 'Ιουστινιανος |
| Ազատ | Ազատ | 'Αζὰτ |
| Ազիդբուզիտ | Յեստիպուզիտ | Νεστιποστι |
| | (Յեզիդբուզիդ) | |
| Մաստոց | Մաշտոց | Μαστήντζη |
| Լեոնտի | Ղևոնդ | |
| Վարդան | Վարդան | Βαρτᾶς (Βαρτάν) |
| Մամկուենի | Մամիկոնյան | |
| Սուրեն | Սուրեն | Σουριέν |
| Մուշել | Մուշեղ | Μουσίλης |
| Վասպուրագան | Վասպուրական | 'Ασπουρὰν χώρα |
| Գոգովիտելի | Կոգովիտեցի | Κωκοστᾶ |
| Ծուլկաթ | Ծողակաթ | |
| Ուշական | Ոշական | |
| Ելիվարդ | Յեղվարդ | |
| Արարատ | Այրարատ | |
| Բասիան | Բասեն | Φρασίανοι |
| Կթրիջ | Կթուիճ | πόλις Κιτρίε |
| Աշտենիսա | Հաշտենից | |
| Կարնու քալաքի | Կարնո քաղաք | Θεοδοσιούπολις |
| Տաո | Տայք | Ταέις |

Զ.

# ԱՆԱՆՈՒՆ ՀԵՂԻՆԱԿՆԵՐ (IX Դ.)

## ՀԱՄԱՌՈՏ ՀԱՅՈՑ «ՊԱՏՄՈՒԹՅԱՆ» ՓՈՐՁԵՐ

*Արսեն Սափարացու «Վրաց և Հայոց բաժանման մասին» յերկասիրության հորինման ժամանակ,* IX *դարու յերկրորդ կիսում, կամ գուցե նրանից մի փոքր առաջ՝ նույն* IX *դարու առաջին կիսում, վրաց գրականության մեջ նկատվում է մի հոսանք՝ վրացերենի վերածելու հայոց կամ հույն-բյուզանդական գրականության մեջ գոյություն ունեցող բոլոր այն գրվածքները, վորոնք պարունակում են իրենց մեջ վորևե տեղեկություններ հայերի «փորձանքի» մասին, սկսած Խորենացու «Վողբ»-ից ու Սահակի «տեսիլք»-ից և մինչ զանազան՝ «պատմություն»* Narratio *կոչված յերկերը։ Իհարկե, բոլոր այս գրվածքները մեզ չեն հասել, բայց այն, ինչ վոր այժմ մեր ձեռքի տակ է,* IX *դարու դրոշմն է կրում։ Բավական է մատնանշել, վոր Տփղիսի նախկին յեկեղեցական թանգարանի № 735 ձեռագիրը (արտագրած* XVII *դարում), վորը պարունակում է Արսեն Սափարացու վերոհիշյալ յերկասիրության լավագույն և հնագույն օրինակը, ներկայացնում է իրենից 20 հոդվածից բաղկացած մի ժողովածու, վորոնցից և վոչ մեկը* IX *դարուց այս կողմը չի անցնում և, որանց թվում, այսպես կոչված «Պաթմոթին» (=Պատմություն) գրվածքը, Դորոթեոս Տյուրացու (*VI *դ.) «12 առաքյալների մասին» հատվածը, Սահակի տեսիլքը, Թեոդորոս Ցեպիկուրայի հակաճառությունները, նաև Բարսեղ Կեսարացու, Ստեփան Կյուպրացու, Հովհան Վոսկեբերանի, Գրիգոր Նազիանզենի, Մաքսիմ Խոստովանողի, Յեփրեմի և ուրիշների ճառերը (հմմ. Ф. Жордания,* Описание рукописей Тифлисского Церковного Музея, кн. II, Тифлис 1902. стр. 195—197)։ *Այս հոդվածներից «Սահակի տեսիլքը», վոր մենք ենք հրատարակել (տես Նախորդ՝ հինգերորդ գլխի 38-րդ ծանոթ.), նույնպես աղբյուր է ծառայել Արսենի յերկասիրությանը՝ թարգ-*

մանված լինելով, ուրեմն, նրանից առաջ կամ գուցե հենց նրա ձեռքով։

Սակայն, բոլոր այսպիսի գրվածքներից առանձնապես հիշատակելի են այսպես կոչված «Պատմություն»-ների շարքը, որոնցից մեկը նույնիսկ ծանոթ է յեղել XI դարու վրացի հեղինակ Եփիմիոս Երուսաղեմացուն (տես սույն պրակի 13-երորդ գլուխը) և որոնցից առայժմ հայտնագործված է միմիայն յերկուսը։ Մեկն է վերոհիշյալ № 735 ձեռագրում ամփոփված՝ անանուն հեղինակի կազմած հայոց «նահապետների» և թագավորների ծննդաբանությունը նախարարների ցանկերով հանդերձ, որը հետևյալ ընդարձակ վերնագիրն է կրում. «Հայոց թագավորությունը՝ սկսած Նոյի որդուց. [այս տեղեկությունները]՝ գտնըված լինելով Պարմոբին-ի մեջ՝ ներկայացրած են այս գրքում նախար[ար]ական տոհմերի մասին քաղվածքներով հանդերձ», և որն առայժմ unicum է։ Հրատարակել ենք մենք հանդերձ ռուսերեն թարգմանությամբ. *Л. Меликсет-Беков*, Эксцерпты из древней «Истории Армении» по грузинской рукописи XVII века («Известия Кавказского Историко-Археологического Института», г. II, 1917—1925, стр. 135—142)։ Իսկ մյուսը՝ վրաց մեջ գրագիտություն տարածող նախկին ընկերության №№ 312 և 248 ձեռագրերի մեջ (XVI և XVIII դ. դ.) ներկայացրած՝ դարձյալ անանուն հեղինակի (ըստ մեր հետազոտության, հավանական է նույն Արսեն Սափարացու) կազմած Հայոց յեկեղեցական պատմությունն է, որը կրում է «Պատմվածք պատիմոբին-ից» վերնագիրը։ Հրատարակված է Թ. Ժորդանիայի «Քրոնիկներ»-ի I հատորում (եջ 336—341)։

Ինչպես առաջին, նույնպես և յերկրորդ «պատմությունը» ինքնուրույն գրվածքներ չեն, այլ ներկայացնում են համառոտ Հայոց «պատմության» փորձեր կոմպիլատիվ բնույթի, մեկը՝ հայ, իսկ մյուսը՝ հույն-բյուզանդական աղբյուրների վրա հիմնված։

Առաջին հոդվածը, ինչպես մենք մանրամասն կերպով հետազոտած ունենք (*Л. Меликсет-Беков*, Эксцерпты из древней «Истории Армении», стр. 136—138, հմմ. նույնը, О грузинской версии апокрифического Видения Саака Парфянина о судьбе Армении, стр. 166), հիմնված է գլխավորապես Մովսես Խորենացու պատմության այս կամ այն տեղեկությունների վրա, իսկ յերկրորդը, ինչպես վաղուց հարևանցի կերպով հայտնել ենք (Լ. Մելիքսեթ-Բեկ, Սահակ Պարթևի «մարգարեության» վրացական

վերսիան, վրացերեն, էջ 202) և այժմ պիտի մանրամասն հիմ-նավորենք, Narratio de rebus Armeniae-ի այլ և այլ տեղերի ու վերջինիս կցված Catholici Armeniae (Migne, PG. CXXXII, 1253—1257) կոչված ամբողջական հատվածից կազմված մի կոմ-պիլյացիա է։

Ի նկատի առնելով այն հանգամանքը, վոր Յեփրեմ Յերուսաղեմացին Սոսթենես Մարմաշենցու հետ վիճաբանելիս (տես այս պրակի տասնուերկուերորդ գլուխը) հենվում է պատմոթանա կոչված գրքի վրա, ինչ Սոսթենեսը չի կարողանում հանդուրժել, ուստի և ասում է՝ «Անիծեալ լինի ով որ քեզ ծանոթացրեց պատմոթանա-յի հետ», Կ. Կեկելիձեն (Վրաց գրականության պատմություն, I, 535) միանգամայն իրավացիորեն այն միտքն է հայտնում, վոր այս պատմոթանա-ն քաղկեդոնիկ ուղղության գրվածք պիտի լիներ։

Յեվ, իրոք, մեր ձեռքի տակ գտնվող յերկու պատմություն-ներն էլ, ինչպես պարթմոթինը, նույնպես և պատիմոթինը, քաղկե-դոնական վոգվով գրված յերկեր են։

Առաջին հոդվածը՝ Հայոց «նահապետների» և թագավորների ծննդաբանությունը նախարարների ցանկերով հանդերձ՝ մենք ստորև տալիս ենք Ա. գլխում ամբողջական թարգմանությամբ համաձայն մեր իսկ հրատարակած բնագրի (Эксцерпты из древней «Истории Армении», стр. 139—142)։

Երկրորդ հոդվածը՝ հայոց յեկեղեցական պատմությունը՝ վորը մենք Արսեն Սափարացուն ենք վերագրում, ստորև տալիս ենք Բ. գլխում դարձյալ ամբողջական թարգմանությամբ ըստ վերա-կանգնած բնագրի, վոր մենք պատրաստած ունինք տպագրության համաձայն մինչ որս հայտնագործված 2 ձեռագրերի, այն է վրաց մեջ գրագիտություն տարածող ընկերության հավաքածուի №№ 312 (XVI դ.), էջ $65^{a}$ — $67^{a}$, և 248 XVIII դ.), էջ 173—178 (հմմ. Թ. Ժորդանիայի «Քրոնիկոններ»-ի I հ., էջ 336—341)։ Թարգ-մանությանը կցված բազմաթիվ ծանոթությունները արդյունք են մեր իսկ հետազոտության։

1.

Հայոց թագավորությունը՝ սկսած Նոյի վորդուց. [այս տեղեկու-թյունները]՝ գտնված լինելով պ ա թ մ ո թ ի ն-ի մեջ՝ ներկայացված են այս գրքում նախար[ար]ական տոհմերի մասին քաղվածքներով հանդերձ

Նոյի որդվոց անունները՝ *Սեմ, Քամ և Յաբեթ՝ գտնված են մարաց կամ պարսից լեզվով. Թարգմանաբար հետևյալն են՝ Զրուան, Տիտան և Յապետոս։*

*Իսկ Յաբեթը ծնեց Գամերին, Գամերը ծնեց Ռիփաթին, Ռիփաթը ծնեց Թիրասին, Թիրասը ծնեց Թորգոմին (Թորգոմային)՝ հայոց [նախա]հորը, Թորգոմը (Թորգամոն) ծնեց Հայկին, սա՝ Արմենակին (Արմենեկին), Արմենակը (Արմենեկը)՝ Արմայիսին, սա՝ Ամասիային, Ամասիան ծնեց Գեղլային, սա՝ Հարմային, Հարման ծնեց Արամին, Արամը ծնեց Արա-գեղեցկին, որին պատերազմում սպանեց Շամիրամը* [1]։

*Արայն ծնեց Անուշավանին*), սա Պարետին, Պարետը ծնեց Արշակին, Արշակը՝ Գզավանին, սա՝ Փառնասկորին, Փառնասկորը՝ Հավանակին, սա՝ Վաշտակին, Վաշտակը՝ Հայկակին։ Հայկակի մասին ասում են, որ նա Բելոքոսի որդին էր։ Նա առաջ բերեց անմիտ ապստամբություն, որի ժամանակ սպանվեց։ Ապա նրա սերունդը (որդոց-որդիք) այս են. Ամբակ, Առնակ, Շավարշ. Նորայր (Նուարար), Վստամ, Կար.. [Զարմայր].* սա ոգնական Պր[ի]ամու Տեւտամից**) *ուղարկվեց եթովպական զորքի հետ, և սպանվեց հելլենական հերոսներից*[2]։

*Հրաչե, Փառնավազ (Փառնեվազ), Պաճույճ, Կոռնակ, Փավոս. մյուս Հայկ, Երվանդ սակավակյաց, Տիգրան***) մեծն*[3]։

*Այստեղ խափանվեց հայոց թագավորությունը։ Աղեքսանդր Մակեդոնացին նվաճեց աշխարհի մեծ մասը։ Սա քսան և չորրորդն էր Աքիլլեսից։ Նրանից հետո Սելևկոս Նիկատորը թագավոր նստեց Բաբելոնում և հնազանդեցրեց պարթևներին, որի պատճառով կոչվեց Նիկանոր****). և թագավորեց 31 տարի։ Ապա Անտիոքոսը, նրա որդին, 19 տարի։ Անտիոքոսի [թագավորության] տասնումեկերորդ թվին պարթևները ազատվեցին Մակեդոնացվոց լծից (ստրկությունից)։ Աժդահակը նույն Ատուհակն է՝ մարաց թագավորը։ Որան սպանեց Տիգրանը։ Յետ Աղեքսանդր թագավորի քառասուներորդ տարին թագավոր նստեց Հայքում (Սոմխիթում) մեծն Արշակ, որը Աբրահամի զավակներից էր՝*

---

*) *Բնագրում՝ Անուշավան։*

**) *Բնագրում՝ «Ս ա վ ա գ ն ա, կ ա մ յ ր ա, Մ ի ո ւ տ ի վ ա ս» (անունների շարք է), որ աղավաղումն է հայերեն «սա* ուգնական *Պա[ր]իամու ի Տեւտա[մայ]»...*

***) *Բնագրում՝ Տիգրին։*

****) *Բնագրում՝ Նիկանորաս։*

*Քետուրից ծնված, ինչպես ասված ուխտ տվեց Աբրահամին՝ ասելով «Թագաւորք ազգաց ի քէն ելցեն*)»[4]։*

*Արշակը ծնեց Խոսրովին (Խլասրովին), Խոսրովը (Խուասրոն) ծնեց Տրդատ (Թրդատ) թագավորին։ Տիրանը նստեց հայոց թագավոր, որը Խոսրո[վ] կրտսերի որդին էր և Տրդատի (Թրդատի) թոռը, որին կուրացրին։ Սրանից հետո նրա որդի Արշակն էր, որին պարսից թագավոր Շապուհը (Սաբուրը) սպանեց, իսկ նրա սպասպետ Վասակին կաշին պոկեց։ Սրանից հետո թագավորությունը դրավեց նրա անաստված որդի Պապը, որը սպանեց Գրիգորի թոռան՝ անմեղ մեծն Ներսես (Ներսեն) կաթողիկոսին, և ուրիշ շատ չարություններ էլ արավ իր օրոք։ Սրանից հետո նստեց Վարզդատը, որը ծնկով սպանեց Մուշեղ (Մուշել) սպարապետին։ Այս Վարզդատ թագավորին քշեց Մանվել (Մանոել) Մամիկոնյանը (Մամկուենը) և դաստիարակեց Պապի որդվոց։ Յետ թագավոր նստեցրին Պապի որդի Արշակին։ Յետ Մանվելի (Մանոելի) մահից հետո Հայոց (Սոմխիթի) թագավորությունը երկու մասի բաժանվեց, մի մասը Արշակինն էր, իսկ մյուսը՝ Խոսրովի (Խուասրոյի), որոնք հպատակ էյին պարսից։ Սրանից հետո նրանց բոլոր գործերը անհաստատ յեղան։ Իսկ այն Ներսեսը (Ներսեն), որին հիշեցինք. որդի էր Աթանագինեսի (Աթանագենի), որդվո Հուսիկի (Ոսիկի), թոռան Վրթանեսի (Որթանի)**) սուրբ Գրիգորի շառավիղի (թոռներից մեկի որդվո), չորրորդ աստիճանի։ Յետ այս երանելի Ներսեսի (Ներսեյի) որդին էր սուրբ Սահակը՝ Գրիգորի շառավիղը (որդին), չորրորդ աստիճանի* (sic), *որին յիրևաց ասածուց Հայքին (Սամխիթին) [շնորհած] երկնային տեսիլքը*[5]։

Այս են Հայոց (Սոմխիթի) նախարարները. *Արշակունիք, Բագրատունիք, Ամատունիք, Մամիկոնյանք (Մամկուենք), Ման[դ]ակունիք, Պարթևք, Սուրե[ն]յանք, Արծրունիք, Կամսարականք (Կամսարագանք), Ռշտունիք, Սլկունիք, Գնթունիք, Բզ[ն]ունիք (Պզ[ն]ունիք), Մանավազյանք, Փառավազյանք, Որդունիք (Որդանք), Արևելյանք, Սահռունի տիկիններ (թագուհիների) շառավիղները։*

*) *Ծննդոց* XVII, *6։*

**) *Հմմ. փախճառն —› «ոխճառն», աղնականն " օդնականն —› «վաղնականն»։*

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Ըստ Մ. Խորենացու, գ. I, գլուխ 5 (1913 թ. հրատ., էջ 19). «Յաբեթ ծնանի զԳամեր, Գամեր ծնանի զԹիրաս, Թիրաս ծնանի զԹորգոմ, Թորգոմ ծնանի զՀայկ, Հայկ ծնանի զԱրամանեակ (var. զԱրամանեկ, զԱրմանեակ, զԱրմենեակ, զԱրմենակ), Արամանեակ (var. Արմանեակ, Արմենեակ, Արմենակ) ծնանի զԱրամայիս (var. զԱրմայիս), Արամայիս ծնանի զԱմասիայ (var. զԱմասիա), Ամասիայ (var. Ամասիա) ծնանի զԳեղամ, Գեղամ ծնանի զՀարմայ (var. զՀարմա), Հարմայ ծնանի զԱրամ, Արամ ծնանի զԱրայն գեղեցիկ»։

2. Ըստ Մ. Խորենացու, գ. I, գլուխ 19 (var. 20) (1913 թ. հրատ., էջ 62–63) «Արայեան Արայ (var. մրմիայն՝ Արայ)... Անուշաւան, Պարէտ, Արբակ, Զաւան, Փառնակ (var. Փառնաս)... Սուր, Հաւանակ, Վաշտակ, Հայկակ։ Զսմանէ ասեն լինել առ Բելոքայիւ և ամբոխել ի տուրս անհնազանդութեան և մեռանել ի նմին՝ Ամպակ (var. Ամբակ), Առնակ, Շաւարշ, Նորայր, Վստամկար (var. Վստամ, կամ Վստամկար), Գոռակ (var. Գռակ), Հրանտ (var. Հրանդ), Ընծայ, Գղակ (var. Դղակ), Հորոյ (var. Հուրա, Հուրայ, Հորայ), Զարմայր (var. Զայրմայր)։ Սա օգնական Պրիամու ի Տեւտամայ առաքեալ ընդ Եթովպացւոց զօրուն՝ մեռանի ի քաջացն Հելլենացւոց»։

3. Ըստ Մ. Խորենացու, գ. I, գլուխ 22 (var. 23) (1913 թ. հրատ., էջ 68–69). «Պարոյր որդի Սկայորդւոյ, Հրաչեայ... Փառնաւազ (var. Փառնուազ), Պաճոյճ (var. Պայճոյճ), Կոռնակ (var. Կոռնակ), Փաւոս (var. Փաւոսս, Փաւոս), միւս Հայկակ, Երուանդ սակաւակեաց, Տիգրան»։

4. Ըստ Մ. Խորենացու, գ. II, գլուխ 1 (1913 թ. հրատ., էջ 102) «Յետ տիրելոյն ամենայն աշխարհաց Աղեքսանդրի Մակեդոնացւոյ, որդւոյ Փիլիպպեայ և Ողոմպիադայ, որ էր քսան և չորրորդ յԱքիլլեայ, բազմաց առեալ զաւրութիւնն կալաւ, զի ամենեցուն իշխանութիւն՝ Մակեդոնացւոցն անուանեսցի՝ ինքն մեռանի։ Զկնի որոյ թագաւորեաց Բաբելոնի Սելևկոս, յաղթելից կորզելով զիշխանութիւն. ուստի և զՊարթևս հնազանդեաց մեծաւ պատերազմաւ, և կոչեցաւ Նիկանովր այնորիկ ազգաւ։ Սորա տիրեալ ամս երեսուն և մի՝ թողու զթագաւորութիւնն որդւոյ իւրում Անտիոքայ, անուանեցելոյն Սաւտէր, ամս ինն և տասն։ Զսա յաջորդէ Անտիոքոս, անուանեալն Թէոս, ամս տասն. և ի մետասաներորդին ապստամբեն Պարթևք ի ծառայութենէ Մակեդոնացւոցն։ Ուստի և թագաւորեաց Արշակ քաջ, որ էր ի զաւակէ Աբրահամու, ի Քետուրական ծննդոց, առ ի հաստատել բանին տեառն առ Աբրահամ, թէ «Թագաւորք ազգաց ի քէն ելցեն»։

5. Տես հինգերորդ գլխի 38-րդ ծանոթ.

## 2.

## Պատմվածք Պատմորինց

Սուրբ Գրիգոր լուսավորը* 21 տարի։ Սուրբ Արիստակեսը (Ռոստակեն)՝ 20 տարի։ Սուրբ Վրթան[ես]ը (Որթանը)՝ 3 տարի։ Գրիգոր[իս]ը՝ 12 տարի։ Հուսիկը (Ոսիկը)՝ 6 տարի։ Փառներսեհը (Փառներսեխը) Ապրակունեաց (Ապրականանեցվոց) երկրից՝ 4 տարի։ Սուրբն Ներսեսը (Ներսեն)՝ 4 տարի, որին թունավոր մահացրին։ Սրանից հետո Սահակը՝ 4 տարի։ Ասպուրակեսը (Ասպուրակիսը)՝ 7 տարի։ Այս չորսը Խարկան երկրի** եպիսկոպոսներ էին՝ ունենալով միմիայն կաթողիկոսական կոչումը, բայց եպիսկոպոսական ձեռնադրությունից խուսափում էին, որովհետև մինչ սուրբ Ներսեսի մահը [եպիսկոպոսները] կարգվում էին Կեսարիայի եպիսկոպոսապետից (արքեպիսկոպոսից)[1]։

Սրանից հետո սուրբ Սահակը ստացավ Հայքին (Սոմխիթին) եպիսկոպոսներ ձեռնադրելու իրավասությունը, իսկ ինքն եպիսկոպոսություն արավ 40 տարի։ Մի քանի ժամանակից հետո [ազատներից ոմանք] պարսից թագավոր Վռամշապուհի մոտ բամբասեցին իրենց թագավոր Արտաշիրին, և սուրբ Սահակը, քանի որ համախոհ չէր նրանց բանսարկություններին, հեռացվեց աթոռից։ Եվ սուրբ Սահակի գահընկեցությունից հետո պարսից թագավորի հրամանով և իրենց ցանկությամբ կաթողիկոս կարգեցին Սուրմակ Ծաղկեցուն, որը սուրբ Սահակի զրպարտիչն էր։ Իսկ վերջինիս (Սուրմակի) զրպարտիչները հանեցին նրան աթոռից և խնդրեցին պարսից թագավորից հետևյալը. «Տուր մեզ [կաթողիկոս որևէ մեկին] քո երկրից և թող նա հայ չլինի»։ Եվ տվեց նրանց թագավորը ասորի Բրքիշոյին***, որին Պերկիսո էլ էին կոչում։ Բայց երեք տարուց հետո սրա զրպարտիչները նրան [էլ] հանեցին, և [թագավորը] կրկին տվեց նրանց ասորի Սամվել (Սամոել) Մուալեցուն։ Եվ սա էլ՝ բազում կսկիծի մեջ երկու տարին ավարտելով՝ վախճանվեց[2]։

Իսկ արևելից [եպիսկոպոսների] ձեռնադրությունը խափանված էր Կեսարիայից՝ սուրբ Սահակի գահընկեցության առթիվ։ Սրանից հետո Հայոց ազատները (ազատնի) գնացին սուրբ Սահակի

*) Հունարենում՝ ὁ φωστήρ:

**) Հուն. 'Αχάρκ χώρας:

***) Բնագրում՝ Բրքիոս, որը նույն Աբդիսոն է, այսինքն Աբդիշոն։

մոտ՝ խնդրելով, որ նրանց ի չարն չհիշի և վերադառնա իր աթոռը։ Բայց նա չլսեց նրանց և պատմեց նրանց այն տեսիլքը, որ տեսել էր նրանց քանդվելու մասին։ Բայց իրեն փոխարեն աթոռի պահապան տվեց երանելի Մաշտոցին (Մաստոցին)[3]։ Եվ նրա (Սահակի) ու Մաշտոցի (Մաստոցի) մահից հետո երիցապետական աթոռի վրա կարգեցին Գյուտին (Կիտին), որը Ոսթմիս (Ասմիսո) ավանից էր, և [կաթողիկոսեց] 17 [տարի]։ Եվ սրա օրոք [հաստատվեց այն կարգը], որ պարսից թագավորի հրամանով էր կատարվում Հայոց (Սոմխիթի) եպիսկոպոսների [և] կաթողիկոսների ձեռնադրությունը, [որը շարունակվում է] մինչ այսօր[4]։

Իսկ սրանից հետո [կարգվեց] Հովհան Մանդակունին՝ 6 տարի, և սրանից հետո Բաբգեն (Պապնիկեն) [Ոթ]միս (Միսո) ավանից՝ 5 տարի, Սամվել (Սամոել) Արտազ (Արտաշ) ավանից՝ 11 տարի, Մուշեղ (Մուսիլի) Այլաբերդ (Ալպիր) ավանից՝ 50 տարի, Իսահակ (Իսակ) Ուղկեցին (Ավկեցին)՝ 7 տարի, Քրիստափոր Տիրառճեցին (Կուրավիցեցին)՝ 6 տարի, Ղևոնդ (Լեոնտի) Առեստեցին (Արեթեցին)՝ 3 տարի, Ներսես (Ներսե) Աշտարակեցին՝ 9 տարի[5]։

Սրա օրոք կայացավ ժողով քաղաք Դվինում Աբդիշո (Ավ-դիսոո) ասորի հակոբիկի ձեռներեցությամբ։ Եվ քանի որ ուրացել [էին] սուրբ Գրիգորի և այլ հայրերի ավանդներն, ուստի [ուղիղ] հավատքն ու Քաղկեդոնի ժողովը [նզովելով], Քրիստոսի աստվածային և մարդկային մի բնություն դավանողները երեքսրբյան «սուրբ աստված» սրբասացությանը ավելացրին «որ խաչեցար»[6]. և երդումով ու նզովքով, նաև փոխադարձ գրագրությամբ իրենց իսկ ձեռքով հաստատեցին չհեռանալ այսօրինակ դավանությունից հավիտյանս։ Իսկ Նվտիքեսը (Նվտուքին), հակոբիկներն ու երկու էլ ուրիշ համախոհները, մեկը կարծես հուլիանիտ, իսկ մյուսը՝ մի այլ հերձվածքի ներկայացուցիչ, եպիսկոպոս ձեռնադրվեցին և ուղարկվեցին Միջագետք[7]։

Սրանից հետո Հովհան (Հաննե) Գաբեղենացին (Կապելինեցին)՝ 17 տարի, Մովսես Եղիվարդեցին (Ելիվարտեցին)՝ 30 տարի, Աբրահամ Ռշտունյացը (Արխստոնեցին)՝ 23 տարի, Հովհան Բագարանցին (Կապրանայեցին)՝ 26 տարի, Կոմիտաս (Կոմիտա) Արագածոտնեցին (Արկացոյեցին)՝ 8 տարի, Քրիստափոր Ապահունեցին (Աբրամեցին)՝ 13 տարի, Եզր (Եզրա) Նիգայեցին՝ 10 տարի, Ներսես (Ներսե) Իշխանցին՝ 8 տարի, Անաստաս Ակո-

ռեցին (Ակորայեցին)՝ 6 տարի, Իսրայել Ութմսեցին (Ատմխացին)՝ 10 տարի[8]։

Հայոց թագավորները.— Վաղարշի (Վաղարշի) թագավորությունից մինչև Արտաշիր 21. և սրանից հետո իշխանները՝ Գնունի (Կինունի) պատրիկը՝ 4 տարի, Դավիթ Սահառունին (Սարոնին)՝ 3 տարի, Թեոդորոս (Տոդրոս) Ռշտունյաց (Որուստունի)՝ 10 տարի, Համազասպ (Ամազասպ) կուրապաղատը՝ 4 տարի, Նրա եղբայր Գրիգորը՝ 24 տարի, Աշոտ Բագրատունին՝ 3 տարի, Ներսես (Ներսե) Կամսարականը՝ 3 տարի, Սմբատ (Սումբատ) Բագրատունին (Բագրատունիանը)՝ 12 տարի[9]։

Իսկ Դվինի ժողովից հետո երկար ժամանակ անց Սուրեն (Սվիրինե) պարսից իշխանին սպանող վոհն Վարդանը՝ հայերից հալածվելով՝ գաղթեց Կոստանդնուպոլիս Խոսրովի (Խուսարոյի) [թագավորության] 40 թվին և Հուստինիանոսի՝ 30 թվին, վորը սուրբ Սոփիան կառուցեց։ Հենց վոր թագավորը նկատեց Վարդանի չհաղորդվելը [հույների հետ], հրամայեց ժողով գումարել և հրավիրեց հայոց եպիսկոպոսներին ու վարդապետներին[10]։ Եվ հայերը հավատացին ու նզովեցին Որիգենեսին, Եվագրին, Դիդիմոս Նեստորականին, հակոբիկներին, հուլիանիտներին և գայանիտներին և Եվտիքեսի աղանդի բոլոր մասնակիցներին։ Բայց երբ վերադարձան Հայք (Սոմխիթ), վոմանք հաստատուն մնացին [Քաղկեդոնին], իսկ վոմանք շեղվեցին՝ Հովհան կաթողիկոսի որոք, և [վերջինները] գիր գրեցին աղվանից կաթողիկոսին և Վրթանես (Վորտանես) Սյունյաց*) եպիսկոպոսին, վոր՝ «ինչպես Պետրոսն ու Գրիգորը, մեր առաջին եպիսկոպոսներն, ուսուցին հավատքի մասին, նաև սուրբ աստված-ը, վոչ կկրճատեմ և վոչ էլ կավելացնեմ»։ Նմանապես [գրեցին] և վրացիներին, բայց նրանք զայրացան [և] չընդունեցին[11]։

Եվ նորից՝ Մորիկ (Մավրիկ) թագավորի որոք՝ Կոստանդնուպոլիս հրավիրված Մուշեղ (Մուսլի) հայը չհաղորդվեց [հույների հետ], և նորից քննություն արին, և նորից գրով հաստատեցին ու երդում տվին չուրանալ [հույներին]։ Իսկ Հայք (Սոմխիթ) վերադարձածները չընդունվեցին Մովսես կաթողիկոսի և եպիսկոպոսների այն մասի կողմից, վորոնք Պարսից և Հայոց (Սոմխիթի) սահմաններում էին գտնվում։ Իսկ նրանք իրենց կաթողիկոս կացուցին Թեոդորոս Կոգովիտեցուն (Կոկուստեցուն) Բագարան

*) Բնագրում՝ «Սաոլուսա» — Սաոլոյին (sic):

(Պարսկաստան) յերկրից։ Յեվ բազում ընդդիմադրություն յեղավ յերկուսի միջև Քրիստոսի յերկու բնության ու Քաղկեդոնի ժողովի մասին [ամբողջ] 14 տարվա [ընթացքում], մինչ Մորիկ (Մավրիկ) կայսեր մահը։ Յեվ Խոսրով (Խոսրո) թագավորը գրավեց Հայքը (Սոմխիթը) ու Աբրահամին կաթողիկոս նշանակեց, և ստիպեց [կամ] նզովել Քաղկեդոնի ժողովը կամ հեռանալ նրանից։ Յեվ նրանք (հայերը) նզովեցին[12]։

Ապա Հերակլ կայսրը իր թագավորության 23 տարին՝ հասնելով Հայք (Սոմխիթ)՝ հրամայեց մեծ ժողով գումարել, մի որով, Հայոց (Սոմխիթի) բոլոր յեպիսկոպոսներից ու վարդապետներից Յեզր (Եզրա) կաթողիկոսի և բոլոր ազատների (ազատթա) հետ Թեոդոսիուպոլսում, [և] քննեցին յերկու բնության ու Քաղկեդոնի ժողովի [հարցը]. և համաձայնեցին հայերին սուրբ գրվածքները, և յերդվեցին և իրենց իսկ ձեռքով գրեցին, վոր այլ ևս սրա հակառակ չեն լինի, և այսպես վերադարձան Դվին։ Իսկ Հովհան [Մայրագոմեցին] ճնշում էր գործ դնում այն յեպիսկոպոսների վրա, վորոնք [այն ժողովին] ներկա չեյին գտնվել, վորպեսզի չհամաձայնեյին Յեզրին (Եզրային), բայց նրանք էլ համաձայնեցին։ Ապա Հովհանն կշտամբում էր նրանց և թշնամություն ցույց տալիս նրանց հանդեպ, և Յեզրի (Եզրայի) մահից հետո համառոտած էր, վոր ինքը կստանա աթոռը՝ իշխանների աջակցությամբ[13]։

Իսկ յերբ Ներսեսին (Ներսեյին) վիճակվեց [գրավել] աթոռը, և նա այնքան էլ չէր վրդովվում, [Հովհանը] նրան էլ սկսեց կշտամբել։ Ապա [Ներսեսը] բերեց նրան բազում յեպիսկոպոսների ու վարդապետների առաջ և նրա բամբասանքը քննության յենթարկեց։ Յեվ աղվեսի ձևի դրոշմ կպցրին նրա ճակատին։ Յեվ այսպես [Ներսեսը] աքսորեց նրան ընկերներով հանդերձ դեպի Կովկաս։ Չընդունվելով նրանց (լեռնականների) կողմից էլ՝ [Հովհանը] Անաստասի մահից հետո կրկին վերադարձավ Հայք (Սոմխիթ), [ուր և] վախճանվեց ծերության մեջ։ Իսկ նրա պայթակցված բոլոր աշակերտները շեղվեցին ճշմարտությունից, և նրանց աղանդը ցանվեց նույն (Հայոց) յերկրում մինչ Հուստինիանոս (Իուստինոս) կայսրը[14]։

Ապա նա (Հուստինիանոս) կայսրը կանչեց Իսահակ կաթողիկոսին[15] իր յեպիսկոպոսներով հանդերձ Կոստանդնուպոլիս և միացրեց նրանց մեր տեր Հիսուս Քրիստոսի յերկու բնությանը՝ աստվածայինն ու մարդկայինը՝ մի դեմքում անխառն ու անբաժան դավանողների հետ, և սրա մասին գրով յերդվեցին, վորպեսզի

նրանց (հույների և հայերի) միջև սրա մասին այլևս չլինի հակառակություն։ Իսկ չերբ կրկին վերադարձան իրենց չերկիրը՝ [գտան, որ] Հայքում (Սոմխիթում) մնացածները տիրել էին նրանց վրա հունաց վերահսկողության [հսատատաման] պատճառով, [և] այս պատճառով հակառակորդները քննության չենթարկեցին Իսահակի ու նրա հետ գնացածների [վարմունքը], ասելով՝ «Ցեթե չեք վերադառնա [մեր] դավանությանը, և չեք նզովի նրանց (հույներին), այլ ևս չենք ընդունի ձեզ ձեր տեղերում»։ Իսկ նրանք՝ [քանի որ] մարդկային փառքը [գերադասում էին] աստծո փառքին, կրկին նզովեցին իրենցից հաստատվածը, որով հաղորդվել էին հույների (բերձենների) հետ։ Սրանից հետո հույները (բերձենները) գտան, որ [հայերը] չարիքներից անբուժելի չեն[16]։

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. *Ամբողջ այդ շարքը դրեթե բառացի թարգմանություն է* Catholici Armeniae-*ի* (*Migne*, PG. CXXXII, col. 1253, 1256) *հետևյալ հատվածի, միմիայն այն տարբերությամբ, որ թվական նշանները վրացի հեղինակը յուրահատուկ կերպով ունի հասկացած և բաց թողել, աղավաղած (հմմ. 16-րդ ծանոթության համեմատվածը)*. «Ὁ ἅγιος Γρηγόριος ὁ φωστήρ, ἔτη λ'. Ὁ ἅγιος Ῥωστάκης ὁ υἱὸς αὐτοῦ, ἔτη β'. Ὁ Βαρτανὲς, ἔτη γ'. Ὁ Γρηγόριος, ἔτη ιά. Ὁ Ἰουσὴκ, ἔτη ζ'. Ὁ Φαρνεσὲκ ἀπὸ τῶν Ἀσπράκων χώρας, ἔτη δ'. Ὁ ἅγιος Νορσέσης, ἔτη λδ'. Ὃν ἀπέκτεινε Φάρμη. Εἶθ' οὕτως Ἰουσὴκ, ἔτη γ'. Ὁ Ζαγένης, ἔτη δ'. Ὁ Ἀσπουρακέσης. ἔτη ζ'. Οὗτοι οἱ τρεῖς τῆς Ἀγάρκ χώρας ἐπίσκοποι ἦσαν, ὄνομα μόνον ἔχοντες καθολικόν. Ἐπίσκοποι χειροτονεῖν οὐκ ἐτόλμων, ἐπειδὴ διὰ τὸν θάνατον τοῦ ἁγίου Νορσέση, ἐκωλύθησαν παρὰ τοῦ ἀρχιεπισκόπου Καισαρείας αἱ χειροτονίαι τῶν ἐπισκόπων τῆς μεγάλης Ἀρμενίας»։

2. *Այս՝ երկրորդ ապացույցն էլ դրեթե բառացի թարգմանություն է* Catholici Armeniae-*ի* (*Migne*, PG. CXXXII. 1256) *հետևյալ հատվածի, որ նախորդի անմիջապես շարունակությունն է*. «Εἶτα ὁ ἅγιος Ἰσαὰκ ἔλαβεν ἐξουσίαν χειροτονεῖν εἰς Ἀρμενίαν ἐπισκόπους, ὃς καὶ ἐπεσκόπησεν ἔτη μ'. Μετὰ δὲ χρόνους τινὰς βιαβάλλοντες τῷ Περσῶν βασιλεῖ, τῷ Βρὰμ Σαπῷ, τὸν ἴδιον βασιλέα Ἀρτασὴρ, καὶ τὸν ἅγιον Ἰσαὰκ, ὡς ὁμοφρονήσαντας ἐν τῇ βουλῇ αὐτῶν, κατέβαλον αὐτὸν ἀπὸ τοῦ θρόνου αὐτοῦ. Καὶ μετὰ τὴν ἔκπτωσιν τοῦ Ἰσαὰκ, τὸν Σορμὰγ (Σορμὰκ. sic. Լ. Մ.-Բ.) ἀπὸ τοῦ Ἀρζακεῖ τῇ προστάξει τοῦ τῶν Περσῶν βασιλέως, καὶ τῇ ἰδίᾳ αὐτῶν βουλῇ, ἐκάθισαν αὐτὸν καθολικὸν, διαβαλλοντες τὸν Ἰσαὰκ. Μισήσαντες δὲ αὐτὸν, κατέβαλον ἀπὸ τοῦ θρόνου αὐτοῦ, [καὶ] αἰτήσαντες τῷ τῶν Περσῶν βασιλεῖ, λέγοντες: «Δὸς ἡμῖν ἐκ τῆς χώρας σου, καὶ μὴ ἔστω ἡμῖν Ἀρμένιος». καὶ ἔδωκεν αὐτοῖς ὁ βασιλεὺς τὸν Περκισὸν (Περσικὸν. sic. Լ. Մ.-Բ.) τὸν Σύρον. καὶ μετὰ τρία ἔτη μισήσαντες καὶ αὐτὸν, κατέβαλον. Πάλιν ἔδωκεν αὐτοῖς τὸν Μουσούλιον τὸν Σύρον. Κἀκεῖνος δύο χρόνους καθίσας, ἐν πολλῇ θλίψει κατέλυσε τὸν βίον»։

3. *Տես հինգերորդ գլխի 52-րդ ծանոթ.*

4. *Այս՝ երրորդ ապացույցն էլ դրեթե բառացի թարգմանություն է* Catholici Armeniae-*ի* (*Migne*, PG. CXXXII, 1256) *հետևյալ հատվածի, որ նախորդի*

անմիջապես շարունակությունն է. «Η οὖν χειροτονία τῆς 'Ανατολῆς ἐκωλύθη ἐκ τῆς Καισαρείας, διὰ τὴν ἔκπτωσιν τοῦ 'Ισαάκ. Καὶ μετὰ ταῦτα ἀπερχόμενοι οἱ 'Αζάτοι τῶν 'Αρμενίων, παρεκάλουν τὸν ὅσιον 'Ισαάκ, μὴ μνημονεύειν τῶν πονηριῶν αὐτῶν, καὶ ὑποστρέφειν εἰς θρόνον αὐτοῦ. Ὁ δὲ, οὐκ εἰσήκουσεν αὐτῶν. Ὅθεν λοιπὸν διηγήσατο αὐτοῖς τὴν ὀπτασίαν ἣν ἑώρακε περὶ τῆς ἐκπτώσεως αὐτῶν, τῆς γενομένης, καὶ τῆς ἐσομένης. Δέδωκε δὲ αὐτοῖς ἀνθ' ἑαυτοῦ τὸν μακάριον Μαστήντζην, φύλακα τοῦ θρόνου αὐτοῦ. Καὶ μετὰ τὴν τελευτὴν τοῦ 'Ισαὰκ, καὶ τοῦ Μαστήντζη, ἐκάθισαν ἐπὶ τοῦ θρόνου ἱερατικοῦ τὸν Κιτὸν, τὸν ὄντα ἀπὸ τῆς κώμης 'Ατμησοῦ, ἔτη ιζ'. Ἐν ταῖς ἡμέραις δὲ τούτου προσετάχθησαν παρὰ τοῦ βασιλέως τῶν Περσῶν, χειροτονεῖν εἰς τὴν 'Αρμενίαν καθολικοὺς καὶ ἐπισκόπους μέχρι τῆς σήμερον»:

*5. Այս՝ չորրորդ տրգացն ևս գրեթե բառացի թարգմանությունն է* Catholici Armenae-*ի* (*Migne*, PG. CXXXII, 1256) *հետևյալ հատվածի, որը նախորդի անմիջապես շարունակությունն է.* «Εἶτα 'Ιωάννης ὁ Μαρτακουνῆς, ἔτη ς'. 'Αποϋπκένης ὁ ἀπὸ τῆς Μισοῦ τῆς κώμης ἔτη ε'. Ὁ Σαμουὴλ ὁ ἀπὸ 'Αρτασαὶ τῆς κώμης, ἔτη ιβ'. Ὁ Μουσέλης ὁ ἀπὸ τῆς κώμης 'Αρπηρεῖς, ἔτη ν'. Ὁ 'Ισαὰκ ἀπὸ τοῦ 'Αρκὰν, ἔτη ζ'. Ὁ Χριστοφόρος ὁ ἀπὸ τοῦ Κουβαρίτζη, ἔτη ζ'. Ὁ Λεόντιος ἀπὸ τοῦ 'Αρὲν, ἔτη γ'. Ὁ Νορσέσης ἀπὸ τοῦ 'Ασπαρὰζ, ἔτη θ'»:

*6. Տես նախորդ՝ հինգերորդ գլխի 12-րդ ծանոթ.*

*7. Այս՝ հինգերորդ տրգացն ևս գրեթե բառացի թարգմանությունն է* Catholici Armeniae-*ի* (*Migne*, PG. CXXXII, 1256–1257) *հետևյալ հատվածի, որը նախորդի անմիջապես շարունակությունն է.* «'Εν ταῖς ἡμέραις αὐτοῦ ἐγένετο ἡ σύνοδος εἰς πόλιν Τιβὴν, ἀπὸ τοῦ 'Απτισῶ Σύρου 'Ιακωβίτου. Μέντοι γε εἰ καὶ τὰς παραδόσεις τοῦ ἁγίου Γρηγορίου, καὶ τῶν ἄλλων πατέρων ἐξέκλιναν· ἀλλ' οὖν περὶ τὴν πίστιν, καὶ τὴν σύνοδον τὴν ἐν Χαλκηδόνι, καὶ περὶ τὰς δύο φύσεις τὰς ἐν Χριστῷ τῷ Θεῷ ἡμῶν, οὐδεμίαν ἀμφιβολίαν εἶχον, ἕως ἐτῶν ργ', ἀπὸ τῆς συνόδου τῆς ἐν Χαλκηδόνι, ἕως τῆς συνόδου Τιβήν. Καὶ λοιπὸν ἐξ ἐκείνου ἀπέστησαν ἀπὸ τῆς κοινωνίας τῶν Ῥωμαίων καὶ τὴν 'Ιερουσαλὴμ ἀναθεμάτισαν, καὶ τὴν σύνοδον Χαλκηδόνος, ὁμολογήσαντες μίαν φύσιν τοῦ Χριστοῦ, τῆς θεότητος καὶ τῆς ἀνθρωπότητος. προσέθεντο τὸ, ὁ σ τ α υ ρ ω θ ε ὶ ς, εἰς Τ ρ ι σ ά γ ι ο υ ὕμνον, πρὸς Ἅ γ ι ο ς ὁ Θ ε ό ς. Μετὰ ὅρκου καὶ ἀναθεματισμοῦ, καὶ μετὰ ἀλλήλων ἐγγράφως ἰδιοχειρὶ διέθεντο, μὴ χωρίζεσθαι τῆς τοιαύτης ὁμολογίας εἰς τὸν αἰῶνα. Τὸν δὲ Εὐτυχέα τὸν 'Ιακωβίτην, καὶ β' ἄλλους ἑταίρους αὐτοῦ, ὁ μὲν εἷς 'Ιουλιανίτης, ὁ δὲ ἕτερος, ἄλλης αἱρέσεως τυγχάνων, ἐπισκόπους χειροτονήσαντες, εἰς Μεσοποταμίαν ἀπέστειλαν»:

*8. Այս՝ վեցերորդ տրգացն ևս գրեթե բառացի թարգմանությունն է* Catholici Armeniae-*ի* (*Migne*, PG. CXXXII, 1257) *հետևյալ հատվածի, որը նախորդի անմիջապես շարունակությունն է.* «Μετὰ τοῦτο ὁ Εὐανέσης ὁ ἀπὸ Καπεληνῆς, ἔτη ιζ'. Ὁ Μωϋσῆς ἀπὸ τοῦ 'Ελιβάρετ, ἔτη λ'. Ὁ 'Αβραὰμ ἀπὸ 'Αραστουνῆς, ἔτη κγ'. Ὁ 'Ιωάννης ἀπὸ τοῦ Πακρανα, ἔτη κζ'. Κωμητὰς ὁ καὶ τῆς κώμης 'Ελτζησαρακιτζου, ἔτη η'. Ὁ Χριστοφόρος ὁ 'Αβραμίτης, ἔτη γ'. Ὁ Ἔσδρας ὁ ἀπὸ τοῦ Νικᾶ, ἔτη ι'. Ὁ Νορσέσης ὁ ἀπὸ τοῦ 'Ισχνᾶ, ἔτη κ'. Ὁ 'Αναστάσιος ὁ ἀπὸ τοῦ Κορᾶ, ἔτη ζ'. Ὁ 'Ισραὴλ ὁ ἀπὸ Τμησοῦ τῆς κώμης, ἔτη ι'. [Ὁ 'Ισαὰκ ἀπὸ τοῦ Βαζακαστρίου]»:

*9. Այս՝ յոթերորդ տրգացն ևս գրեթե բառացի թարգմանությունն է* Catholici Armeniae-*ի* (*Migne*, PG. CXXXII, 1257) *վերջին հատվածի.* «Β α σ ι λ ε ῖ ς 'Α ρ μ ε ν ί ω ν, ἀπὸ τοῦ Βαλαρέως ἕως Τασὴρ, καὶ μετὰ τοὺς ἡγεμόνας. Κοινουνὴς ὁ Πρίτης, ἔτη δ'. Ὁ Δαβὶδ ὁ Σαρωνῆς, ἔτη γ'. Τοτρούσης ὁ Ῥουστανῆς, ἔτη ι'. Ὁ 'Αμα-

ζάτης ὁ Κουροπάλατος, ἔτη δ'. Γρηγόριος ὁ ἀδελφὸς αὐτοῦ, ἔτη κδ'. Σώτης Πακρατου-νής, ἔτη γ'. Ὁ Νερσέχης Καμψαρακάν, ἔτη γ'. Ὁ Πακρατουνὴς Συμπάτιος»:

10. Այս՝ ութերորդ արգասի առաջին մասը բառացի թարգմանություն է Narratio de rebus Armeniae-ի (*Migne*, PG. CXXXII, 1245) համապատասխան հատվածի, որը մենք առաջ ենք բերել նախորդ՝ հինգերորդ գլխի 61-րդ ծանոթության մեջ սկսած խոսքերից «Μετὰ δὲ χρόνον πολὺν» և մինչ «ἐπισκόπους καὶ διδασκάλους τοὺς τῶν Ἀρμενίων»:

11. Նույն այս՝ իններորդ արգասի վերջին մասը սկսած նախադասությունից «Յետ հայերը համաձայնեցին» մինչ այստեղ բառացի թարգմանություն է Narratio de rebus Armeniae-ի (*Migne*, PG. CXXXII, 1245) հետևյալ հատվածների. «Τότε, ἀναθεμάτισαν τὸν Ὠριγένην, τὸν Εὐάγριον, τὸν Δίδυμον, τοὺς Νεστοριανούς, τοὺς Ἰακωβίτας, τοὺς Ἰουλιανίτας, καὶ τοὺς Γαϊανίτας, καὶ τοὺς ἅπαξ ἁπλῶς ἔχοντας τὴν τοῦ Νεστορίου [ἴσ. Εὐτύχους] αἵρεσιν. Ὑποστρεψάντων δὲ αὐτῶν εἰς Ἀρμενίαν, οἱ μὲν προθύμως ὑπεδέξαντο τὴν ἕνωσιν. οἱ δὲ ἐπορνεύσαντο ἐν ταῖς ἡμέραις Βοανέση [αλ. Εὐανέση] τοῦ Καθολικοῦ, περὶ ὧν οὐκ ἔστι νῦν λέγειν κατὰ μέρος. Ἔγραψαν τοίνυν ἐπιστολὴν πρὸς τὸν Ἀπᾶς τὸν καθολικὸν Ἀλβανίας χώρας, περιέχουσαν οὕτως. Ἐλθὲ μεθ' ἡμῶν ἑνωθεὶς τῇ πίστει, ἐν τῷ λέγειν μίαν φύσιν Χριστοῦ τοῦ Θεοῦ, καὶ εἰς τό, Ἅ γ ι ο ς ὁ Θ ε ό ς, Ὁ σ τ α υ ρ ω θ ε ὶ ς δ ι' ἡ μ ᾶ ς. Ὁ δὲ οὐ συγκατέθετο λέγων. ὅτι Ὁ Πέτρος καὶ ὁ Γρηγόριος οἱ πρὸ ἐμοῦ ὄντες, οὕτως ἔλεγον, τό, Ἅγιος ὁ Θεός. ἐγὼ δὲ οὐ προστίθω, οὔτε ὑφέλω. Ὁμοίως καὶ πρὸς τοὺς Ἴβηρας ἔγραψαν. Οἱ δέ, σφοδρῶς ἀντειπόντες, οὐ κατεδέξαντο»:

12. Այս՝ տասներորդ արգասի աղբյուրը դեռ անորոշ է. Միայն տարօրինակ է, որ Հովհաննի փոխարեն Թեոդորոսն է կոչված «Կողովիտեցի Բագարանի յերկրից» (Նիկուստեի Պաղրատունու բնագրում) = τοῦ Κωκοστὰ Παγκράτων χώρας; հմմ. հինգերորդ գլխի 68-րդ ծանոթությունը:

13. Այս՝ տասնումեկերորդ արգասը համառոտություն է Narratio de rebus Armeniae-ի (*Migne*, PG. CXXXII, 1252—1253) համապատասխան հատվածի, որ մենք առաջ ենք բերել նախորդ՝ հինգերորդ գլխի 79-րդ ծանոթության մեջ:

14. Այս՝ տասնուերկուերորդ արգասը կրկնություն է ընդհանուր գծերով Narratio de rebus Armeniae-ի (*Migne*, PG. CXXXII, 1253) համապատասխան հատվածի, որ մենք առաջ ենք բերել նախորդ՝ հինգերորդ գլխի 83-րդ ծանոթության մեջ:

15. Այս՝ «Իսահակ կաթողիկոսը» այն Սահակը չէ կամ, ուղիղ ասած, այն Սահակներից և ոչ մեկը չէ, որ հայտնի յէ «Գիրք թղթոց»-ից («Բացայայտութիւն համաձայն աստուածաբանութեան հոգւոց հարցն որոց յառ առաքելանման աւանդիցն եկեղեցւոյ Քրիստոսի, հանդերձ հաւատարմութեամբ ճշմարիտ ուղղափառ դաւանութեան Հայաստանեայց, առաքելոյ սրբոյ վարդապետին Սահակայ հայոց կաթողիկոսի և մեծի թարգմանչի ընդդէմ երկաբնակաց նեստորականացն»), էջ 413—482, և «Կանոնագրքէ»-ից («Հարցմունք կանոնականք Յովհաննու Սիւնականի և տրնթերցելեալ պատասխանիք նմին Սահակայ հայոց կաթողիկոսի և նորին աթոռակցաց եպիսկոպոսաց բազմաց»), Ղլանեան, Կանոնգիրք Հայոց, 131—135, A. *Maius*, op. cit., 300—302, հմմ. *С. Тигранян*, Древне-армянская Книга канонов [„Записки Рос. Акад. Наук“, VIII сер., т. XIII № 3], Пгр. 1918, стр. 67.

16. Այս՝ տասնուերեքերորդ և վերջին արգասը գրեթե բառացի թարգմանություն է Narratio de rebus Armeniae-ի (*Migne*, PG. CXXXII, 1253) հե-

տեղյալ հատվածի. «Οἱ δὲ μαθηταὶ αὐτῶ πληθυνθέντες, πάντες ἐξέκλιναν ἀπὸ τῆς ἀληθείας. καὶ διεσπάρη ἡ αἵρεσις αὐτὴ ἐν τῇ χώρᾳ ἐκείνῃ, ἕως Ἰουστίνου Καίσαρος τῷ ε̄ ἔτει, ἐν ᾧ καιρῷ καλέσας τὸν Ἰσαὰκ τὸν καθολικὸν σὺν τοῖς ἐπισκόποις εἰς Κωνσταντινούπολιν, ἥνωσεν αὐτοὺς τοῖς ὁμολογοῦσι τὰς δύο φύσεις τοῦ Χριστοῦ καὶ Θεοῦ ἡμῶν, τῆς Θεότητος καὶ τῆς ἀνθρωπότητος, ἐν μιᾷ ὑποστάσει, ἀφύρτως, ἀδιαιρέτως. καὶ διὰ τοῦτο ἐγγράφως ὤμοσαν, τοῦ μηκέτι γενέσθαι εἰς αὐτοὺς ἀντιλογίαν. Πάλιν δέ, ὑποστρεψάντων αὐτῶν, οἱ καταλειφθέντες ἐν τῇ Ἀρμενίᾳ, ἐδυσχέραινον τῇ τούτων ἐπιστασίᾳ, ὡς ὁμοφρονησάντων μετὰ τῶν Ῥωμαίως. Καὶ λοιπὸν στάσεις καὶ συζητήσεις ἐποίουν μετὰ τοῦ Ἰσαὰκ καὶ τῶν συναπελθότνων αὐτῷ, λέγοντες, ὅτι «Ἐὰν μὴ στραφῆτε καὶ ἀναθεματίζητε αὐτούς, οὐ δεχόμεθα ὑμᾶς εἰς τόπον ἡμῶν». Αὐτοὶ δὲ ἀγαπήσαντες τὴν δόξαν τῶν ἀνθρώπων, ἢ τὴν δόξαν τοῦ Θεοῦ, πάλιν ἀνεθεμάτισαν πρῶτον ἑαυτούς, ὡς κοινωνήσαντας τοῖς Ῥωμαίοις. Εὑρέθησαν δὲ ἀνίανοι ἐν ταῖς κακίαις»:

— *Ի վերջո, դնում ենք «Պատմվածք* Պատմութին*-ից» յերկասիրության մեջ հիշված փոքրիկ կարգի աշխարհագրական և անձանց անունների* (**Ortsnamen und Personennamen**-*ի) համեմատական աղյուսակը վրացերեն, հայերեն և հունարեն.*

| Վրացերեն | Հայերեն | Հունարեն |
|---|---|---|
| *Ռոստակե* | *Արիստակես* | Ῥωστάκης |
| *Որթան* | *Վրթանես* | Βαρτανὲς |
| *Գրիգոլ* | *Գրիգորիս* | Γρηγόριος |
| *Ոսիկ* | *Հուսիկ* | Ἰουσὴκ |
| *Փարնեբասխ* | *Փառներսեհ* | Φαρνεσὲχ |
| *Ասպրականեթա* | *Ասպրակունյաց* | τῶν Ἀσπράκων χώρας |
| *Ներսեհ* | *Ներսես* | Νορσέσης |
| *Սահակ ՚ Սաակ* | *Սահակ* | Ἰσαὰκ |
| *Վրամշապուհ* | *Վռամշապուհ* | Βρὰμ Σαπῶ |
| *Սաուրմագ* | *Սուրմակ* | Σορμὰγ |
| *Ծալկելի* | *Ծաղկեցի* | τοῦ Ἀρτζακὲ |
| *Բրքիշո (Բրքիրո?) ՚ Գերկիսո* | *Բրքիշո* | Περκισῶ (Περσικῶ ?) |
| *Սամոել* | *Շմուել* | |
| *Մուսլելի* | *Մուսլեցի* | τὸν Μουσούλιον |
| *Մաստոց* | *Մաշտոց* | Μαστήντζη |
| *Կիտ* | *Գյուտ* | Κίτ |
| *Ատմիսո* | *Ութմիս* | Ἀτμησῶ |
| *Մանդակունի* | *Մանդակունի* | Μαρτακουνῆς |
| *Պաղնիկե* | *Բաբգեն* | Ἀπουϊτκένης |
| *Միսո* | *Ութմիս* | Μισῶ |
| *Արտաշ* | *Արտազ* | Ἀρτὰσ |
| *Մուսելի* | *Մուշեղ* | Μουσέλης |
| *Ալպիր* | *Այլաբերդ* | Ἀρπὴρ |
| *Ավկեկի* | *Ողկեցի* | τοῦ Ἀρκὰν |
| *Կուբավլեցելի* | *Տիրանեցի* | τοῦ Κουβαρτίζη |
| *Լեոնտի* | *Ղևոնդ* | Λέοντιος |

| | |
|---|---|
| *Առնաստեցի* | τοῦ 'Αρὲν |
| *Ասպարակեցի* | τοῦ 'Ασπαράξ |
| *Դվին* | Τιβὴ, Τιβὴν |
| *Աբդիշո* | 'Απτυσῶ |
| *Հովհան* | Εὐανέσης |
| *Գաբեղենացի* | ἀπὸ Καπεληνῆς |
| *Եղիվարդեցի* | τοῦ 'Ελιβάρετ |
| *Ռշտունյաց* | ἀπὸ 'Αραστουνῆς |
| *Բագարանցի* | τοῦ Πακρανα |
| *Կոմիտաս* | Κωμητᾶς |
| *Արուզաձորանեցի* | 'Ελτζησαρακιτζω |
| *Ապահունեցի* | ὁ 'Αβραμίτης |
| *Եզր* | Ἔσδρας |
| *Նիգայեցի* | τοῦ Νικᾶ |
| *Իշխանցի* | τοῦ 'Ισγνᾶ |
| *Ակոռեցի* | τοῦ Κορᾶ |
| *Ութմիսեցի* | ἀπὸ Τμησοῦ |
| *Վաղարշ* | Βαλαρέως |
| | |
| *Արտաշիր* | Τασὴρ |
| *Գնունի* | Κοινουνῆς |
| *Սահառունի* | ὁ Σαρωνῆς |
| *Թեոդորոս* | Τοτρούσης |
| *Ռշտունի* | ὁ Ῥουστακῆς |
| *Համազասպ* | 'Αμαζάπης |
| *Աշոտ* | Σώτης |
| *Բագրատունի* | Πακρατουνὴς |
| | |
| *Ներսեհ* | Νερσέχης |
| *Կամսարական* | Καμψαρακὰν |
| *Սմբատ* | Συμπάτιος |
| *Սուրեն* | Σουριὲν |
| *Վարդան* | Βαρτᾶς |
| *Խոսրով* | Χοσρῶ |
| *Կողովիտեցի* | Κωκοστᾶ |
| *Բագարան* | Παγκράτον χώρα |

*ից, ստուգում ենք և ժամանակագրական այլուստին բառ* ա.նարեն *աղբյուրների՝*

| Քանի տարի | | | Քանի տարի | |
|---|---|---|---|---|
| *21* | *30* | *Փառներսեհ* | *4* | *4* |
| *20* | *2* | *Ներսեհ* | *4* | *34* |
| *3* | *3* | *Հուսիկ* | - - | *3* |
| *11* | *12* | *Սահակ* | *4* | *4* |
| *6* | *6* | *Ասպուրակես* | *7* | *7* |

| | | |
|---|---|---|
| Սահակ | 40 | 40 |
| Գյուտ | 17 | 17 |
| Հովհան Մանդակունի | 6 | 6 |
| Բաբգեն | 5 | 5 |
| Սամվել | 11 | 12 |
| Մուշեղ | 50 | 50 |
| Իսահակ | 7 | 7 |
| Քրիստափոր | 6 | 6 |
| Ղևոնդ | 3 | 3 |
| Ներսես | 9 | 9 |
| Հովհան Գաբեղենացի | 17 | 17 |
| Մովսես | 30 | 30 |
| Աբրահամ | 23 | 23 |
| Հովհան Բագարանցի | 26 | 26 |
| Կոմիտաս | 8 | 8 |
| Քրիստափոր | 13 | 3 |

| | | |
|---|---|---|
| Եզր | 10 | 1 |
| Ներսես Իշխանցի | 8 | 2 |
| Անաստաս | 6 | |
| Իսրայել | 10 | 1 |
| [Իսահակ] | — | |
| Վաղարշ | | |
| Արտաշիր | — | — |
| Գնունի պատրիկ | 4 | 4 |
| Դավիթ Սահառունի | 3 | 3 |
| Թեոդորոս Ռշտունի | 10 | 10 |
| Համազասպ կուրապաղատ | 4 | 4 |
| Գրիգոր | 24 | 24 |
| Աշոտ Բագրատունի | 3 | 3 |
| Ներսեհ Կամսարական | 3 | 3 |
| Սմբատ Բագրատունի | 12 | — |

## Է.

## ԴԱՉԻ (IX—X Դ.)

## «ՅԵՊԻՓԱՆ ԿՅՈՒՊՐԱՑՎԼՈ ՄԵԿՆՈՒԹՅՈՒՆ ՍԱՂՄՈՍԱՑ ԴԱՎԹԻ»

*«Մեզ է հասել ե* Ցեպիփաճ Կյուպրացվլո *«Մեկնությունն սաղմոսաց Դավթի», վոր փոխադրել է հայերենից վոմն* Դաչի-ն», *— այսպես է սկսում* კორნ. კეკელიძე *(Վրաց գրականության պատմություն, I, 140) իր տեսությունը Դաչիի գրական գործունեության մասին, և ապա շարունակում. «Ո՞վ է այս Դաչին, մենք չգիտենք, սակայն միայն մի բան պարզ է, վոր նա իններորդ դարու վերջերի և տասներորդի սկզբների գործիչ է», և «այս այնտեղից է յերևում, վոր իր յերկասիրությունը նա ուղարկել է Ստեփան Տբեթցուն (Ստեփանե Մտբեվարիին), վորը... առաջին յեպիսկոպոսը յեղավ նշանակված Աշոտ Կուխի (* † 918 *թ.) հիմնած Տբեթի աթոռի վրա»։ Ըստ* ე. თაყაიშვილი *(Ցերեք պատմական քրոնիկա,* XVII*). նա ժամանակակից է Ստեփան Տբեթցու 881—923)։*

*Այս մեկնության կցված գրությունից հանուն Ստեփանին՝ Դաչին բացատրում է, թե ինչ պայմաններում նրան վիճակվեց կատարել հիշյալ թարգմանությունը, վորտեղից և քաղել ենք մենք մեզ հետաքրքրող հատվածները, վոր առաջ ենք բերում թարգմանաբար՝ համաձայն վրացերեն բնագրի, վոր քանիցս հրատարակվել է, այն է. 1)* ე. თაყაიშვილი *— «Յերեք պատմական քրոնիկա» վրացերեն, Տփղիս 1890, եջ* X—XIII. *2)* თ. ჟორდანია *— «Քրոնիկաներ», վրացերեն, 1892, եջ 99—101. և 3) նույն* ე. თაყაიშვილი — «Описание рукописей Общества распространения грамотности среди грузинского населения», т. II, 1906—1912, стр. 640—643 *(վերջինում հանդերձ ռուսերեն թարգմանությամբ)։*

## [ՀԱՅԵՐԵՆ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅՈՒՆՆԵՐՆ ԱՆՎՍՏԱՀԵԼԻ ԵՆ]

*...Երկար ժամանակ ջերմեռանդությամբ փնտրում էի սաղմոսների մեկնությունն այն գրքում, որ գրեց մեր սուրբ հայրը, Կյուպրացի եպիսկոպոս Եպիփանը, բայց չգտա այն վրացերեն. այն գտա հունարեն, սակայն չկարողացա վերծանել, քանի որ այն [ինձ համար] անմատչելի և անգնահատելի աղբյուր էր. ապա [նույնը] գտա հայերեն՝ գրված նույն կարգով և նույն թվով, ինչպես և հունարենը, նախանձեցի հայերին, սակայն վախեցա թարգմանել, որովհետև անզգույշ թարգմանությունները մեծ կշտամբանք են առաջացնում*[1]*։*

*Իսկ յեթե վոք առաջին անգամ լրիվ թարգմանե, յերկրորդ թարգմանությունը կերևա նրան հակառակ...*

*Դյուրին է թարգմանել այս հայերենից. աստված, փառաբանիր նրա հոգին։*

### ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ

1. Համ. տասնչորսերորդ գլխի 3-րդ ծանոթությունը։

## Ը.

# ՍՏԵՓԱՆ ՏԲԵԹՑԻ (IX—X Դ.)

## «ԳՈԲՐՈՆԻ ՎԿԱՅԱԲԱՆՈՒԹՅՈՒՆԸ»

Ինչպես Իվ. Ջավախիշվիլու (Հին վրացական պատմական գրականությունը, 91–92) և Կոռն. Կեկելիձեյի (Վրաց գրականության պատմություն, I, 143) հետազոտություններից յերևում ե, Ստեփան Տբեթցին (Ստեփանե Մտբևարին) իններորդ դարու վերջերի և տասներորդի առաջին քառորդի գործիչ ե: Յերբ Աշոտ իշխանաց-իշխանն, վորը Կուխի մականունով եր հայտնի, Տբեթի յեպիսկոպոսական աթոռը հիմնեց, վերջինիս անդրանիկ յեպիսկոպոս Ստեփանին կարգեց, հետևապես՝ տասներորդ դարու սկզբում, քանի վոր Աշոտ Կուխին 918 թվին վախճանվեց. «Ստեփանը,— Կ. Կեկելիձեյի (ibid.) ասելով,— իսկապես հռչակավոր և բեղմնավոր գրող ե յեղել: Նրան, ինչպես յերևում ե, հետաքրքրում եր մեկնաբանական (եգզեգետիկ) գրականությունը, վորովհետև Նաչին Յեպիփան Կյուպրացու Սաղմոսաց մեկնության իր թարգմանությունը նրան եր ուղարկել ծանոթանալու, այսինքն խմբագրելու և գնահատականը տալու (ռեցենզիայի) համար... բայց Ստեփանը ավելի հայտնի յեր վորպես վկայաբան (հագիոգրաֆ)», և «սրա մասին մենք տեղեկանում ենք [ի միջի այլոց] ...այն յերկասիրությունից, վոր կոչվում ե Վկայաբանություն Գոբրոն սուրբ վկայի, վորին հանեցին Ղ.վելի բերդից»:

Իր յերկասիրության մեջ Ստեփան Տբեթցին նկարագրած ունի ամիր Աբուլ-Կասիմի արշավանքը Հայաստան, Հայաստանի ավերումն և արևելյան Վրաստանի հափշտակումը, վորի ժամանակ ձերբակալեցին և նահատակեցին Գոբրոնին» (Իվ. Ջավախիշվիլի, op. cit., 92): Միաժամանակ տրվում ե տեղեկություն և Սմբատ խոստովանողի նահատակության մասին, վորը տեղի ունեցավ, ըստ հայկական աղբյուրների, 914 թվին: Ըստ այսմ

և ի նկատի ունենալով այն հանգամանքը, վոր այս յերկասիրությունը Ստեփանը գրել է, ինչպես ինքն է ասում («Վրաստանի դրախտը», 393), «Աշոտ իշխանաց-իշխանի հրամանով» պարզ է, վոր այն պետք է վերագրել 914—918 թ. թ. (հմմ. Ի. Ջավախիշվիլի, op. cit., 91—92. Կ. Կեկելիձե, op. cit., 144):

«Բացի նրանից, վոր մեր պատմիչը,—Իվ. Ջավախիշվիլու (op. cit., 96) ասելով,—Վրաստանի և Հայաստանի քաղաքական կացության ու Աբուլ-Կասիմի արշավանքի կենդանի և ճիշտ պատկերն ունի նկարագրած, նրա յերկասիրությունն ուշադրության արժանի յե նաև իբրև վրաց հոգևորականության և Մեսխեթի կառավարիչ շրջանների զգացմունքների բնորոշող մի հիշատակարան»։ Յեվ իրոք, «Ստեփան Տբեթցու յերկասիրությունը,—նույն գիտնականի ասելով (ibid., 95),—այն ժամանակաշրջանին է վերաբերում, յերբ Վրաստանում տեղի ուներ անշեղ պայքար միավորման համար։ Այս պահին վրացիների և հայերի միջև մրցումն ու թշնամություն եր ընկավ։ [Յեվ] այս պատճառով է, վոր Ստեփան Տբեթցու կրքոտ՝ ալեկոծությամբ լի՝ զգացմունքը դեպի հայերը և կրոնական ատելությունն եր ազգայնական-քաղաքական գունավորում ունի»։

Գրեթե նույն կարծիքն է արծարծում Ստեփան Տբեթցու յերկասիրության մասին և Կ. Կեկելիձեն (op. cit., 144). «Այս յերկասիրությունը տիպիկ ներկայացուցիչ է այն գրական արտադրությունների, վորոնք մեզանում (վրացոց մեջ) գոյացան սկսած տասներորդ դարուց և վորոնք լի յեն ազգայնական-կրոնական ատելությամբ և զայրույթով դեպի հայերը»։ Ապա թե վոչ՝ ինչով բացատրել այն հանգամանքը, վոր Հայաստանի դժբաղդությունը Ստեփանը կապում է նրա «մեղապարտ» բնակիչների բացասական հատկությունների հետ՝ միանգամայն մոռանալով, վոր այդպիսի դժբաղդությունից զուրկ չի մնացել և Վրաստանը։

Ստորև ներկայացրած քաղվածքների թարգմանությունը կատարված է համաձայն «վկայաբանության» բնագրի միակ հրատարակության, վոր տվել է Մ. Սաբինինը իր «Վրաստանի դրախտ» աշխատության մեջ (եջ 393—400), հմմ. ռուսերեն համառոտությունը Սաբինի Полное жизнеописание святых грузинской церкви աշխատության II մասում (Спб. 1872, стр. 57—63):

Քաղվածքները գլխավորապես հետաքրքիր են իբրև նյութեր Հայաստանի պատմական աշխարհագրության վերաբերյալ։

## [ՀԱՅՔԻ ՎԻՃԱԿԸ X ԴԱՐՈՒ ՍԿԶԲՆԵՐԻՆ ՅԵՎ ՍՄԲԱՏ ԽՈՍՏՈՎԱՆՈՂԸ]

*[Ուրիշ հերձվածողների հետ միասին] մեղանչեց նաև Հայոց (Սոմխիթի) մեծ Տունը, ինչպես ասաց Յերեմիա մարգարեն իր վողբի մեջ...*

*Յեվ յենթարկ[վ]եց այն (Հայքը) [հրի և] սրի՝ չարաչար, գերության՝ [ան]ողորմ, սովա[մահ] ախտին և մահացու [և] անգութ բնաջնջման, վորոնց առաջն առնող (փրկիչ) վոչ վոք չկար. և նրանք (հայերը) ընկան ինչպես ծառերը գետնի վրա, համաձայն Յեսայա մարգարեյի խոսքերին..., վորովհետև նրանք դեն շպրտեցին առաքյալների կողմից քարոզած սուրբ կաթողիկե յեկեղեցվո ուղղափառ[1] դավանությունը և անպատվեցին վարդապետների կողմից սուրբ ժողովներում ասածը [ներ]շնչմամբ հաստատված յեկեղեցական որենքը։*

*Այս [իսկ] պատճառով դառնության արմատը տնկվեց նրանց (հայերի) մեջ և չարության վորոմը բուսավ, և հերձվածողական[2] մեղքը զարգացավ և կործանման պտուղն ավելացավ նրանց գլխին, քանի վոր մոտեցավ նրանց, վորովհետև Հայոց (Սոմխիթի) այն հողը հպարտացել է և նրա բնակիչները վատամիտ, ագահ[ասիրտ], հանդուգն և մեղանչկոտ, հպարտ, անգութ, ատեցող և ամեն տեսակ չարություններով լի յեն, վորի մեջ ապավեն չգտավ Քրիստոսը և վորի համար վատ մեռավ Քրիստոսը[3]։*

*Յեվ այս են նրա (Հայքի) սահմանները և [այլ և այլ] կողմանց (ձորերի) անունները. Վան[ան]դ (Վանդի), Աշոցնիք (Աշոցա), Ապահունիք (Ալապունիսի), Ծաղկոտն (Կալկոտնի), Ճակատք (Ճակատի), Կոգովիտի (Գոգովիտի) յերկու ձորը, Շարուրը (Շարուլը), [Վ]աս[պ]ուրականի (Ասուրագանի) տասներկու ձորը, Վայ[ոց] ձորի (Վայձորի) չորս ձորը, Դվինադաշտի (Դափին, Ադաշտի?) յերեք ձորը, Գեղարքունյաց (Գեղքունիա) չորս ձորը, Սյունյաց տաս ձորը, Տաշիրն ու Կողբոփորը (Կաքպաքարը)[4]։*

*Այս ութսունևյոթ ձորերն[5] աստծո անեծքով ավերվեցին՝ իբրև հետևանք նրանց (հայոց) մեղքերի, քանի վոր այս ձորերում* չգտնվեց [և վոչ մի] աթոռ ուղղափառ[6] յեպիսկոպոսների, և վոչ էլ ուղղափառ[7] վանք[եր] հավատացյալ կրոնավորների (մոնազոնների), ինչպես հարցրեց Աբրահամը աստծուն... Յեվ աստծո*

* *Բնագրում՝ «խելթա»* — ձեռքերում (sic), *պետք լինի «խեվթա»*—ձորերում:

համության տեղից շարժվեց արաբացոց (սարկինոսների) թագավոր Արուլասճ ամիրայի որդի Աբուլ-Ղասիմ կոչեցյալը և պարսից տերը, որոնք հպատակ էին վաթսուն մեծամեծ քաղաքներ և հնազանդ էին յոթն հզոր թագավորներ։

Սրանց բոլորին տալով զորք՝ բազում [և] ընտիր հազարապետներով (կապետներով)[8] հանդերձ, որոնք ղեկավար էին հազարանոց և տասնհազարանոց վաշտերի, [Աբուլ-Ղասիմը] մտավ Դվին քաղաքը, և նրա զայրույթի [ն հետևող] հեծությունը նախագուշակում էր Հայքի (Սոմխիթի) ավերմանը, ինչպես Նինուեցվոց կործանմանը, որպեսզի սրանք էլ գզզան։ Իսկ նրանց (հայերի) սրտերը տաքացած էին՝ ինչպես յերկաթը, և սառած՝ ինչպես տիեզերքը (?), քանի որ նրանց հերձվածողական մեղքը ապամանդյա յեղունգով էր [փորա]գրված յերկաթե տախտակի վրա։

…[Ցեվ] նմանվեց Հայոց (Սոմխիթի) այդ Տունն այն անմիտ մարդուն, որը [իր] հիմքը պայթակղության և փխրուն ավազի վրա դրեց, և հենց որ շինվածքը բարձրացրին՝ այն [իսկույն և եթ] փլավ, և մեծ եր փլչումը…

Ինչպես սովորություն ունին, նրանք (արաբները) նախ և առաջ ապառիկ [մնացած] հարկերը պահանջեցին, [նաև] ձիր (նվեր) և ընծաներ իրենց հազարապետներին, քանի որ [հայերը] նրա[նց] հարկատու էին։ Ապա անցյալի բեզարը խնդրեցին… և այսպիսի մեքենա[յական յեղանակներ]ով ծծեցին նրանց նյութական միջոցները, որպեսզի հեշտությամբ տիրեն, որ և յեղավ այսպես։

Ցեվ յերբ արաբացին (սարկինոսը) սկսեց հաղթահարել, չհանդիպեց ոչ մի փորձի (հնարի), որ հայոց թագավորը[9] ընդդիմադրություն ցույց տար կամ փրկություն որոներ, քանի որ աստված ճեղքել եր նրա թագավորությունը. ապա նա փախավ Աբխազաց (Աբխազեթի)[10] լեռների կողմը, ուր վերջ ի վերջոյ չխուսափեց մահից, իսկ [արաբացոց] այն արքան մեծ զայրույթով սկսեց նրան փնտռել, որպեսզի մահվան դատապարտի։

Ցեվ յեկան նրանք (արաբները) Գուրգեն իշխանաց-իշխանի մոտ Ղունելի բերդն[11], ուր գտնվում էին ազատները (ազնվականները) ու նրանց հետ Քրիստոսի վկա՝ յերանելի Գոբրոնը…։

Իսկ յերբ Սմբատ (Սումբաթ) թագավորը սուրբ Գոբրոնի մարտիրոսությունից հետո վերադառնում եր իր յերկիրը, ոչ մի հնարավորություն չգտավ բացի նրանից, որ մտներ Կապույտ (Կապոետ) բերդը։ [Այս Սմբատին] այն ժամանակվա բոլոր մարդիկ իմաստնագույն էին համարում։ Բայց յերբ սատծո ոգնու-

*թյունը նրանից հեռացավ և ամբողջապես ուժասպառ չեղավ, նա անել փակվեց [ամրոցում] և հետո ուներ բազմություն զորաց։ Բայց [Աբուլ-Ղասիմը] այդ բերդին էլ մոտեցավ, վոր և պայքարից հետո գրավեց, և Հայոց (Սոմխիթի) բոլոր իշխաններին, իշխանուհիներին և ազատներին (ազնվականներին) գերեց։*

*Ցեվ [Սմբատ] Թագավորին յերկար տանջանքից հետո սպանեց և գլխատած կախաղանի հանեց քաղաք Դվինի կենտրոնում*[12]։

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

*1. Այսինքն քաղկեդոնիկ կամ յերկաբնակ (դիոֆիզիտ)։*

*2. Այսինքն հակաքաղկեդոնիկ կամ միաբնակ (մոնոֆիզիտ)։*

*3. Տես հինգերորդ գլխի 12-րդ ծանոթությունը։*

*4. Հայաստանի աշխարհագրության այս պատկերը վերին աստիճանի հետաքրքիր է, վորքան էլ այդ՝ X դարու սկզբների նկատմամբ՝ չենք գտնում վոչ արաբական աշխարհագիրների և վոչ էլ հայ պատմիչների նկարագրության մեջ,* հմմ. *M. Brosset.* Histoire de la Géorgie. t. I, p. 276, n. 3:

*5. Տես նախորդ ծանոթությունը։*

*6. Տես 1 ծանոթ.։*

*7. Նույնը։*

*8. Վրաց «Կանոն»-ը, ըստ* Իվ. Ջավախիշվիլու *(Վրաց իրավունքի պատմությունը, վրացերեն, գ.* II, *մ. 1, Տփղիս 1928, եջ 142), նույն արաբ «դ՚ախրօ»-ն վոր* հազարապետ *է նշանակում։*

*9. Սմբատ խոստովանողի մասին է խոսքը։*

*10. Աբխազիա (Աբխազեթ) ասելով, վրացի հեղինակը, անկասկած, հասկանում է արևմտյան Վրաստանը։*

*11. «Ղվելի բերդ» (Ղուելիս ցիխե) հատուկ անունը վոմանք՝ կապելով հասարակ «Ղվելի» բառի հետ, վոր վրացերեն* պանիր *է նշանակում՝ մեկնել են ըստ այնմ և հասկացել «Պանրի բերդ» կամ «Պանրաբերդ», և այս է պատճառը, վոր* Կոնստանդին Ծիրանածինը *իր* De administrando imperio-*ի* XLVI *գլխում* (Migne, Patrologiae cursus completus, series graeca, t. CXIII, 357) *այդ բերդը կոչում է* Τυρόκαστρον: *Նույնը* Ասողիկը, *ինչպես ստորև կտեսնենք, անվանում է «Կաթնոյ բերդ»։ Ինչ վերաբերում է այդ բերդի աշխարհագրական դիրքին, հայտնի չէ, վոր այն գտնվելիս է յեղել Սամցխե-Մեսխեթում* (Իվ. Ջավախիշվիլի, *Վրաց ժողովրդի պատմություն,* II, *1914, եջ 323)։*

*12. «Դոբրոնի վկայաբանության» մեջ նկարագրած անցքերի մասին հայ մատենագրության մեջ, յեթե հաշվի չառնենք* Հովհան Դրասխանակերտեցու, Սամվել Անեցու *և* Ստեփանոս Որբելյանի *կցկտուր տեղեկությունները, փոքր ի շատե մանրամասն խոսում է* Ասողիկը *(Ստեփանոսի Տարոնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական, եջ 164—165) «...Ատրներսեհ Վրաց թագաւոր և Գագիկ իշխան Վասպուրականի, որ էր քեռորդի Սմբատայ, և Աշոտ որդի Շապհոյ, եղբօր Սմբատայ, ամենայն զօրօքն իւրեանց միաբանեալ ընդ նմա (Յուսուփայ), թողլով ի բաց զթագաւորն Սմբատ՝ նենգագործն նախանձեալ ի շինութիւն աշխար-*

նիս Հայոց։ Զոր իմացեալ Թագաւորն Սմբատ զնենգաւոր խորհուրդս նոցա՝ հանդերձ ունկամբք Հայոց և ամենայն զօրօք գնայ ի գաւառն Տաշրաց ի գիւղն Օձուն, և անդուստ յԱփխազս անցանէ։ Եւ Յուսուփ հետամուտ լինի մինչ յամուրն, և մարտուցեալ ընդ Կուկիոյ բերդին՝ առնու զնա։ Եւ յետ այնորիկ ի Տփղիս անցանէ։ Իսկ Թագաւորն անդրէն ի Շիրակ դառնայ։ Եւ ի գալ ամին միւսոյ դարձեալ սաստկագոյն զօրու եկեալ Յուսուփ յերկիրս Հայոց։ Որոյ ընդդէմ երթեալ ամենայն զօրուն Սմբատայ ... և մարտուցեալ ընդ միմեանս .. պարտեալ զօրն Հայոց՝ ի փախուստ դառնայ... Իսկ Թագաւորն Սմբատ փախստեալ ամրանայ յամուրն Կապուտայ։ Եւ հետամուտ եղեալ առաջին զօրուն՝ գայ ի գաւառն Բագրեւանդայ... և ապա երթեալ հասանէր յամուրն Կապուտայ։ Իսկ Թագաւորն ի դաւոյ ազատացն, որք առ իւրն էին մնացեալ, զարհուրեալ՝ ցուպ ի ձեռն առեալ [երթայ] առ Յուսուփնա ըզի Արուսաճի։ Եւ անօրէն Յուսուփ հանդերձ Թագաւորաւն ի Դուին չուեալ, և երթեալ մարտնչէր ընդ դղեակ բերդին, որում Երնջակ կոչեն, յորում ամրացեալ էին կանայք ազատացն և գանձք նոցին. և առեալ զամրոցն՝ անդրէն դառնայ ի Դուին։ Եւ ապա զԹագաւորն Սմբատ զփայտէ կախեալ սպանանէ ի Դուին քաղաքի յՅԿԴ Թուականին։

---

Թ.

# ԱՆԱՆՈՒՆ (ՄԻՆՉ X Դ.)

## ՕՐՀՆԵՐԳՆԵՐ ԳՐԻԳՈՐ ՊԱՐԹԵՎԻՆ

*Մի օրհներգի մեջ, որ պահված է Աթոնի Իվերոն կոչված մայրավանքի վրացերեն ձեռագրաց հավաքածուի X-րդ դարու մի գրչագրում, վրացիները դիմում են Ս. Գրիգոր Պարթևին (լուսավորչին) իբրև «լցնողի հայ աշխարհը աստվածային ուսման անուշահոտությամբ», այս բառերով.*

*«Հավատով դեպի բոլորի աստվածը հաստատեցիր Քրիստոսի յեկեղեցին անդրդվելի ժայռի վրա»։*

*Մի ուրիշ օրհներգի մեջ հին վրացիները Գրիգորին մաղթանք են ուղղում.*

*«Ո՜վ Գրիգոր, դու, որ Հայաստանի աստղն ես, հիշի՜ր քեզ հետ քո հոտին — փրկչի առաջ. շնորհի՜ր մեզ վողորմություն և ծավալի՜ր աշխարհում խաղաղություն»։*

(Տես *Н. Марр.* Крещение армян, грузин, абхазов и аланов св. Григорием (Арабская версия), — Спб. 1905, стр. 154 = Նույնը, *Մկրտություն Հայոց, Վրաց, Աբխազաց և Ալանաց ի սրբոյն Գրիգորէ, Թարգ.* Յուսիկ արքեպիսկոպոս, *Վաղարշապատ, 1911, եջ 92)*։

Ժ.

# ԱՆԱՆՈՒՆ (X Դ.)

## «ԴԱՎԻԹ ԳԱՐԵՋԵՑՈՒ ՎԱՐՔԸ»

*Դավիթ Գարեջեցին (Դավիթ Գարեջելին), որի անվան հետ են կապված Տփղիսի «Մամա-Դավիթ» կամ «Մթածմինդա» (Մթածմիդա) կոչված վանքը՝ նույնանուն լեռան լանջին, և «Գարեջի բազմալերանց» (Գարեջիս մրավալմթա) այրիվանքերից մեկը, այն է Ս. Դավթի մայրավանք-անապատը Ղարայազ կայարանից մոտ 30 կիլոմետր հեռավորությամբ գտնվող այսպես կոչված «Տվարածատափ»* (ივ. ჯავახიშვილი, *Վրաց ժողովրդի պատմություն*, II, *Տփղիս 1914, էջ 308) = «Տովարածատափ»* (Н. Адонц. Армения в эпоху Юстиниана. стр. 314), *այն է 5 վերստանոց քարտեզի «Տուրատափա»-ն, — այն գործիչներից է, որոնց սովորաբար «ասորի հայրեր» են կոչում և որոնք VI դարումն են մուտք գործել արևելյան Վրաստան (Քարթլ-Կախեթը) քարոզչական նպատակով։ Այս «ասորի հայրերի» մասին մինչև վերջին ժամանակները այն կարծիքն էր տիրապետում, որ նրանք իբր թե 13 հոգուց բաղկացած խմբով եկին միաժամանակ յեկել Վրաստան քրիստոնեությունն հաստատելու նպատակով։ 1925 թվին հրատարակած իր հատուկ ուսումնասիրության մեջ «Ասորի գործիչների Քարթլի գալու հարցի մասին»* (Bulletin de l'Université de Tiflis, № 6, *էջ 82—107, գերմաներեն ռեզյումեյով)* კორნ. კეკელიძემ *բավականին հաջող կերպով ապացուցեց, որ այդ «հայրերը» յեկել են արևելյան Վրաստան ոչ թե 13 հոգուց բաղկացած մի խմբով, այլ զանազան խմբերով և ընդհանուր թվով ոչ պակաս քան 17 հոգի, և այն էլ ոչ թե միանվագ, այլ զանազան ժամանակներ, և նրանց թվում առաջին հերթին Դավիթ Գարեջեցու խումբը բաղկացած իրեն՝ Դավթից, Ղունկիանոսից (Լուկիանե) և Դոդոյից, մոտավորապես 520 թվին։ Ինչ վերաբերում է այդ*

«հայրերի» ազգային (տոհմական) ծագմանը, դրա մասին տեղի ունի տարաձայնություն. մինչդեռ վրացագետներն ընդհանրապես և Գ. Փերաձեն (Die Anfänge des Mönchtums in Georgien, Gotha 1927, S. 39—40) ու Իվ. Ջավախիշվիլին (Վրաց ժողովրդի պատմություն, I, 1928 թ., 347) մոտավորապես այն կարծիքի են, վոր դրանք «ասորիներ» են յեղել, Թ. Ժորդանիան (Վրաստանի պատմություն, վրացերեն, Տփղիս 1889, եջ 183) ու Կ. Կեկելիձեն (op. cit., 102—105) նրանց բուն վրացիներ են համարում՝ Ասորիքում կրթություն ստացած։ Նույնպես տարաձայնություն է նկատվում այն հարցի վերաբերմամբ, թե ո՞վքեր եյին «ասորի» կոչված հայրերն ըստ դավանության։ Ընդհանուր տարածված կարծիքն այն է, վոր նրանք քաղկեդոնիկ-յերկաբնակներ են յեղել, վոր յեկել են վրաց միաբնակների դեմ պայքարելու (G. Peradze, Die Anfänge des Mönchtums in Georgien, S. 37—38. Իվ. Ջավախիշվիլի, op. cit., I, 342—343), մինչդեռ Կ. Կեկելիձեն (op. cit., 88—97) ջանում է ապացուցել, վոր նրանք հակաքաղկեդոնիկ-միաբնակներ եյին, վորոնք ապաստան եյին գտել Վրաստանում՝ Ասորիքում ընդհանրապես միաբնակների դեմ սկսած հալածանքներից փախչելուց հետո։

«Ասորի» կոչված «հայրերի» վարքերը գրված են զանազան հեղինակների ձեռքով, վորոնց թվում Դավիթ Գարեջեցունը, իբրև անանուն գրվածք, ըստ Կ. Կեկելիձեի (op. cit., 84—85), X դարու առաջին կեսի գործ է, թեև Գ. Փերաձեն (op. cit., 6—8) կարծում է, վոր այն գրի յե առնված վոչ առաջ քան 1074 թ. և վոչ ուշ քան XII դարու առաջին քառյակը։

Դավիթ Գարեջեցու «վարքը», ի թիվս այլ «վարքերի» հնագույն խմբագրությունների, հրատարակեց 1928 թ. Սարգիս Կակաբաձեն իր հատուկ աշխատության մեջ «Ասորի հայրերի վարուց նախատիպերը» (վրացերեն, եջ 36—42)։ Իսկ հետագա խմբագրությունը հայտնի յեր վաղուց համաձայն Մ. Սաբինինի 1882 թ. վոչ կրիտական հրատարակության («Վրաստանի դրախտը», եջ 265—286)։ Վերջինիս ռուսերեն թարգմանությունը ներկայացրած է նույն Մ. Սաբինինի գրքում Полное жизнеописание святых грузинской церкви (ч. I, Спб. 1871, стр. 133—140)։

Ստորև բերած հատվածի թարգմանությունը կատարված է ըստ Ս. Կակաբաձեի հրատարակության։

## [ԴԱՎԻԹ ԳԱՐԵՋԵՑԻՆ ՅԵՎ ՀԱՅԵՐԵՆ (ՍՈՄԽՈՒՐԻ)[1] ԼԵԶՈՒՆ]

*... Տեսնելով սուրբ [Դավիթ]ին, ինչպես նա կանգնած աղոթում էր և կաքավը նստած էր նրա վոտների կողքին, ոտարազգին (բարբարոսը) դիմեց նրան՝ ասելով. «Ո՞վ ես դու». և նա (Դավիթը) պատասխանեց հայերեն (սոմխուրի) լեզվով. «Յես մարդ եմ մեղավոր, ծառա մեր աստված Հիսուս Քրիստոսի...»...*[2]

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. «Սոմխուրի»-ի մասին մանրամասն տես Բ. պրակի 2 գլխի 8-րդ ծանոթությունը։

2. Կանգ առնելով այն հարցի վրա, թե ովքեր էյին երկնց ազգային (տոհմական) ծագումով «ասորի հայրերը», Ս. Կակաբաձե (op. cit., 16), ի միջի այլոց, հայտնում է. «Այն փաստը, վոր Դավիթ Գարեջեցին բարբարոսի հետ հայերեն էր խոսում, վոր հիշատակված է համապատասխան վարքից ինչպես նախատիպ, նույնպես և մետաֆրաստ խմբագրությանց մեջ, ինքնըստինքյան վոչինչ չի ապացուցում»։ Իսկ մենք, ընդհակառակը, կարծում ենք, վոր այս հանգամանքը վորոշ բան կարող է ապացուցել, յեթե, ի հարկե, ի նկատի ունենանք այնպես կոչված «Կախեթի և Հերեթի գիրքվածոց» այն տեղը, ուր X դարու անցքերի նկարագրության ժամանակ ասված է, վոր «մինչ Դինար թագուհին ու սրա վորդի Իշխանիկն Հերեթը հերձվածող էր» և այս Դինար թագուհին փոխադրեց (ուղղեց) Հերեթը հայոց հերձվածքից դեպի ուղղափառություն» (Վրաց տարեգրություններ, վրացերեն, հ. II, Դ. Չուբինովի խմբ., ՍՊԲ. 1854, էջ 97. հմմ. *Н. Марр*, Арк'аун. Монгольское название христиан в связи с вопросом об армянах--халкедонитах,—«Визант. Временник», т. XII, 1905, стр. 7)։ Վորոշ բան կարող է ապացուցել, ըստ մեր համոզմունքի, նաև այն, վոր Դավիթ Գարեջեցու մայրավանքը հետո «հավատացյալ» հայերի ամենասիրված ուխտատեղին է յեղել, վորը հրապուրել է դեպի իրեն ուխտավորներին վոչ միայն Տփղիսից ու Կախեթիցյալ Հայաստանից, և սրա ապացույց է 20-ի չափ հայերեն արձանագրությունները XIII—XVIII դարերի (որանց թվում մի քանիսը հայերեն-վրացերեն, իսկ մեկը՝ 1352 թ.՝ վրացերեն-հայերեն-պարսկերեն-ույղուրերեն), վոր մենք յերջական ենք հանել այդ մայրավանքի զանազան այրերում դեռ եղի 1921 թվին և առուցել 1929 թվին և վորը պատրաստած ունենք տպագրության աշխատության մեջ «Հայերեն արձանագրությունները Վրաստանում» (այդ արձանագրություններից մի քանիսի մասին առայժմ տես. Լ. Մելիքսեթ-Բեկ, Տփղիսի Վանքի հիմնադրության հարցի շուրջը, վրացերեն, «Bulletin de l'Université de Tiflis». IV, 1924, էջ 87 et pass. Լ. Մելիքսեթ-Բեկ, *Սայաթ-Նովա*, վրացերեն, Տփղիս 1930, էջ 27, 60, ծանոթութ. 1)։ Ի դեպ, արժանի յե հիշատակել, վոր այս «Գարեջեցի» վանահայրն է, վոր հիշվում է Ստ. Որբելյանի պատմության կն գլխում («Համթայարն Գարշտէուցն», Տփղիս 1911 թ. հրատ., էջ 355)՝ «Գարեջէուցն» ․«Գարջաէուցն»։

---

ԺԱ.

# ԳԵՈՐԳ ՄԵՐՉՈՒԼ (X Դ.)

## „ԳՐԻԳՈՐ ԽԱՆՁԹԵՑՈՒ ՎԱՐՔԸ"

*Գեորգ Մերչուլը (Գիորգի Մերչուլին), որն ապրում էր* X *դարում, հեղինակ է «Գրիգոր Խանձթեցու վարք» կոչված հագվագյուտ յերկասիրության, որ գտնվում է Յերուսաղեմի Հունաց պատրիարքարանի մատենադարանի վրացերեն ձեռագրերներից մեկում (իբրև* unicum): *Այդ յերկասիրությունը վերստին հրապարակ հանեց և լույս ընծայեց հանգերձ ռուսերեն թարգմանությամբ* **Ն. Մառը** *իր ստվար աշխատության մեջ* **„Георгий Мерчул. Житие св. Григория Хандзтийского. Грузинский текст. Введение, издание, перевод" [Тексты и Разыскания по армяно-грузинской филологии, кн. VII]. Спб. 1911:** *Իսկ* **Ն. Մառի** *աշխատության համաձայն նույնը լատիներեն թարգմանությամբ հրատարակեց Paul-Peeters-ն իր* Histoire monastique Géorgiennes-*ի մեջ* [Extrait des „Analecta Bollandiana", t. XXXVI—XXXVII], Bruxelles 1923:

*Ինչպես ինքը հեղինակը՝ Գեորգ Մերչուլն ասում է (եջ պ), նա իր յերկասիրությունը գրել է Գրիգոր Խանձթեցու մահվանից յինսուն տարուց հետո: Բայց քանի որ վերջինս, ըստ նույն հեղինակի, վախճանվել է 861 թվին* (ib.), *ուրեմն այդ յերկասիրությունը գրված պետք է լինի 861+90=951 թվին: Բացի սրանից, ուրիշ վոչ մի տեղեկություն Գ. Մերչուլի մասին գոյություն չունի: Նույնիսկ նրա մականունը՝ «Մերչուլ» դեռ լուսաբանած չէ. այսպես* **Ն. Մառը** *վոչ մի խոսք չի ասում նույնիսկ նրա մասին, թե ինչ է այս վերջինս նշանակում՝ ազգանուն թե մականուն, իսկ* **P. Peeters-ը՝** *համարելով այն աղավաղման հետևանք՝ առաջարկում է* (op. cit., 209—210) *ուղղել «Մերչուլ»-ը «Մերճուլին»-ի**,

* *Սրա դեմ տես. К. Дондуа,* Творение Мерчула в латинском переводе бельгийского ориенталиста, — „Тексты и Разыскания по кавказской филологии", т. I. Ленгр. 1925, стр. 15, прим. 2:

հասկանալով վերջինիս տակ, բառ յերևույթին, անձի անվանցուցիչ (Մերկ — Մերկուլի Մերկուրի): Վերջապես, Գ. Միրիանաշվիլին Ն. Մառի աշխատության վրա գրած իր գրախոսականում («Սախալխո գազեթի» 1912 թ. № 503) առաջարկում է կարդալ այն «բշուլ-ի» (=«բջուլ-ի» || «սջուլի» || «շջուլ-ի») բառի ձևը, որ նշանակում է կռան, և բառ այսմ մեկնել այն իբրև կռանագես, կանանագես (կանանիկոս):

Գևորգ Մերչուլի գրվածքի նշանակությունը հայագիտական տեսակետով բավականին հաջող արված է Ն. Մառի աշխատության մեջ, ուր, ի միջի այլոց, կարդում ենք. „*Житие Григория Хандзтийского* впервые открыло, что грузины никогда не прерывали в древности близкого общения и в церкви со всем армянским миром. Они ослабили связь лишь с одною его частью, конфессионально разномыслящею. Что же касается конфессиональных единомышленников, армян-халкедонитов, грузины поддерживали с ними интимную дружбу и самое тесное общение, завершавшееся постепенно полным слиянием этих армян с грузинами вплоть до утраты ими своей национальности. Из *Жития Григория Хандзтийского* узнаем, с каким уважением продолжали грузины относиться к памяти армянского католикоса Нерсеса, с каким благоговением вспоминали об его постройках, очевидно, в виду халкедонитских взглядов этого армянского патриарха"**:

Ստորև մենք բերում ենք մի հատված Գևորգ Մերչուլի գրվածքից՝ Իշխանի աթոռին և Ներսես Իշխանցուն վերաբերյալ, համաձայն Ն. Մառի հրատարակած բնագրի:

## |ԻՇԽԱՆԻ ԱԹՈՌԸ|

Կամոքն աստուծո Սաբան յեպիսկոպոս կարգվեց Իշխանում յերանելի Ներսես (Ներսէ) կաթողիկոսի կառուցած կաթողիկե յեկեղեցում ու նրա աթոռին, որ յերկար տարիներ այրիացած եր[1]:

---

** Գևորգ Մերչուլի և նրա յերկասիրության մասին ընդհանրապես տես, բացի վերև հիշած գրականությունից՝ Իվ. Ջավախիշվիլի, Հին վրացական պատմական գրականությունը, 96—111. Կ. Կեկելիձե, Վրաց գրականության պատմություն, I, 148—153. մասամբ *Н. Марр*, Батум, Ардаган, Карс — исторический узел межнациональных отношений Кавказа, Пгр. 1922, стр. 13—16:

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ

1. Ներսես Իշխանցու մասին տեղեկություն տես հեղինակի գրքի 81-րդ ծանոթության մեջ: Ինչ վերաբերում է Իշխանին, դրա մասին հետաքրքիր է հիշել Հակոբ Կարնեցու (Կ. Կոստանեանց, *Յակոբ Կարնեցի. Տեղագիր վերին Հայոց. Յիշատակարան ԺԷ. դարու. Վաղարշապատ 1903, էջ 17—18)* հետևյալ նշանակալից խոսքերը. «Եւ կայ ի մէջ ձորոյն [Ճորոխի] մեծամեծ վանորայք վրաց ի գիւղն Խախու[լ], Օշկ և Իշխան, որ յար և նման ոչ գոյ նոցա, բայց թէ լինի միայն սուրբ Սոֆի ի Կոստանդինուպոլիս: Եւ էին բնակիչք երկրիս կէսն հայ ազգս և կէսն կրօնիւք վրացի, բայց հայի լեզուաւ խօսէին»: Իշխանի եկեղեցու վրացերեն արձանագրությունները, որ ընդօրինակել էր Վենետիկի մխիթարյան Հ. Ներսես Սարգիսյանը, հրատարակել է M. *Brosset* — Notices concernant les inscriptions géorgienne, recueillées par le P. Nerses Sargissian («Mémoires de l'Académie Imperiale des sciences», VII sér., t. VIII, № 10, p. p. 14—20, tabl. III, IV ibid.): Մանրամասնությունների և հարցիս բիբլիոգրաֆիան տես մեր հատուկ հոդվածում. *Л. Меликсет-Беков,* Местечко Ишхан Эрзерумского вилайета (Историческая справка), — «Тифлисский Листок» 1915 № 107:

---

## ԺԲ.

# ԵՓԹԻՄԻՈՍ ԱԹՈՆԵՑԻ (X—XI Դ.)

## VI ՏԻԵԶԵՐԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ ԿԱՆՈՆՆԵՐԸ (ՎՐԱՑԱԿԱՆ ՎԵՐՍԻԱ)

*Եփթիմիոս Աթոնեցին (Էքվթիմե Աթոնելին) կամ Իվերոնեցին (Մթածմինդելին) վրաց սքոլաստիկ-եկեղեցական գրականության խոշոր դեմքերից մեկն է, որը վախճանվել է 1028 թվին 65 տարեկան հասակում, ծնված լինելով, ուրեմն, 963 թվին։ Նրա մատենագիտությունն այդ գրականության գրեթե բոլոր բնագավառներում այնքան բազմակողմանի է, որ* Կ. Կեկելիձեն *(Վրաց գրականության պատմություն,* I. *182-211) նույնիսկ նպատակահարմար է գտնում տալ այդ մատենագիտության մանրամասն տեսությունը, բաժանելով 9 ճյուղի. 1) բիբլիոլոգիա, 2) ապոկրիֆներ, 2) էկզեգետիկա (մեկնաբանական), 4) դավանաբանական-հակաճառական, 5) ասկետիկա և միստիկա, 6) հոմիլետիկա (ներբողյաններ), 7) հագիոգրաֆիա (վարքաբանական), 8) լիտուրգիկա (աստվածպաշտական կամ ծիսակատարության) և 9) եկեղեցական իրավունքը։ Միաժամանակ՝ Եփթիմիոսը հայտնի է ոչ միայն իբրև հեղինակ բազմաթիվ ինքնուրույն գրվածքների, այլև իբրև թարգմանիչ հունարենից վրացերեն և, նույնիսկ, վրացերենից հունարեն։ Նրա «Վարուց» (կենսագրության) հեղինակ՝ Գեորգ Աթոնեցին (Մթածմինդեցին) ուղղակի ասում է (Աթոնի Իվերոն վանքի 1074 թ. գրչագրին պատճեններով, վրացերեն, Տփղիս 1901, էջ 4=«Վրաստանի դրախտը», 403), որ Եփթիմիոսը «Թարգմանեց վրացերենից հունարեն* ბალაჰვარნ *ու* აბუკურან *և մի քանի ուրիշ գրություններ»։ «Բալահվարը»՝ դա, անկասկած, Բարլաամի և Հովասափի գրույցն է, իսկ «Աբուկուրայ»-ի հարցը մինչ օրս լուծված չէ (Л. Меликсет-Беков.* К вопросу о Феодоре Абукуре в древнегрузинской литературе. — «Известия Кавказ-

ского Историко-Археологического Института». т. IV, 1926, стр. 41—50)։

*Առանձնապես ուշադրավ է Յեփրեմոսի գործունեությունը յեկեղեցական իրավունքի բնագավառում։ Այստեղ նրա անվան հետ կապված է մի շարք «կանոնական» գրությունների թարգմանությունը հունարենից վրացերեն, վորոնց թվում—1) այսպես կոչված՝ Հովհան Պահողի կանոնագիրքը (Н. А. Заозерский* и *А. С. Хаханов,* Номоканон Иоанна Постника в его редакциях грузинской, греческой и славянской, Москва 1902) *ու 2)* VI *տիեզերական ժողովի կանոնները* (*А. С. Хаханов.* Правила VI вселенского собора, в грузинской редакции. Москва 1903) *Վերջինս Յեփրեմոսն վերամշակել է և յուրատեսակ պատմորել՝ այնպիսի նյութեր մտցնելով մեջը, վոր հունարեն բնագրում չկար և չի յեղել**։ Այսպիսի նյութերից է, ի միջի այլոց, 68-րդ կանոնը, վոր հատկապես վերաբերում է հայերին և վորի մասին* Ა. ხახანოვი (Ა. ხახანაშვილი) *գրում է հետևյալը* (Правила VI вселенского собора, стр. 84, 87): «В груз. тексте правило 68 предлагает чтение, не имеющее параллели в греко-слав. тексте. Оно об'ясняется результатом религиозных прений между грузинами и армянами... Сличение грузинского перевода *Правил* с греко-славянским текстом показывает их разницу в составе, распределении и деталях материала; некоторые правила первого отсутствуют во втором и обратно. Это обстоятельство в связи с другими фактами дает основание предположить, что грузинский перевод или восходит к особой неизвестной греческой редакции, или же представляет самостоятельную переработку их на грузинской почве. Внимательное рассмотрение грузинского текста склоняет меня ко второму предположению. Самостоятельной переработкой следует об'яснить устранение полемики против римской церкви и усиление состава правил против церкви армянской»:

*Ստորև մենք դնում ենք այլ և այլ կանոնների թարգմանությունը քաղվածաբար, համաձայն* Ა. ხახანოვის (ხახანაშვილის) *հրատարակության։*

---

* *Հմմ. նաև՝* Ივ. Ჯავახიშვილი, *Վրաց իրավունքի պատմություն, վրացերեն, գ.* I, *Տփղիս 1928, եջ 30—31։*

# |„ՀԵՐՁՎԱԾՈՂ ՀԱՅԵՐԸ"|

[Կանոն] 16... Հարկավոր չէ պահել յոթնյակի այն պասը, վորին առաջավոր[1] են կոչում [և] վորը պահում են հակոբիկները...

[Կանոն] 17. Նույնպես լսեցինք, վոր Հայոց (Սամխիթի) երկրում սուրբ պասերի շաբաթ-կիրակի [օրերը] ուտում են պանիր և ձու և ամեն [տեսակ] կաթնեղեն. սա անթույլատրելի է և անկանոն[2]...

Ցավ այս էլ լսեցինք, վոր Հայոց (Սամխիթի) երկրում կաթնեղենը և ձուկը և գինին միա[տեսակ] են գնահատում, և սա անմաքրություն է և հիմարություն[3]...

[Կանոն 33]. Այս էլ լսեցինք, վոր Հայոց (Սամխիթի) երկրում և մի քանի ուրիշ երկրներում «սուրբ աստված» սրբասացությունն ավելացնում են՝ «սուրբ [և] անմահ, վոր խաչեցար վասն մեր, վողորմյա մեզ», վորը նրանց լեզվով «խաչեցար» է կոչվում,... վորը [սակայն] Քաղկեդոնում ժողոված հայրերը... հանեցին[4]...

[Կանոն] 34. Այս էլ լսեցինք, թե [ինչպես] Հայոց (Սամխիթի) երկրում քահանայության [աստիճանները] բաշխում են [նրանց], վորոնք քահանաների ազգակից էին, և այս օրենքը եբրայական է...

[Կանոն] 68. Այս էլ հասավ մեր ականջին, վոր Հայոց (Սամխիթի) երկրում չեն ընդունում սուրբ և պատվական պատկերների նկարում և վոչ էլ երկրպագում են նրանց (պատկերներին)[5]...

Վորովհետև անօրեն Պետրոս Թափիչն ինչպես «խաչեցար»-ն ուսուցեց նրանց (հայերին), նույնպես էլ այդ չար հերձվածքը ցանեց նրանց մեջ[6]...

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Տես հինգերորդ գլխի 13-րդ ծանոթությունը։

2. Տես. *Л. Меликсет-Беков*, Грузинский извод сказания о посте «арацжавор», стр. 87–88, 103–105:

3. Ibid.։

4. Տես հինգերորդ գլխի 12-րդ ծանոթությունը։

5. Հարցին վերաբերյալ տես՝ Արիստակես եպ. Սեդրակյան, Հայաստանյայց եկեղեցու պատկերամարտությունը, Պատմական տեսություն. ՍՊԲ 1904:

6. Պետրոս Թափիչի մասին տես՝ *Л. Меликсет-Беков*, ibid., էջ 100–108:

ԺԴ.

# ՅԵՓԻՄԻՈՍ ՅԵՐՈՒՍԱՂԵՄԱՑԻ (XI Դ.)

## ՀԱԿԱՃԱՌՈՒԹՅՈՒՆ ԸՆԴԴԵՄ ՍՈՍԹԵՆԵՍ ՄԱՐՄԱՇԵՆՑՈՒ

*Յեփիմիոս Յերուսաղեմացին կամ Յեփիմիոս Յերկարը (Եփթվիմե Գրձելին) հայտնի է որպես ժամանակակից Բագրատ IV վրաց թագավորի (1027—1072), վորի պատվերով նա հատկապես կանչվել է Անչայից (Տայք-Կղարջքից)՝ մասնակցելու 1046 թվի այն բանակռվին հայոց Սոսթենես վարդապետ Մարմաշենցու հետ, վորը տեղի է ունեցել Դրախլայում: Այդ բանակռիվը վորոշ արտահայտություն է գտել համապատասխան գրվածքի մեջ, վորը կրում է հետևյալ ընդարձակ վերնագիրը. «Կրոնավոր Յեփիմիոս Յերկարի (Եփթվիմե Գրձելի) հակաճառությունը Սոսթենես հայոց վարդապետի ընդդեմ» և վորը հրատարակել է Մ. Տարխնիշվիլին իր «Վրաստանի դրախտը» ժողովածուի մեջ, էջ 615—621 (հմմ. նույնը համառոտ՝* Թ. Ժորդանիա. *Քրոնիկոնէր. I, 126—127): Այդպես այս Յեփիմիոս Յերկարն կամ Յերուսաղեմացին վրաց գրականության մեջ ակի չի հիշատակվում և մինչ* Կ. Կեկելիձեի *հատուկ ուսումնասիրության հրապարակումը (Յերկու Յեփիմիոս վրաց հին գրականության մեջ. Սվանեցի թե Յերուսաղեմացի. Վրացերեն, — «Ձվենի մեցնիերեբա», № 2—3, 1923 թ., էջ 102—121) նրան շփոթում էին Յեփիմիոս Աթոնեցու կամ Սվանեցու հետ, վորը X—XI դարում էր գործում: Նույն* Կ. Կեկելիձեի *(Վրաց գրականության պատմություն. I, 534—535) կարծիքով, Յեփիմիոսի Հակաճառությունը մեկն է այն յերկասիրություններից, վորոնց աղբյուր է ծառայել այսպես կոչված* Պասխմոդի-*ին (տես այս գրքի վեցերորդ գլխի ներածությունն ու Բ. մասը):*

*Հայոց գրականության պատմության տեսակետից այս Հակաճառությունը հետաքրքիր է նրանով, վոր զուգադիպում է, մեկ կողմից, Անանիա Սանահնեցու «Գիրք հակաճառութեան և*

ընդդիմաբանութեան ընդդէմ երկաբնակաց»-ին, որը գրվել է 1054—1060 թ. թ., և մյուս կողմից, Հակոբ Քարափնեցու ընդդիմախոսությանը հույների դեմ Կոստանդնուպոլսում 1059—1068 թ. թ. (մանրամասնությունները տես Լ. Մելիքսեթ-Բեկ, «Վարդապետք Հայոց հերձվածային կողմից» etc., 97—120, մասնավորապես 104—105)։

Ստորև մենք դնում ենք Յեփթիմոս Յերուսաղեմացու Հակաճառությունից քաղած համապատասխան կտորների թարգմանությունը համաձայն Մ. Սաբինինի վերոհիշյալ հրատարակության

## ՀԱԿԱՃԱՌՈՒԹՅՈՒՆ ԸՆԴԴԵՄ ՍՈՍԹԵՆԵՍ ՀԱՅՈՑ ՎԱՐԴԱՊԵՏԻ

Աստծո ծառա Բագրատ թագավորի օրոք մեզ կայացավ Ղրտիլայում[1], ո՛չ իբր եկեղեցական, այլ սովորել զինվորական[2]։ Կար մի վանական (մոնոզոն) ծագումով հայ (սոմեխ), վարդապետ և ջատագով (սաաջինորդ) նրանց (հայոց) կրոնի, անունով Սոսթենես[3] (Սոսթենա), որը ճարպիկ լեզու ուներ և հույժ գիտուն էր գրոց և նրանց (հայոց) անհամեմատ ու թեք դավանության։ Սա, բաց սովորույթի, լինում Բագրատ թագավորի մոտ, և սկսեց մեծամտությամբ ու հպարտորեն գովել իր (հայոց) կրոնը և կշտամբել ու պախարակել մեր (վրաց) դավանությունը։ Եվ այն պահին [Բագրատին կից] մեզնից չգտնվեցավ ուժեղ ընդդիմախոս, բացի նրանցից, որոնք՝ մի փոքր տեղյակ լինելով՝ հանդիպեցին նրան (Սոսթենեսին), [այն է] Միքայել Ծուրդավարեցին, Սանանո Ղվելեցին, Գրիգոր Արմաշերի-ձեն [և] վանի Գաբրիել Ոսկխա-ձեն[4]։ Սակայն սրանք չկարողացան ընդդիմանալ [Սոսթենեսին]՝ նրանց (հայոց) գրոց անտեղյակ լինելու պատճառով։ Այդ Դավիթ Բեձիս-ձեն գնաց թագավորին՝ ասելով. «... Գիտցիր, որ մեր ուժերից վեր է կատարելապես ընդդիմանալ Սոսթենեսին (Սոսթենային), եթե չկանչես այստեղ Յեփթիմոս Յերկարին (Եփթվիմե Գրձելին)»։ Թագավորը պատասխանեց Դավիթին. «Իմ թագավորության ո՞ր տեղումն է գտնվում նա այժմ»։ Դավիթը կրկին դիմեց թագավորին. «Լսել եմ, որ նա այժմ Յերուսաղեմից եկած է և գտնվում է արքեպիսկոպոսական գյուղը՝ Անչխա-յ]ում»[5]։ Թագավորը, հենց որ լսեց այս, հույժ ուրախացավ և իսկույն և եթ գնաց արքեպիսկոպոսին, որպեսզի կրոնավորին իրեն մոտ բերի։ Իսկ արքեպիսկոպոսն անհապաղ եկավ կրոնավորի հետ միասին թագավորի մոտ... Հայոց (Սոմխիթի) մեծ վարդա-

8. Տես հինգերորդ գլխի 15-րդ ծանոթությունը։

9. Տես նույն գլխի 8-րդ ծանոթությունը։

10. Այսինքն՝ հակոբիկ։

11. Տես հինգերորդ գլխի 40-րդ ծանոթությունը։

12. Տես տասնուերկուերորդ գլուխը (կանոն 17)։

13. Տես հինգերորդ գլխի 37-րդ ծանոթությունը։

14. Տես հինգերորդ գլխի 38-րդ ծանոթությունը։

15. Ուզում է ասել՝ Բաղդատանյաց վրայ թագավորը։

16. Տես վեցերորդ գլխի ներածությունը։

17. Տես հինգերորդ գլխի 9-րդ և 12-րդ ծանոթ.։

18. Մանրամասն տես. *Л. Меликсет-Беков*, Грузинский извод сказания о посте «араджавор». стр. 94—97, 100, 101—102. նաև հետևյալ գլուխը։

ԺԴ.

# ԱՆԱՆՈՒՆ (XI Դ.)

## „ՊԵՏՐՈՍ ԹԱՓԻՉԻ ՅԵՎ ԱԼԱՁԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ“, „ՀԱՂՈՐԴԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՍՈՒՔՈՒԼՅԱՆ ՎՈՐԴԻ ՍԱՐԳՍԻ ՄԱՍԻՆ“

*Անանուն վրաց հեղինակի գրչին պատկանող գրվածքը առաջավորաց պասի մասին թեև մի յերկխոսության ձևով և հասել մեզ, սակայն այն իրոք յերկու տարբեր հատվածներ և ներկայացնում՝ տարբեր վերնագրերի ներքո, վորոնցից մեկն է «Պետրոս Թափիչի և ալաջի պատմությունը», իսկ մյուսը՝ «Հաղորդագրություն Սուքուլյան վորդի Սարգսի մասին»։ Յերկու հատվածների՝ իբրև ամբողջական յերկի՝ առաջին վոչ գիտական հրատարակությունն ըստ յերևույթին մի ձեռագրի հիման վրա տվեց* Մ. Սաբինինը *իր «Վրաստանի դրախտը» ժողովածուի մեջ, 1882 թվին, եջ 629—633։ Իսկ յերկրորդ՝ քննական հրատարակությունը 5 ձեռագրերի համեմատությամբ և հանդերձ ռուսերեն թարգմանությամբ* en regard *տվինք մենք մեր աշխատության մեջ* Грузинский извод сказания о посте «араджавор» (Христ. Восток., т. V. в. II) *1917 թվին, եջ 85—96։*

*Ինչպես 1917 թվին, նույնպես և այժմ մենք այն կարծիքի յենք, վոր յերկու հատվածներն էլ՝ իբրև մեկը մյուսի շարունակություն՝* առասպելական *«զրույցներ» են, ուր անդ-առեղ վորոշ արձագանք ունեին գտած պանդաշտ պատմական իրողություններ, թեև այդ իրողությունների նկարագրության* ժամանակագրական տեղն ու վրա յե յեղած յեվ վո՛չ մի ճշմարտություն չի դիմանում *(տես* ibid., *եջ 97—111, հմմ. նաև* Մեսրոպ վ. Մաքսուդյանցի *գրախոսականը մեր աշխատության վրա, — «Արարատ» 1918 թ., եջ 148—150)։*

*Ինչ վերաբերում է հեղինակի անձին, այդ հարցը կատարյալ մթության մեջ է։ Իզուր հանգուցյալ* Մեսրոպ վ. Մաքսուդյանցը

(էջ 148) մեջ վերապրում էր կարծիք (ենթադրություն), վոր «ա-տաղերը...«առաջավորաց» պահքի նկատմամբ վրաց եկեղեցու մեջ... ծագած է 1103-ից հետո, երբ վրաց Ռուիս-Ուրբնիսի ժողովում հայերը պաշտոնապես բանադրվում են հերետիկոս»: Ուրիշ խոսքով ասած, սա նշանակում է, վոր վերոհիշյալ «դրույթները» գրի են առնված 1103 թվից հետո: Այսպիսի կարծիք կամ ենթադրություն համապատասխան աշխատության մեջ մենք հայտնած չունենք և այժմ էլ վոչ մի հակում չունենք այդպիսի բան արտահայտելու: Բայց տեսնենք, թե ինչ է այս հարցի մասին գրել 1923 թ. Կ. Կեկելիձե (Վրաց գրականության պատմություն, I, 539). «Այս աշխատությունը (տոնացույցը. Լ. Մ.-Բ.) փոխադրված պիտի լինի վրացերեն, բառ լեզվի, այն ժամանակ, յերբ Արսեն Վաչեա-ձեն կազմում էր իր Դոգմատիկոնը. հավանական է նրա ձեռքով լինի վերամշակված, վարպետորեն, թեև սակավ, բայց կան այնպիսի ձեռագրեր, ուր Դոգմատիկոնից քաղած հոդվածների հետ միասին սրան էլ ենք հանդիպում»:

Մեր կարծիքով, վոչ մի անհրաժեշտություն չկա տոնացույցի հեղինակին քաշել XII դարու առաջին քառորդը (Արսեն Վաչեա-ձեն, վորն ավելի հայտնի է Արսեն Իկ՛ալթոյեցի անվամբ, իրոք, XII դարու առաջին քառորդի գործիչ է), քանի վոր այն մի շարք մանրամասնություններում շփոթում է նախորդ գլխից ընթերցողին արդեն ծանոթ Յեփրեմ Յերուսաղեմացու Հակաճառության հետ*. այնպես վոր, յեթե մենք ունենք վորևէ հնարավորություն վերագրելու այս տոնացույցը վորևէ ժամանակաշրջանին, հարցն, անկասկած, պիտի լուծվի հօգուտ XI դարու առաջին կեսի, կապվելով այն՝ առայժմ ենթադրաբար՝ Յեփրեմ Յերուսաղեմացու հեղինակության հետ:

Ստորև մենք տալիս ենք յերկու հատվածներից քաղած համապատասխան կտորները համաձայն մեր հրատարակության:

* Օրինակ, ընդդեմ Սարգիսի Հակաճառության մեջ կարդում ենք. «Միքայել վրաց կաթողիկոսն, ինչպես յերբեմն Դավիթ մարգարեն Գողիաթի վրա», Սուքսյան վորդի Սարգսի մասին Հաղորդագրությունն գրում է. «Սուրբ հոգին զինեց Միքայելին, ինչպես յերբեմն Դավթին Գողիաթի վրա», ևլն:

## |ՊԵՏՐՈՍ ԹԱՓԻՉԸ ՀԱՅՔՈՒՄ|

|Կոստանդնուպոլսից] նա (Պետրոս Թափիչը) գնաց Հայոց (Սոմխեթի) լեռները իր բազում համախոհներով և աշակերտներով հանդերձ, և սկսեց քարոզել հերձվածող կրոնն ու քանդել հա-յոց (ըերձենների) կրոնը, որոնք ընդունել էին սուրբ և մեծ ժողովներն ու աստվածազգեստ հայրերը: Եվ բոլորը հավատում էին նրա խոսքերին, քանի որ աստվածամոտ հրեշտակ էին տեսնում նրա մեջ՝ ասելով. «Ահա այս մարդն արքայության քաղաքի պարտիզպանն է»:

Ապա Պետրոսը սատանայի ներշնչմամբ սկսեց կախարդություններ անել և պատմել ամեն տեսակ հերձվածողական գործերի մասին, ուսուցանելով ժողովրդին թե ինչպես պահել կաթողիկե պասերը... Եվ այսպիսով նա (Պետրոսը) անբիծ հայ ժողովրդին թեթևացնում էր կրոնը և հերձվածքն ուսուցանում ու իր միտում-ներին ենթարկում:

## |ԱՊԱ ՊԱՏՄՎՈՒՄ Է „ԱԼԱՋ" ԿՈՉՎԱԾ ՇԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ, ՎՈՐ ԿԱՐԵԼԻ Է ԱՄՓՈՓԵԼ ԱՅՍՊԵՍ

Պետրոսը հետն ունենում է մի շուն Ալաջ անունով[1], որին վարժեցրել էր գնալու վորտեղ հրամայեր: Մի անգամ Պետրոսն ալաջին ուղարկում է մի քահանայի մոտ, որն իր աշակերտների ձեռով սպանել է տալիս շանը: Պետրոսը գալիս է և հարցափորձ անում շան մասին: Քահանան չիմանալ է ձևացնում: Պետրոսը կարգադրում է հինգ օր պահք պահել, որպեսզի աստված հայտնի ալաջի տեղը. ժողովուրդն սկսում է պահել և ալաջն երևում է Պետրոսին տեսիլքում՝ ասելով. «Ահա այս ձորումն եմ ընկած մահացած»:|

Ապա Պետրոսը կանչեց ժողովրդին և ասաց. «Ահա հրաշք մի մեծ և զարհուրելի. այսուհետև պաս պահեցեք ալաջի համար այն օրերին, որ ես ձեզ համար սահմանեցի»:

Այսպիսին է առաքյալների կողմից նզոված և ժողովների կողմից մերժված Պետրոսի օրենքը, և թող նզովյալ լինի ալաջի ու սուրբ Սարգսի համար բոլոր պաս պահողները:

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ

*1. Հավանական է, որ այս «ալաչ»-ն առաջացած լինի «ալաչ[ավոր]» կամ «ալաչ[ավորաց]»-ի աղավաղումից: Հմմ. նաև «ալաչ» արմատով արխաիկերեն «ալըշ» (⟶ «ալըշ[կինար]»)-ի հետ (Լ. Մելիքսեթ-Բեկ, Մի քանի խոսք ալեքի պաշտամունքի մասին, «Արարատ», 1918 թ., էջ 125—128)*

## Բ. ՀԱՏՎԱԾԻՑ

## [ՍՈՒՐԲ ՍԱՐԳԻՍԸ]

*Նույն ժամանակներն ապրում էր մի փոքր գյուղում (Տերոս) Մուրադի[1] վորդի Սարգիս անունով, վորին՝ ընդունելով կուսակրոնություն (դառնալով մոնաղան)՝ մենաստան կառուցեց Արարատյան տարածքում, ուր և գիշեր-ցերեկ աղոթում էր: Իսկ այս մենաստանը կառուցված էր քաղաք Դվինի մոտերքում[2]:*

*Այս պահին յեկավ ադարացվոց սալասալարը[3] և՝ մոտենալով [այդ] քաղաքին՝ գրավեց այն: Ապա այդ քաղաքի մարդիկ յեկան քաղաքից և ասացին Սուրբ Սարգսին. «Դուրս յեկ քո մենաստանից և մարտնչիր Քրիստոսի թշնամի ադարյան զավակների հետ. և յեթե հաղթես ու խաղաղ վերադառնաս, մենք բոլորս քո ծառաները (ստրուկները) կդառնանք, իսկ յեթե սպանես, քո փոխարեն՝ ի հիշատակ քո՝ խաչ կկանգնենք»: Ապա Սարգիսը դուրս յեկավ պայքարելու ադարացիների հետ և հաղթեց և վերադարձավ՝ նստավ վիրավորված:*

*Մի քանի ժամանակից հետո նորից գլուխ բարձրացրեց (դիմեց) Սպահանի սալասալարը և մոտեցավ քաղաք Դվինին: Յեվ նրանց (ադարացիների) դեմ նորից դուրս յեկավ Սարգիսը: Յեվ հենց վոր սկսվեց պայքարը, Սարգսին գրավեցին և ամբողջ Հայքը (Սոմխեթը) ավերեցին ու ամայի դարձրին: Իսկ Սարգսին բազում գերիների հետ միասին Սպահան տարան սուլթանի[4] մոտ: Իսկ սուլթանը տեսավ թե վոչ Սարգսին՝ շատ ուրախացավ, վորովհետև լսել էր նրա արիության և բարեձևության մասին, և խնայեց նրան, քանի վոր ծերացած էր: Յեվ սկզբից և եթ սկսեց նրան [գայթակղեցնել]՝ մեծ վարձատրություն և քաղաքներ ու գյուղեր խոստանալով և տալով. «Ամբողջ Հայքն (Սոմխեթն) և Իրանը ու նրանց թագավորությունները կթողնեմ քեզ, յեթե խոնարհվես ինձ և՝ ուրանալով խաչելյալին՝ ընդունես Մահմեդ (Մուհամմեդ) առաքյալից՝ մեզ տված կրոնը»: Իսկ նա ամենևին հանձն չառավ*

# ԳԵՈՐԳ ԱԲԵՂԱ (XI Դ.)

## „ԳԵՈՐԳ (ԳԻՈՐԳԻ) ՍԵՎԼԵՌՆԵՑՎՈ ՎԱՐՔԸ“

*Գեորգ (Գիորգի) աբեղան կամ կուսակրոն քահանան (խուցես-մոնոզոնի) հռչակավոր Գեորգ (Գիորգի) Սևլեռնեցվո կամ Աթոնեցվո աշակերտն էր, որը գրի է առել իր ուսուցչի վարքը հետևյալ վերնագրով. «Սուրբ և երանելի մեր հոր Գեորգ (Գիորգի) Սևլեռնեցվո վարքն ու գործերը»։ Այս երկասիրությունը, ըստ* Իվ. Ջավախիշվիլու *(Հին վրացական պատմական գրականությունը, էջ 125—137, հատկապես 137), «վստահության առավել արժանի» աղբյուր է, որն, ըստ* Կ. Կեկելիձեի *(Վրաց գրականության պատմություն, I, 257—259), 1065—1068 թ. թ. պիտի լինի գրված։ Հրատարակվել է այն 3 անգամ. նախ՝ 1846 թ. —* Դ. Չուբինով. *Վրացերեն քրեստոմաթիա, վրացերեն, ռ. հրատ., մասն I, ՍՊԲ 1846, էջ 255—301, ապա՝ 1882 թ. —* Մ. Սաբինին. *Վրաստանի դրախտը, էջ 437—488, և վերջապես՝ 1901 թ. — «Աթոնի Իվերոն վանքի 1074 թ. ձեռագրեն պատկերներով», վրացերեն, Տփղիս, էջ 282—351. ռուսերեն թարգմանությունը (ոչ ճիշտ, աղավաղումներով և հապավումներով)՝* М. Сабинин, Полное жизнеописание святых грузинской церкви. II. 161—212։

*Ստորև մեր բերած քաղվածքների թարգմանությունը կատարված է համաձայն 1901 թ. հրատարակության։*

## |ՀԱՅՈՑ ԴԱՎԱՆՈՒԹՅԱՆ ՔՆՆՈՒԹՅՈՒՆԸ Կ. ՊՈԼՍՈՒՄ|

*...Սկզբից և ես մենք (վրացիներս) ունենք մեր գրականություն (գրվածքներ) ու ճշմարիտ և ուղիղ դավանություն. բայց մեր երկրից [illegible] հունական՝ երկրից (Բերձնեաստանի [illegible] պատճառով) մեր երկրում իբրև վարում ցանկացին հայոց[illegible] ները) չար սերմերը՝ որոմ և նենգ...*

զի սա ի սուրբ Սոփի ի յամբիոնն նստէր ընդ ամենայն վարդապետսն Հոռոմոց: Եւ յայնժամ Ատոմ և Աբուսահլ գաղտ խնդիր հանին Գագկայ ի Կոլօնպեղատն: Իսկ Թագաւորն Տուկիծ տայր քննութիւն հաւատոյ իւր առաջի, և Յակոբոս վարդապետն՝ որ ասի Սանահնեցի, տայր դիմադրութիւն բազում յամենայն հարցմունսն ընդդէմ Հոռոմոց. բայց սակաւ մի վասն երկբնութեանն Քրիստոսի ի կողմն Հոռոմոց դարձաւ: Եւ յամենայն պատճառսն հաւատոցն հաճեալ Թագաւորն և հրամայեաց յայնր վերայ գիր միաբանութեան գրել ընդ Հայք և ընդ Հոռոմք. և վարդապետն Հայոց Յակոբոս գրեաց գիր միաբանութեան Հայոց և Հոռոմոց: Եւ հաճեալ Թագաւորին ի գիր հաւատոյն, հրամայեաց դնել զգիրսն ի սուրբն Սոփի, զի անտ յայամ հետէ եղիցին ի միասին միաբանեալ Հայք և Հոռոմք: Եւ ի նոյն ժամայն իբրև զարծիւ թռուցեալ հասանէր Գագիկ ի Կոստանդնուպօլիս, և լուեալ Թագաւորն՝ ուրախ եղև յոյժ. և իբրև մտաւ առ Թագաւորն, հրամայեաց բերել զգիրս միաբանութեանն. և առեալ ընթերցաւ Գագիկ և իբրև ծանեաւ զգրեալսն Յակոբոսի, պատառեաց զնա առաջի Թագաւորին յերկուս ծուէնս և ընկէց զնա յերկիր. և Թագաւորն տեսեալ՝ ամաչեաց յոյժ: Եւ ասէր Գագիկ ցԹագաւորն վասն վարդապետին, եթէ «Ահա սա այր կրօնաւոր է, և այսպիսի բազումք կան յաշխարհն Հայոց, որք ոչ ընդունին. և ոչ ոք հնազանդի դոցա սորա, և մեք ընդ կատարեալ վարդապետսն Հայոց ոչ ունիմք զսա»: Եւ յայնժամ առաջի Թագաւորին յանդիմանեաց զՅակոբոս և ասէր՝ թէ «Զիարդ համարձակեցար զայդ գործել, մտանել քեզ յաւելաբանութիւն, զի այր կրօնաւոր ես»: Եւ ասաց Գագիկ ցԹագաւորն Տուկիծ. «Ահա ես այր Թագաւոր եմ – որդի Թագաւորացն Հայոց, և ամենայն Հայք հնազանդին հրամանաց իմոց, և ամենայն կաթողիկոսացն աստուծոյ հնոյ և նորոյս հմուտ եմ, և ամենայն Հայք վկայեն բանից իմոց, զի հաւատալ վարդապետացն ընդունին զիս. և ահա ես խօսեցայց այսօր ընդ Հոռոմոց վասն հաւատոյ ազգիս Հայոց»: Եւ գրեաց Գագիկ գիր հաւատոյ ձեռամբ իւրով այսպէս և տայր զնա ի Թագաւորն և ի պատրիարգն. և ունէր գիրն պատճէն այսպէս...» (էջ 160—163): Այստ առաջ է բերված այսպես կոչված «գիր հաւատոյ»-ի բովանդակությունը: Վերջապես, Հակոբոս Քարափնեցու մասին խոսելով նույն Մատթեոս Ուռհայեցին գրում է. «այս Յակոբոս էր, որ խօսեցաւ ի Կոստանդնուպօլիս ընդ իմաստասէրն Հոռոմոց ի յաւուրն Թագաւորին Տուկծին, յորժամ գնաց զհետ Սենեքարիմայ որդւոցն. սորա խօսեալ վասն հաւատոցս Հայաստանեայցս, և հաճեալ ի բանս նորա ամենայն տունն Յունաց» (էջ 227): Հմմ. Լ. Մելիքսեթ-Բեկ, Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց, op. cit., 97–99:

ԺԶ.

# ԵՓՐԵՄ ԿՐՏՍԵՐ (XI Դ.)

## „ԸՆԴԴԵՄ ԱՐԻԱՆՈՍԱՑ ՅԵՎ ՅԵՎՆՈՄԻԱՆՈՍԱՑ ԳՐԻԳՈՐ ԱՍՏՎԱԾԱԲԱՆԻ ՃԱՌԻ ՄԵԿՆՈՒԹՅՈՒՆԸ"

*Յեփրեմ Կրտսերը (Յեփրեմ Մցիրեն) վրաց աշխարհիկ-եկեղեցական գրականության խոշոր դեմքերից մեկն է XI դարում* (ივ. ჯავახიშვილი, *Հին վրացական պատմական գրականությունը*, *145—169*. კ. კეკელიძე, *Վրաց գրականության պատմություն* I, *259—283*)*: Նրա մասնակցությունն այդ գրականության գրեթե բոլոր բնագավառներում, ինչպես և Յեփթիմիոս Աթոնեցունը* X—XI *դարում, այնքան բազմակողմանի էր, վոր* კ. კეკელიძე (op. cit.) *նույնիսկ նպատակահարմար է գտնում տալ այդ մասնակցության մանրամասն տեսությունը, բաժանելով 11 ճյուղի. 1) բիբլիոլոգիա, 2) էկզեգետիկա (մեկնաբանական), 3) դավանաբանական-հակաճառական, 4) ասկետիկա և միստիկա, 5) հագիոգրաֆիա (վարքաբանական) և պատմություն, 6) հոմիլետիկա (ներբողյաններ), 7) թղթակցություններ, 8) եղխափոխներ, 9) ժամատետրական, 10) քերթողական, 11) լիտուրգիկա (աստվածպաշտական կամ ծիսակատարության), 12) այլեր:*

*Յեփրեմի բազմաթիվ գործերից մեզ համար առանձնապես հետաքրքիր է մի գրվածք, վորը կոչվում է «Ընդդեմ արիանոսաց և յեվնոմիանոսաց Գրիգոր աստվածաբանի ճառի մեկնությունը»: Այդ գրվածքին հեղինակը կցած ունի մի հիշատակարան, ուր իր կարծիքն է հայտնում հայերենից վրացերեն թարգմանությունների կատարելու մասին, կարծես թե վորոշ նախապաշարմունքով:*

*«Մեկնությունը» դեռևս հրատարակված չէ, բայց մեզ հետաքրքրող հիշատակարանը քանիցս* in extenso *օգտագործվել է վրաց գրականության մեջ* (თ. ჟორდანია, *Քրոնիկներ*. I, 227. ივ. ჯავახიშვილი, op. cit., *147*. კ. კეკელიძე, op. cit., 166—167), *վորն է հիմք և ծառայել ստորև բերված մեր թարգմանությանը:*

ԺԷ.

# ՌՈՒԻՍ-ՈՒՐԲՆԻՍԻ ՅԵԿԵՂԵՑԱԿԱՆ ԺՈՂՈՎԻ (1103 Թ.) ԿԱՆՈՆՆԵՐԸ

*Ռուիս-Ուրբնիսի յեկեղեցական ժողովը վրաց նշանավոր յեկեղեցական ժողովներից մեկն է, վոր կայացել է Դավիթ II Շինող թագավորի հրամանով 1103 թ. բացոթյա՝ Ռուիս և Ուրբնիս յեպիսկոպոսանիստ գյուղերի միջև տարածվող դաշտում (այժմյան Գորու շրջանում, Սկրա կայարանի դիմացը, հայնկույս Կուր գետի):*

*Այս ժողովի կանոնները յերկու անգամ է հրատարակված. նախ՝ 1882 թ.* Մ. Սաբինինի *«Վրաստանի դրախտ»-ում, էջ 518—530, իսկ յերկրորդ անգամ 1897 թ.* Թ. Ժորդանիայի *«Քրոնիկաներ»-ի II գրքում, էջ 54—72**:*

*Կանոններից հայերին հատկապես վերաբերում է 12-րդ կետը (կանոնը), վորը ստորև մենք դնում ենք քաղվածաբար:*

## [ԽԱՉԵՑԱՐ-ՀԱՅԵՐԸ]

*[Կանոն] 12... հերձվածողներից խաչեցարները[1] հայերն են... Սրանց մասին սահմանում ենք, վոր [ուղղափառություն ընդունելու դեպքում] սրանց լիովին մկրտեն ինչպես հեթանոսներին. վորովհետև գտանք, վոր այլ մեծ յեկեղեցիներն այսպես են անում, ինչպես որինակ Անտիոքի պատրիարքական աթոռն ու նրան հետևող ամբողջ արևելքի յեկեղեցիները[2]:*

---

* *Կանոնների ուսումնասիրությունը տես.* Իվ. Ջավախիշվիլի, *Վրաց իրավունքի պատմություն, I, վրացերեն, Տփղիս 1928, էջ 39—46, հմմ. բավականին հնացած և գիտական արժեքից միանգամայն զուրկ գրքույկը.* Андроник Гзелиев. «Дзеглис нера» (Хартия) грузинского царя Давида III Возобновителя. Тифлис 1898:

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Հմմ. հինգերորդ գլխի 12-րդ ծանոթ. «Թաչիկապրներ», իբրև հայերի անվանում, վրաց գրականության մեջ մտած և հունարենի ազդեցությամբ, ուր մենք ունենք χατζιτζάριοι. ինչպես այդ կարդում ենք Quomodo recipiendi sunt Armenii haeretici-ի մեջ (Migne, PG. CXXXII, 1257), կամ χατζινζάριοι, ինչպես կարդում ենք այլուր, ճիշտ այնպես, ինչպես այն նույն հունարենից մտած և սլավոներենում «ханзири» ձևով (*И. Мансветов*, О постах православной восточной церкви, 50). տես նաև *Л. Меликсет-Беков*, Грузинский извод сказания о посте «араджавор», стр. 106–107, 81, 73:

2. Այս խոսքերը վորոշ արձագանք են վրաց յեկեղեցու՝ նախնական շրջանում Անտիոքի աթոռից կախման և նույն Անտիոքից ինքնագլխության (ավտոկեֆալիան) ստանալու մասին հորինված թեորիայի, վորի աղբյուրը Յեփրեմ կրտսերի (տես նախորդ գլուխը) յերկասիրությունն է հետևյալ վերնագրով «Հավատագրություն [այն մասին], թե վրաց դարձի պատճառը վոր գրքերում է հիշված» (Ե. Թաղայշվիլի, *Ս. Նունեյի վարուց նոր վարիանտը կամ վրաց դարձի [պատմության] յերկրորդ մասը, 1891, եջ* XXXVIII LVII Թ. Ժորդանիա, *Քրոնիկոններ*, I, *1892, եջ 33—37* et pass.). Հմմ. *Н. Марр*, Исторический очерк грузинской церкви с древнейших времен, — «Церковные Ведомости» 1907 г., прил., стр. 122.

ԺԲ.

# ՀԱՎԵԼՎԱԾ

Կանգ առնելով վրաց դավանաբանական-վիճաբանական գրականության վրա, որն առանձնապես սկսեց զարգանալ IX դարուց ու իր գագաթնակետին հասավ XI–XII դարերում, Կ. Կեկելիձեն (Վրաց գրականության պատմություն, I, 539–540) գրում է. «Առհասարակ պետք է նկատենք, որ հայերի ընդդեմ ուղղված վիճաբանական գրականությունը հունարեն լեզվով, որն իններորդ դարուցն է սկսվում, առանձնապես սուր կերպարանք ստացավ XI—XII դարում։ Այժմ հավաքում են ի մի յեկեղեցական-դավանական բոլոր այն սովորույթները, որով հայերը տարբերվում են հույներից, քննադատության բովով են անցկացնում այդ և հաճախ այնպիսի պամֆլետներ հորինում, ինչպիսին է առաջ[ավ]որի (ալաջորի) մասին պատմելը։ Այսպիսի հորինվածներից մի քանիսը վրացերեն էլ է թարգմանվել»։

Ապա նույն գիտնականը մատնանշում է (ibid.), որ Արսեն Վաչեձեն իր Դոգմատիկոնի մեջ ունի մտցրած 3 այսպիսի հորինվածքներ. 1) «Հայոց հերձվածքի յերեսուն գլուխներ»[1], 2) Յերուսաղեմի Թոմաս պատրիարքի թուղթը Հայոց հերձվածողների դեմ, որը գրի յե առել Թեոդորոս Յեպիկուրան (Աբուկուրան) Խառանի յեպիսկոպոս, և հունարեն թարգմանել Միքայել յերեցն՝ Յերուսաղեմի աթոռի միաբանը[2], և 3) Նիկիտա Ստեթատի՝ Ստուդիի վանքի աբեղայի՝ Ցեղծ հայոց հերձվածքի (5 ճառ)[3]։ Բացի դրանից գոյություն ունին վրացերեն նաև. «Ամենայերանելի Թեոդորոսի (Յեպիկուրայի [Աբուկուրայի] ?) հակաճառություն ընդդեմ հայոց»[4], «Մաքսիմոսի ընդդեմ հայոց»[5] և «Թե սուրբ կաթողիկե յեկեղեցին ինչու յե նզովում հայերին»[6]։

Այս գրվածքներից և վոչ մեկը ինքնուրույն չէ, այլ բոլորն էլ թարգմանված են հունարենից. հետևապես դասել նրանց վրաց աղբյուրների շարքում անհնարին է։ Այնուամենայնիվ, մենք նրա-

*ատկահարկար պատճէ տալ նրանց ցուցակը, և ի վերջո կուզե-յինք անել մի նկատողություն ևս։*

*Ըստ մեր հետազոտության, «Հայոց հերձվածքի յերեսուն գլուխ-ները» և «Թե ուր կաթողիկե յեկեղեցին ինչու չի ընդունում հայե-րին» գրվածքները, վորոնք հասել են մեզ, առաջինը՝ Վրաց մեջ գրագիտություն տարածող ն. ընկերության հավաքածուի № 1463 և Տփղիսի ն. յեկեղեցական թանգարանի № 205 ձեռագրերում, իսկ յերկրորդը՝ Վրաց մեջ գրագիտություն տարածող ընկ. հավա-քածուի №№ 312 և 248 ձեռագրերում, փոխադրված են հու-նարենից (թեև վոչ բառացի, այլ թեթև վերամշակված ձևով)՝ հույն-բյուզանդական գրականության մեջ հայտնի հետևյալ տրակ-տատներից.* 1) Narratio de rebus Armeniae-*ին կցված* Quomodo recipiendi sunt Armenii haeretici-*ի* (*Migne*, PG. CXXXII, 1257-1265)[7]. *և* 2) Oratio invectiva adversus Armenios-*ի* Oratio I Contra Armenios-*ին կցված* Capita quorum ratione Armenii devoventur-*ի* (ibid., 1209-1217)։

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. *Հրատարակված չէ։*

2. *Նույնը։ Առայժմ տես Л. Меликсет-Беков,* К вопросу о Феодоре Абукуре в древнегрузинской литературе,—«Известия Кавк. Ист.-Арх. Института», т. IV, 1926, стр. 43-45:

3. *Նույնը։ Առայժմ տես Л. М.-Б.,* Никиты Стифата, иеромонаха Студийского, «Опровержение армянской ереси» (грузинская версия).—«Христ. Восток», т. VI, 1918, стр. 92-93:

4. *Նույնը։ Առայժմ տես Л. Меликсет-Беков,* К вопросу о Феодоре Абукуре в древнегрузинской литературе, стр. 45։

5. *Հրատարակված չէ։*

6. *Հրատարակել է* Մ. Սաբինինը, *«Վրաստանի դրախտը», էջ 633—635։*

7. *Հմմ.* Կ. Կեկելիձե, op. cit., *էջ 540, ծան. 7։*

Մեր ներկա աշխատության առաջին հատորի յերկրորդ պրակում մենք ամփոփել ենք քաղվածքներ XI—XII դարու վրաց պատմիչների այն յերկասիրություններից, վորոնք ի մի յեն յեկել ժողովված դեռ եվ XII դարում՝ հիմք ծառայելով ուրույն խմբագրության, վորն այդ յերկասիրությունների ձուլման և ապա համառոտության փորձն է ներկայացնում, առել են՝ այն խմբագրության, վորը հասել է մեզ միմիայն հայերեն թարգմանությամբ և հայտնի յե՝ «Պատմութիւն Վրաց» կամ «Համառօտ պատմութիւն Վրաց» վերնագրով, նույնը M. Brosset-ի կողմից ֆրանսերենի վերածած (հայերենից) Chronique Arménienne վերտառությամբ (և ըստ այդմ՝ ռուսերեն Армянская хроника և վրացերեն «Սոմխուրի խրոնիկա» կոչված): Տարակուսանքն այն առթիվ՝ կատարվե՞լ և արդյոք հիշված համառոտությունը վրացի խմբագրի ձեռքով և ապա թարգմանվել հայերեն, թե՞ հայ խմբագիրն և ուղղակի կատարել այդ աշխատանքը, լուծվում է հայերեն տեկստի մեջ ներմուծած հետևյալ հիշատակարանի հիման վրա. «Եւ զայս պատմութիւնս համառօտ՝ ի ժամանակս շփոթման, և եդաւ ի գիրս՝ որ կոչի Քարթլիս Ցխօրէպա, որ է՝ Պատմութիւն Քարթլայ. և եգիտ զայս Ջուանշեր (բնագրում՝ Ջուանշեր. Լ. Մ.-Բ.), գրեալ մինչև ցՎախթանգ թագաւոր, և մինչև ցայսվայր ինքն յաւել Ջուանշեր (բն.՝ Ջուանշեր. Լ. Մ.-Բ.), և զգալոցն՝ յանձնեաց ստացողացն և պատահելոցն ի ժամանակին» (եջ 104):

Ուրեմն պարզ է, վոր «Պատմութիւն Վրաց»-ը թարգմանություն է վրացերեն լեզվով հնում գոյություն ունեցող վրաց տարեգրության այն՝ նախնական՝ խմբագրությունից, վորը «Քարթլիս ցխովրեբա», այսինքն «Պատմություն Վրաց (Քարթլիի)» յե կոչվել, թեև այս անունը հետագայում իբրև terminus technicus տարածվել է վրաց տարեգրության վրա ընդհանրապես՝ սկսած հնագույն ժամանակներից մինչ XIX դար, վորը վրացերեն նույնպես «Քարթլիս ցխովրեբա» (Քարթլիս ցխովրեբա) անունով է

հայտնի, իսկ ֆրանսերեն թարգմանությամբ M. Brosset-ի Histoire de la Géorgie depuis l'antiquité jusqu' au XIX siècle (նույն գիտնականի հորինածն է և Chronique Arménienne վերնագիրը)։

Կար ժամանակ, երբ գիտական աշխարհում այն կարծիքն էր տիրում, որ իբր թե «Քարթլիս ցխովրեբա» կոչված վրաց տարեգրությունը միմիայն XVIII դարու առաջին կիսումն է կազմվել և խմբագրվել Վախտանգ VI թագավորի կոմիսիայի ձեռքով։ Բայց նրանից հետո, երբ հրապարակ հանվեց, մեկ կողմից, այսպես կոչված «Պատմութիւն Վրաց»-ը (Chronique Arménienne-ը), իսկ մյուս կողմից՝ նույն տարեգրության այսպես կոչված «Մարիամ թագուհու վարիանտը», որը հազիվ մինչ XVII դար է հասնում, ուրեմն նախավախտանգյան շրջանին է պատկանում, գիտական աշխարհում նույն «Քարթլիս ցխովրեբա»-ի հանդեպ հեղաշրջում կատարվեց և այն կարծիքը հաստատվեց, որ վրաց տարեգրությունը պատմական կամ ժամանակագրական բնույթ կրող այս ու այն հեղինակների երկասիրությունների կոմպիլյացիայի մի փորձ է, որ կատարվել է հետզհետե, դարերի ընթացքում, սկսած XII դարուց։

Համենայն դեպս, որ «Քարթլիս ցխովրեբա»-ի հնագույն խմբագրություններից մեկը հայտնի էր եղել հայ պատմիչներին դեռ ևս XII–XIII դարերում, դա ակներև փաստ է։

Մխիթար Անեցին, որը գրի էր առել Հայաստանի պատմությունը «ի սկզբանէ աշխարհի» մինչ 1193 թ.՝ երկու գրքով, որից մեզ հասել է միմիայն սկզբնական մասը (Հանդէսք բանից աշխարհագումար գրուցաց, տեղեկապատում անցից, վիպասանեալ ի քաջ գիտնականէն Մխիթարայ, առաջնորդէ մեծ կաթողիկէին Անւոյ հոյակապ քաղաքի. ի խնդրոյ հօր Հայրենայի Գրիգորոյ վարդապետի), իր երկասիրության մեզ չհասած մասերում, ի միջի այլոց, հիշատակելիս էր եղել և վրաց աղբյուրները, որից առատ օգտվել է Ստեփանոս Օրբելյանը (Պատմութիւն Սիւնեաց եպիսկոպոսի ի Հերակլէն և սկիզբ նորոգեալ պատմութեան Մխիթարայ Անեցւոյ, ի լոյս էած Ք. Պ[ատկա]նեան, ՍՊԲ. 1879, համեմատ. էջ ա—բ., հմմ. Ք. Պատկանեան, Համառօտ տեսութիւն հայ պատմական գրականութեան, հրատարակված «Փորձ»-ի 1880 թ. № 1, էջ 24)։

Վարդանը նույնպես ծանոթ է վրաց տարեգրությանը, երբ ասում է. «իսկ յաղագս Վրաց թագաւորացն սկզբանց, որ կայ ի գիրս նոցա», և մի փոքր հետո. «այս բան Մխիթարայ երիցու։

*տոհցն» (Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի լու-սաբանեալ, Վենետիկ 1862, եջ 91—92)։*

Մխիթար Այրիվանեցին *ևս բոլոր այն տեղեկությունները, վոր տալիս ե Վրաց պատմությունից, քաղում ե վրաց տարեգրությունից կամ, ուղիղ ասած, վերջինիս հայերեն թարգմանությունից՝ նույն սխալներով և աղավաղումներով, վորոնք հատուկ են հենց այդ թարգմանությանը (տես համեմատության համար «Իշխանք վրաց», «Թագաւորք վրաց» և «Եպիսկոպոսք վրաց» վերնագրերի տակ. Մխիթարայ Այրիվանեցւոյ Պատմութիւն Հայոց, ի լոյս ընծայեաց* Մկրտիչ Էմին, *Մոսկվա 1860, եջ 17—18)։*

*Իսկ* Ստեփանոս Օրբելյանը, *անտարակույս, ծանոթ ե ինչպես Մխիթար Անեցու պատմության, նույնպես և վրաց տարեգրության հայերեն թարգմանության հետ, վորոնց մասին գրում ե հետևյալը. «Եւ արդ գայս ծանեաք ընդ աղօտ ինչ ի Վրաց պատմութենէն... զի ժամեալ էր յիշատակ նախնական գրուցաբանութեանց նոցա, նա և ամենայն արութիւնք և գործք երևելիք ի տանն Վրաց ազգին Օրբէլեանց* ի նոցին ժամանակագրոցն զոր Քարթլիս-ցխովրեբայ կոչեն, *վասն այն մեք ոչ գիտացաք զորպէսն և զկարգ բանիցն զի և ըստ կարգի շարայարեալ էաք ի մատենիս,* *բայց* զոր գտաք ի հայալեզու գիրս սակաւ ինչ յիշատակ՝ *գիցուք, ևս և զվախճան կատարածի նորա, զոր հաւաստեաւ ծանոյց մեզ գեղեցիկ պատմութիւնն Մխիթարայ Անեցւոյ» (Պատմութիւն նահանգին Սիսական արարեալ Ստեփաննոսի Օրբէլեան արքեպիսկոպոսի Սիւնեաց [Ղուկասեան Մատենադարան IV], Թ. 1911, եջ 372—373)։*

*Մի կողմ թողնելով «Պատմութիւն Վրաց»-ի* (Chronique Arménienne-*ի) անկատար, վորը մեզ հասել ե առնվազն 3 գրչագիր օրինակով (յերկուսն Եջմիածնի մատենադարանինը, վորոնցից մեկը Կարապետ արքեպ. Բաղրատունովի ձեռքի տակ եղածն ե, վորտեղից ընդօրինակված ե Վենետիկի Մխիթարյանց ձեռագիրը, և մեկն էլ Լենինգրադի Գիտությանց ճեմարանի նախկին «Ասիական թանգարանի», այժմ «Արևելագիտության ինստիտուտի»), բավական ե ասել, վոր դրանցից հնագույնն ե Եջմիածնի մատենադարանի հին հավաքածուի № 1902 (=1792), վորն ըստ M. Bros-set-ի* (Histoire de la Géorgie. Introduction, SPB. 1858, p. XVIII. Voyage archéologique dans la Géorgie et dans l' Arménie, III rap., 1849, p. 2) *1279—1311 թ. թ. ե գրված։ Այլ հարց ե, թե ով ե այդ խմբագրության հեղինակը կամ կազմողը, վորին առայժմ վոչ*

*մի գրական պատասխան չի կարելի տալ*, *թեև* Ք. Պատկանյանը (Ванские надписи и значение их для истории Передней Азии. О древней грузинской хронике, — «Журнал Министерства Народного Просвещения», 1883, декабрь, стр. 243—244) *այն անգետ մի հայ վանականի գործ էր համարում* («автор древней Грузинской Летописи едва ли природный Грузин, вероятнее всего малограмотный армянский монах): *Այնուամենայնիվ, այս խմբագրությունը, ասել է «Պատմութիւն Վրաց»-ին, գիտական աշխարհում միշտ կարևոր նշանակություն է ընծայվել. և այս է պատճառը, որ նրա շուրջը հատուկ գրականություն էլ գոյություն ունի, այն է. 1. M. Brosset.* Chronique Arménienne (Additions et éclaircissements à l'Histoire de la Géorgie, SPB. 1851) — *հայերեն տեքստի ամբողջական ֆրանսերեն թարգմանությունը. 2. К. Патканов.* Ванские надписи и значение их для истории Передней Азии. О древней грузинской хронике (Журнал Мин. Нар. Просв., 1883, декабрь, стр. 199—274)—*հայերեն տեքստի ուսումնասիրությունը՝ սկզբնական մասի ռուսերեն թարգմանությամբ հանդերձ. 3. Համառօտ Պատմութիւն Վրաց ընծայեալ Ջուանշէրի պատմչի,* Ա[բրահամ] վ. Թ[իրոյեան]ի *աշխատասիրեալ (Մատենագրութիւնք նախնեաց, Վենետիկ 1884)—հայերեն տեքստի հրատարակությունը. 4. Н. Марр.* Из летней поездки в Армению. Заметки и извлечения из армянских рукописей. VII. Об армянском тексте Грузинских летописей («Записки Вост. Отд. Рус. Археолог. о-ва», т. V, 1890), *նույնը հայերեն.* Ն. Մառ. *Ամառնային ուղևորութիւնից դէպ ի Հայս, թարգմ.* Ո. Աճոփեան (*«Ազգային Մատենադարան» է, Վիեննա 1892)—հայերեն տեքստը պարունակող Էջմիածնի հնագույն ձեռագրի ուսումնասիրությունը.* 5. Յուստին Աբուլաձե. *Վրաց տարեգրության հին հայերեն թարգմանության առթիվ, վրացերեն («Մոգզաուրի» ամսագիր, 1901, № IV)—դիտողություններ հայերեն տեքստի ադավաղումների մասին. ըստ իս՝ հեղինակը հայտնում է, որ ինքը հայերեն տեքստը «վրացերենի է վերածել IX—X դարու լեզվով» (ինչպես* Սարգիս Կակաբաձեն *իր «Պատմական պրպտումներ» ժողովածուի մեջ, էջ 155, հայտնում է, որ «[Վրաց] մատեն[ագրության] այս հին վերսիան» ինքն էր «վերածել և հայերենից հին վրացերենի» 1908 թվին). և 6.* Յեղիա վ. Քասուեի. *Վրաց ժամանակագրությունը («Հանդէս Ամսօրեայ» 1921 թ. №№ 9—10, 11—12, 1922 թ. №№ 2—3)—հայերեն տեքստի ուսումնասիրությունն ըստ էության։*

Ինչ վերաբերում է «Քարթլիս ցխովրեբա»-ի բուն տեքստին, այն հետզհետե կազմված ժողովածու չէ, վորը պարունակում է բազմաթիվ յերկասիրություններ զանազան պատմիչների՝ սկսած XI դարից (յեթե վոչ ավելի հին) և մինչ XVIII—XIX դար։ Այդ պատմիչներից հնագույններն են նրանք, վորոնց գրվածքները համառոտվել են և ի մի ձուլվել դեռ ելի XII դարում՝ վորոշ արտահայտություն ստանալով «Պատմութիւն Վրաց»-ի (Chronique Arménienne-ի) մեզ չհասած վրացերեն բնագրի մեջ։ Ահա և այդ պատմիչների անունները այն հաջորդականությամբ, ինչպես նրանց յերկասիրությունները զետեղված են «Քարթլիս ցխովրեբա»-ի այսպես կոչված «Մարիամ թագուհու վարիանտում». 1. **Լեոնտիոս Մրովելի (Լեոնտի Մրովելի)**— «Վրաց թագավորների և նախահայրերի ու տոհմերի պատմությունը», 2. **Ջուանշեր Ջուանշերյան** (ըստ **Կ. Կեկելիձեի**՝ նույն Լեոնտիոս Մրովելին)— «Վախտանգ Գորգասալի պատմությունը», 3. **Լեոնտիոս Մրովելի**— «Արչիլ թագավորի վկայաբանությունը», 4. **Անանուն** — «[Վրաց (Քարթլիի) մատյանը]», 5. **Անանուն** — «[Դավիթ] արքայից-արքայի պատմությունը», և 6. **Սմբատ վորդի Դավթի**—«Բագրատունյաց պատմությունը»։ Սակայն, յուրաքանչյուր հեղինակի մասին առանձին խոսելիս, մենք նպատակահարմար գտանք այս հաջորդականությունը չհետևել, այլ դասավորել նրանց ժամանակագրական կարգով՝ առաջնություն տալով Դավթի վորդի Սմբատին, ապա միմիայն Լեոնտիոս Մրովելուն և Ջուանշեր Ջուանշերյանին և, ի վերջո, անանուն հեղինակներին։

Քաղվածքները վրացերեն բնագրերից հայերեն թարգմանությամբ մենք տալիս ենք համաձայն հետևյալ հրատարակությունների.

1. **Ե. Թաղ՚այշվիլի**. Քարթլիս-ցխովրեբա. Մարիամ թագուհու վարիանտը, վրացերեն, Տփղիս 1906, եջ 1—361։

2. **Մ. Բրոսե**, Քարթլիս-ցխովրեբա. վրացերեն, ՍՊԲ. 1849, եջ 15—263 (նույնը ստերեոտիպ արտատպությամբ՝ Ն. Մառ. Քարթլիս-ցխովրեբա, Պետրոգրադ 1923, եջ 15—200, կիսատ մնացած)։

Միաժամանակ օգտագործած ունենք և ֆրանսերեն թարգմանությունը վրացերենից՝ M. *Brosset*. Histoire de la Géorgie, I Partie. I-e Livraison, SPB 1849, ամբողջ (p. p. 15--381)։

Ընդ սմին, յուրաքանչյուր հատվածի կամ քաղվածքի կողքին, յեթե այն այսպես թե այնպես զուգադիպում է «Պատմութիւն Վրաց»-ի (Chronique Arménienne-ի) հայերեն տեքստին, մենք

## Ա.

# ՍՄԲԱՏ ՎՈՐԴԻ ԴԱՎԹԻ (XI Դ.)

## „ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ“

*Քարթլիս-ցխովրեբայի Մարիամ թագուհու վարիանտում «Դավիթ արքայից-արքայի պատմությանը» (տես այս պրակի Ե. գլուխը) անմիջապես հետևում է մի փոքր յերկասիրություն հետևյալ վերնագրով. «Պատմություն և տեղեկանք մեր վրաց Բագրատունյաց (Բագրատունյան) թագավորների մասին, թե վորտեղից յեկան նրանք այս յերկիրը կամ վոր ժամանակից ունին նրանք գրաված Վրաց (Քարթլիի) թագավորությունը, վոր գրեց Սմբատ՝ Դավթի վորդին»։*

*Այս յերկասիրությունն առաջին անգամ հրատարակեց Ե. Թաղ՚այշվիլին իր հայտնի աշխատության մեջ «Յերեք պատմական քրոնիկա» (վրացերեն, Տփղիս 1890), եջ 41—79, տալով առանձին և նրա ռուսերեն թարգմանությունը համապատասխան աշխատության մեջ՝* Источники грузинских летописей — Три хроники («Сборник материалов для описания местностей и племен Кавказа», в. XXVIII, 1900), стр. 117–182: *Այս յերկրորդ անգամ այն հայտնի դարձավ «Մարիամ թագուհու վարիանտի» հրատարակումով, վորը նույն Ե. Թաղ՚այշվիլին լույս ընծայեց (վրացերեն, Տփղիս 1906), եջ 337—361։ Ինչ վերաբերում է Քարթլիս-ցխովրեբայի Վախտանգյան խմբագրությանը, այնտեղ այդ յերկասիրությունը [illegible], եջ 161—163, 188* et pass., *վորոնք գիտական արժեքից միանգամայն զուրկ են (հմմ. նույնը Բրոսսեի թարգմանությամբ՝* Histoire de la Géorgie, I, 1. p. p. 216–220, 261 et pass.):

*Թե ով եր Դավթի վորդի Սմբատը, դրա մասին վոչինչ հայտնի չէ. սրա մասին վոչ նրա յերկասիրության մեջ կա վորևէ տեղեկություն և վոչ էլ այլուր։ Սակայն, ինչպես իր*

ժամանակին Ե. Թաղայշվիլին (Յերեք պատմական քրոնիկա, CIX) նկատել, «նա միանգամայն անծանոթ է մեզ, թեև հավանական է թվում, որ նա Տայք-Կղարջքյան Բագրատունիներից (Բագրատիոններից) լինի, և ապրում էր տասնմեկերորդ դարում»։ Յեվ խոսք, Սմբատն իր պատմությունը սկսում է Ադամից և հասցնում մինչև Բագրատ IV (1026—1062) թագավորությունը՝ կրճատ թողնելով վերջինիս նկարագրությունը։ Ուրեմն պարզ է, որ նա XI դարու կեսի կամ առաջին կեսի հեղինակ պիտի լինի, մանավանդ յեթե ի նկատի առնենք այն հանգամանքը, որ նրա պատմությունը նույն XI դարու յերկրորդ կեսում օգտագործած ունեին Լեոնտիոս Մրովելին (տես այս գրքի Բ. գլուխը) և Ջուանշեր Ջուանշերյանը (տես Գ. գլուխը)։

Դավիթ Կարիճաշվիլին իր հատուկ հոդվածում «Ո՞վ պիտի լինի Սմբատի (Սումբատի) քրոնիկայի հեղինակը» (Վաղեմի Վրաստան, վրացերեն, հ. I, Տփղիս 1909, էջ 36—42) այն միտքն է հայտնում, որ «Սմբատը (Սումբատը) պիտի լիներ որդի Դավթի, որը Բագրատ յերրորդի պապի յեղբոր՝ Ատրներսեհ (Ադարնասե) Կուրապալատի որդին էր, որը 1032 թ. դեռ էլի կենդանի յե յեղել» (էջ 41)։

Իվ. Ջավախիշվիլին (Հին վրացական պատմական գրականություն, բ. տպ., 195) իրավացիորեն նկատած ունի, որ հեղինակը թշնամի յե և հակառակորդ ֆեոդալական կարգերի և հանդիսանում է ջատագով Բագրատունյաց միահեծանության։ Մեր կարծիքով, Դավթի որդի Սմբատի յերկասիրությունը վրաց պատմագրության հանդեպ նույն դերն ունի ստանձնած, ինչ հայ պատմագրության հանդեպ կատարած ունեին Բագրատունյաց շրջանի հայ պատմիչները՝ լինեին նրանք աշխարհական (Շապուհ Բագրատունի, դեռ չհայտնագործված) թե հոգևորական (կաթողիկոս-վարդապետ-ուսուցիչներ)։

## [ԲԱԳՐԱՏՈՒՆՅԱՑ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԻՑ]

...Յեվ Սողոմոնի այս յոթ յեղբայրները յեկան Յեկեղեց (Եկլեց) Խաքայել այիկնոջ (Թագուհու) մոտ, և նրանից մկրտվեցին։ Յեվ մնացին նրանք Հայոց (Սոմխիթի) յերկրում, և այնտեղ այն օրվանից ցայսօր նրանց զավակները տիրում են Հայքին (Սոմխիթին)։ Նրանցից չորս յեղբայրները յեկան Քարթլի, որոնցից մեկին՝ Գուարամ անուն՝ նշանակեցին իշխան (երիսթավ)։ Յեվ

յով կռվի նրա դեմ։ Խուսափելով Բասիլից՝ Գեորգը [հետ] դարձավ և ավերեց քաղաքն Ո[ւ]ղթյաց (Ոլթիսը). ապա նրան հետամուտ յեղավ հունաց (բերձենների) թագավորը... [Յետ] վերադարձավ Վասիլը Թուխարքով (Թրիալեթով), շրջեց Ջավախքն (Ջավախեթն) ու Արտահանը (Արտանը) ձմեռն պահին,... ապա գնաց և ձմեռեց Խաղտյաց (Խալդաս) յերկրի Տրապիզոն քաղաքում[4]...

Այս Վասիլը կրկին վերադարձավ՝ գալով Բասեն (Բասիան), պահանջելով Գեորգ թագավորից [գիրկը] նրան բերդերն ու գավառները և խոստանալով [փոխարեն] հաշտություն և խաղաղություն...

...Սրանից հետո (հունաց Կոնստանդինի թագավորի մահվան և Թեոդորայի գահակալության) չորրորդ թվին յերանելի Մարիամ թագուհին՝ Բագրատ թագավորի մայրը, վորը կորովամիտ և քաջարի յեր իբրև պայծառադեմ, հզոր և մեծ Արշակ[ունի]յաց թագավորների շառավիղ[5], գնաց Կոստանդնուպոլիս Թեոդորա թագավորի մոտ, խնդրելու՝ խաղաղություն մեզնի արևելքում, վորպեսզի պատերազմ չլինի այլևս հունաց (բերձենների) և վրաց (քարթվելների) միջև[6]...

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Թագավորական 372—398 թ. թ.։

2. Փղշտացվոց մասին հատկապես տես. *А. Захаров*. Филистимляне (Глава из истории Эгейского мира),—«Сообщения Российского Палестинского О-ва», т. XXIX, 1925, стр. 71—110. *Н. Марр*, Филистимляне, палестинские пеласги и расены или этруски (Из мира лошадей от Пиренеев до Малой Азии, до Руси),—«Еврейская мысль», т. I, Лнгр. 1925. стр. 1—31։

3 Այսինքն 228+780 1008։

4. Ուղթյաց քաղաքի ավերման և Խաղտյաց յերկրով Վասիլի Կոստանդնուպոլիս վերադառնալու մասին խոսվում է ի միջի այլոց, և հայ պատմիչների՝ Ասողիկի (Ստեփաննոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական, ՍՊԲ. 1885, եջ 278) և Արիստակես Լաստիվերտցու (Պատմութիւն Արիստակիսի վարդապետի Լաստիվերցւոյ [Ղուկասեան Մատենադարան 6], Թ. 1912, եջ 5, 7, 12, 16) յերկասիրությանց մեջ։

5. Վրաց պատմիչը, անկասկած, սխալվում է՝ համարելով Բագրատի մայր Մարիամ թագուհուն Արշակունյաց սերնդից. մինչդեռ հայտնի յե, ինչպես իր ժամանակին դեռ նկատել է *M. Brosset* (Histoire de la Géorgie, I, p. 314, n. 1) և ապա Ե. Թաղայշվիլին (Источники грузинских летописей, стр. 182 прим. 1) նշեցին, վոր նա Արծրունյաց Սենեքերիմ թագավորի դուստրն էր։ Այս Մարիամը՝

իրեն «Ափխազաց և Հայոց թագուհի, դուստր մեծին Սենեքերիմա եւ. Թոռն Գագկա Հայոց արքայի»՝ հիշված է Մարմաշենի 1033 թ. մի արձանագրության մեջ (*И. Орбели*, **Надписи Мармашена. Пгр. 1914**, стр. 3). և ըստ Կ. Կեկելիձեյի հետազոտության (Ցերկու. Յեփիմիոս վրաց հին գրականության մեջ, վրացերեն,—էջ 112—113 և ծանոթ. 1 էջ 113), կենդանի յե յեղել 1065 թվին։

6. Վրաց Բագրատունյաց և նրանց ծննդաբանության մասին առհասարակ տես. *M. Brosset*, **Histoire des Bagratides géorgiens d'après les auteurs arméniens et grecs, jusq'au commencement du XI s., SPB 1843**։ Նույնի, **Additions et éclaircissements à l'Histoire de la Géorgie, SPB 1851, p. p. 138—188 (Add. IX. Histoire des Bagratides géorgiens etc.)**. Գ. Ալիշան, *Շիրակ, Վենետիկ 1881 (Ազգատոհմ Բագրատունեաց)*. *А. Грен*. Династия Багратидов в Армении,—«Журнал **Министерства Народного просвещения**» 1893 г., ноябрь, стр. 52—139. *A. Daghbaschian*, **Gründung des Bagratidenreiches durch Aschot Bagratuni, Berlin 1893**. *Y. Marquart*, Osteuropäische und Ostasiatische Streifzüge, **Leipzig 1903**, S. S. 391 -465. Նույնը *հայերեն՝ Բագրատունեաց ծագումը. Ա. Հայ Բագրատունեաց ճյուղագրութիւնը. Բ. Վրական Բագրատունեաց ծագումը. [«Ազգային Մատենադարան» ՀԳ], Վիեննա 1915*. Իվ. Ջավախիշվիլի. *Վրաց ժողովրդի պատմությունը, վրացերեն, գ. II, Տփղիս 1914, հավելված (Բագրատունյաց ծննդաբանական ճյուղը Դավիթ որդի Սմբատ պատմչի ավյալների համաձայն)*. Թամար Լոմոուրի, *Դավիթ որդի Սմբատի և Գեորգ Մերչուլի տեղեկությունները* IX—X *դարերի վրացի Բագրատունիների մասին, վրացերեն,*—«Arili», *Տփղիս 1925, էջ 47—56։ J. Markwart*, **Die Genealogie der Bagratiden und das Zeitalter des Mar-Abas und Ps. Moses Xorenathsi, „Caucasica", Fasc 6, Teil 2 (Leipzig 1930)**։

Բ.

# ԼԵՈՆՏԻՈՍ ՌՈՒԻՍԵՑԻ (ԼԵՈՆՏԻ ՄՐՈՎԵԼԻ) (XI Դ.)

## „ՎՐԱՑ ԹԱԳԱՎՈՐՆԵՐԻ ՅԵՎ ՆԱԽԱՀԱՅՐԵՐԻ ՈՒ ՏՈՀՄԵՐԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ“

### ՀԱՎԵԼՎԱԾՈՒՄ

«Արչիլ թագավորի վկայաբանությունը»

*Քարթլիս-ցխովրեբայի Մարիամ թագուհու վարիանտը (ինչպես և բոլոր այլ վարիանտները) սկսվում է մի ընդարձակ յերկասիրությամբ, որը կրում է (միմիայն Մարիամ թագուհու վարիանտում) հետևյալ վերնագիրը. «Վրաց թագավորների և նախահայրերի (նահապետների) ու տոհմերի պատմությունը»: Այդ յերկասիրությունը գրաված ունի* Ե. Թաղայշվիլու *հրատարակության մեջ 1—116 էջերը, իսկ* M. Brosset-*ի (նույնը և* Ն. Մառի՝ *15—107 էջերը, որոնք համապատասխանում են նույն* M. Brosset-*ի ֆրանսերեն թարգմանության 15—114 էջերը և «Համառոտ պատմություն Վրաց»-ի 7—72: Նույն վարիանտում՝ այնտեղ, ուր վերջանում է* Ջուանշեր Ջուանշերյանի *«Վախտանգ Գորգասալի պատմությունը» և նախ քան «Արչիլ թագավորի վկայաբանությունը»՝ կցված է հետևյալ հիշատակարանը. «Արչիլի վկայությունն ու թագավորների պատմությունը և Վրաց (Քարթլիի) դարձը [ի քրիստոնեություն] Նունեյի (Նինոյի) [ձեռք] գրեցի Լեոնտիոս Ռուիսեցիս (Լեոնտի Մրովելին)»: Այս հիշատակարանը միանգամայն զուգադիպում է՝ «Աննա թագուհու վարիանտ» անունով հայտնի և պրոֆ.* Իվ. Ջավախիշվիլու *պատկանող՝ հնագույն գրչագրի հիշատակարանին (*Իվ. Ջավախիշվիլի. *Նորագյուտ Քարթլիս-ցխովրեբան և Թամար թագուհու յերկրորդ՝ ցարդ անհայտ՝ պատմչի յերկասիրությունը,* — «Bulletin de l'Université de Tiflis». III. 1923, *վրացերեն, էջ 197), նույնպես և Թեյմուրազ արքայազնի վարիանտի հիշատակարանին, որոնցից վերջինն*

ավելացնում է. «իսկ այժմ գրեցի յես՝ Հովհան ավագերեցս» (Ք. Ց., Ն. Թաղ. հրատ., էջ 211 և ծանոթ. 11 ibid.):

Թե որ դարու հեղինակ է Լեոնտիոս Ռուիսեցին (Լեոնտի Մրովելին), դրա մասին հավաստի տեղեկություններ չկան։ Միմիայն հայտնի է, որ նա հիշատակված է Աթոնի Իվերոն կոչված մայրավանքի վրացերեն մի ձեռագրում (№ 61) իբրև «Լեոնտիոս (Լեոնտի)՝ արքեպիսկոպոս Ռուիսի» (*Н. Марр*. Агиографические материалы по грузинским рукописям Ивера. ч. I.—«Записки Вост. Отд. Рус. Арх. О-ва», т. XIII. 1900, стр. 84): Մյուս կողմից, Իվ. Ջավախիշվիլին նկատած ունի (Հին վրացական պատմական գրականություն, բ. տպ., 170), որ Լեոնտիոսի յերկասիրության մեջ խոսվում է Անդրեաս և Սիմոն Կանանացի առաքյալների քարոզչության մասին Վրաստանում, որն իբրև նորամուծություն միմիայն XI դարուցն է մտնում վրաց գրականության մեջ։ Վերջապես, նույն Լեոնտիոսը քանիցս հիշատակված է՝ իբրև դեռ ևս կենդանի և ոչ մեռած՝ Պարիզի Ազգային Մատենադարանի վրացերեն ձեռագրաց հավաքածուի № 9-ի մեջ, որը XI դարումն է գրված (*E. Takaïchvili*, Les manuscrits Géorgiens de la Bibliothèque Nationale de Paris et les vingt alphabets secrets Géorgies Paris 1933. վրացերեն, p. 42 et n. **):

Ըստ այսմ, ուրեմն, Լեոնտիոս Ռուիսեցին XI դարու հեղինակ պիտի համարել։

Առանձնապես հետաքրքիր է Լեոնտիոսի յերկասիրության հայկական աղբյուրների հարցը, որը որոշ պատմություն ունի։

Գիտական շրջաններում վաղուց արդեն այն կարծիքն եր հաստատվել, որ Քարթլիս-ցխովրեբայի սկզբնական մասը, այսինքն Լեոնտիոս Ռուիսեցու յերկասիրությունը, ի միջի այլոց, հայ պատմիչների ազդեցության դրոշմն է կրում։ Նույն Ք. Ց.-ի մի գրչագրում, որը XIX դարու սկզբներին է ընդօրինակված և հայտնի յե Վրաց մեջ գրագիտություն տարածող ընկերության հավաքածուի № 3665-ի ներքո, պրոֆ. Դ. Չուբինովի ձեռքով լուսանցքներում մի քանի տեղ ծանոթություն է կցված **Մովսես Խորենացին** անվան հիշատակությամբ, որը վրաց տարեգրության նախադրյալներից մեկն է ճանաչված (տես ձեռագրի էջ 5 a, 18, հմմ. նաև *Е. Такайшвили*, Описание рукописей «Общества распространения грамотности среди грузинского населения». т. II, стр. 8): Նույնը հարևանցիորեն ակնարկած ունի և *M. Brosset*-ն (Histoire de la Géorgie, I, p. 16, n. 1, et pass.): Իսկ

Դ. Բաքրաձե (Об источниках и характере первоначальных преданий «Картлис-Цховреба» или Грузинских летописей. - «Известия Кавказского О-ва Истории и Археологии», т. I, в. 1, Тфл. 1882, стр. 36—37) ջանում էր ապացուցել, որ Ք. Ց.-ի սկզբնական մասը, անշուշտ շփման կետեր ունի Մար-Աբասի, Մովսես Խորենացու և Ագաթանգեղոսի պատմության հետ։

1908—1910 թ. թ. լույս ընծայած իր «Գրություններ Վրաստանի պատմությունից» վրացերեն աշխատության II մասի մեջ (էջ 21—23) Ս. Գորգաձե աշխատում էր ապացուցել, որ Ք. Ց.-ի սկզբնական մասի հեղինակը, անպայման, հայկական աղբյուրների և մանավորապես Մ. Խորենացու ազդեցության տակ է յեղել գտնվել։ Ապա 1915 թ. լույս ընծայած մեր ուսումնասիրության մեջ՝ Грузинская версия Агафангелия и ее значение для грузинской историографии («Христ. Восток», т. V. стр. 155—170)՝ մենք միառ հայտնեցինք, որ Ք. Ց.-ի նույն մասի հեղինակի ձեռքի տակ է ունեցել ոչ թե Մ. Խորենացու, այլ Ագաթանգեղոսի պատմությունը, այն էլ ոչ թե սկզբնական կամ VIII դարու խմբագրությամբ, այլ Սիմեոն Լոգոթետոսի ձեռքով մետափրաստի վերածածը, հավանորեն X դարու հունարեն բնագիրը և ոչ թե վերջինիս՝ 1081 թվի վրացերեն թարգմանությունը, որը մենք հրատարակեցինք 1920 թվին։ 1916 և 1921 թ. թ. հրատարակած իր «Հին վրացական պատմական գրականություն» աշխատության մեջ Իվ. Ջավախիշվիլի մեզանից միանգամայն անկախ այն կարծիքն ունի հայտնած, որ Լեոնտիոսը հայկական աղբյուրներից ձեռքի տակ է ունեցել Գրիգոր Լուսավորչի վկայաբանությունը, որին նա յերբեմն «Հայոց պատմություն» և յերբեմն «Հայոց դարձի պատմություն» է կոչում (ա. հրատ., 125, բ. հրատ., 184—185)։ Ապա Կոռն. Կեկելիձեն իր համառոտ ուսումնասիրության մեջ «Լեոնտիոս Մռովելցին (Լեոնտի Մրովելու) գրական աղբյուրները» («Bulletin de l'Université de Tiflis», III, 1923, վրացերեն էջ 4—14)՝ արծարծելով այն դրույթն, որ Լեոնտիոսն իր յերկասիրությունը գրելիս ձեռքի տակ է ունեցել 4 տեսակի աղբյուրներ՝ հայերեն, պարսկերեն, հունարեն և վրացերեն, յենթադրում է, որ հայկական աղբյուրներից նրան նյութ պիտի ծառայեյին «Հայոց դարձի» կամ Ագաթանգեղոսի պատմությունը, Հռիփսիմյանց վկայաբանությունն և «Հայոց պատմություն» կամ Մովսես Խորենացու անվամբ հայտնի պատմությունը։ Նույնը և Կեկելիձեն կրկնում է և իր «Վրաց գրականության պատմության»

I հատորի մեջ (1923, էջ 245—246), միայն այն տարբերությամբ, որ Հախուխմյանց վկայաբանությունն այլևս չի հիշատակում։

Ընդ սմին, առանձին պետք հիշատակել Ս. Կակաբաձեի անունը, որը 1912 թ. հրատարակած իր բրոշյուրի մեջ (О древне-грузинских летописцах XI столетия (стр. 23, 26—27) համարում էր Լեոնտիոսին XI դարու պատմիչ. մինչդեռ 1924 թվից սկսած հետզհետե փոխեց իր կարծիքը՝ դասելով նույն Լեոնտիոսին X դարու սկզբների (900—920) գրողների շարքը (տես Պատմական պրպտումներ, 1924, էջ 191. Պատմական ժողովածու, II, 1928 էջ 68)։ Միաժամանակ նա կարծում է, որ «Թագավորաց պատմության»՝ Մովսես Խորենացու հետ ունեցած առնչության հարցը պետք հանվի (Պատմական պրպտումներ, 150). «որ Թագավորաց պատմության հեղինակը հայկական գրական աղբյուրների վրա չէր հենվում և այդպիսիներն օգտագործելույց խուսափում էր,— ասում է Ս. Կակաբաձեն (ibid.),—սա պարզ յերևում է այն հանգամանքից, որ պատմիչն օգտվում է, ինչպես գրականության մեջ արդեն հայտնի յէ (ակնարկում է մեր վերոհիշյալ հոդվածը, էջ 162), և Ագաթանգեղոսով, սակայն ոչ թե նրա հայկական վերսիայով, այլ հունարենով»։

## [ԹՈՐԳՈՄՅԱՆՔ]

Նախ և առաջ հիշատակենք այսպես, որ հայոց (սոմեխների) և վրաց (քարթվելների)*, առանաց և մովականաց, հերաց և լեզգիների (լեկաց), յեգրաց (մեգրելների) և կովկասյաց՝ սոցա բոլորի հայրը մի էր Թորգոմ (Թորգամոս) կոչեցյալը։ Այս Թորգոմը (Թարգամոսն)՝ էր որդի Թարշ[ս]ի, որդվո [Յ]ավանա, որդվո Յաբեթի, որդվո Նոյի¹։

Ցեվ այս Թորգոմը (Թարգամոսը) քաջ մարդ էր։ Ցեվ լեզուների բաժանումից հետո, յերբ Ներբոթը Բաբելոնում աշտարակ շինեց և լեզուները բաժանվեցին՝ ի սփյուռս ամբողջ աշ-

Յիշատակ արասցուք այսմ՝ զի հայոց և Վրաց և Առանաց և Մովկանաց և Հերանաց և Լեկաց և Կովկասեաց և Եգերաց հայր՝ մի էր սոցա, Թորգոմ կոչեցեալ, որդի Թիրասայ, որդւոյ Գամերայ, որդւոյ Յաբեթի, որդւոյ Նոյի։

Եւ էր նա այր քաջ և հսկայ։ Ի յայսմ կործանման աշտարակին և բաժանման լեզուացն, և ի սփռելն մարդկան ի վերայ երկրի, եկն բնակեցաւ ի մէջ լերանց Մասեաց և Արարատու։

* Var. հայոց և վրաց] վրաց և հայոց. Так., Опис. II, 11:

խաբելի, այս Թորգոմը (Թարգամոսը) իր ամբողջ ժողովրդով յեկավ և բնակություն հաստատեց յերկու լեռների՝ Արարատի և Մասիսի[2] միջև, վորոնք անմատչելի յեն մարդկանց համար *։

Յեվ նրա ժողովուրդը մեծ եր և անհամար, քանի վոր եյին բազում կանայք, ուստրեր և դստրեր, վորդիք և թոռներ ուստրերաց և դստրերաց նրա, [և] քանի վոր նա (Թորգոմը) ապրեց վեցհարյուր տարի։

Որոյ էին բազում կանայք. և ծնան նմա ուստերք և դստերք որդւոց և դստերաց նորա. և եկաց ամս վեցհարիւր։

Յեվ այս՝ Արարատի և Մասիսի[3] յերկիրը, վոր վիճակվել եր նրանց, այլևս չեր կարողանում նրանց տեղավորել։ [Յեվ] նրա (Թորգոմի) յերկրի սահմաններն այս են. արևելքից՝ ծովը Գուրգանի**, արևմուտքից՝ ծովը Պոնտոսի***, հարավից՝ լյառն Որեթի****, և հյուսիսից՝ լյառն Կովկասու (Կովկասիա)։

Եւ չբաւէր երկիրն բազմութեան ազգի նորա. վասն որոյ տարածեցան և ընդարձակեցին զսահմանս լերանց ի ծովէն Պոնտոսու մինչև ի ծովն Հիրեթայ և Կասպից, և առ լերամբքն Կովկասու։

Բայց Թորգոմի (Թարգամոսի) որդվոց մեջ ութը հայտնի դարձան [իբրև] քաջարի և անվանի հսկաներ, վորոնց անուններն են. առաջինին կոչվում եր Հայկ (Հաոս), յերկրորդը՝ Քարթլոս*****, յերրորդը՝ Բարդոս, չորրորդը՝ Մովական, հինգերորդը՝ Լեկոս, վեցերորդը՝ Հերոս, յոթերորդը՝ Կավկաս, ութերորդը՝ Եգրոս։ [Յեվ] այս ութ [յեղբայրները] հսկաներ եյին։

Եւ ընտրեցան յորդւոց նորա արք ութ արիագոյնք և անուանիք. առաջինն Հայկն, երկրորդն Քարթլոս, երրորդն Բարդոս, չորրորդն Մովկան, հինգերորդն Լեկան, վեցերորդն Հերոս, եօթներորդն Կովկաս, ութերորդն Եգրէս։

Բայց Հայկը (Հաոսը) ամենքից հսկան եր, վորովհետև նրա նման վոչոք չի յեղել յերբեք վոչ ջրհեղեղից առաջ [և] վոչ էլ հետո՝ հասակով (բոյով), ուժով և արիությամբ։

Եւ Հայկն առաւել էր ուժով և քաջութեամբ, որ չեղև նման նմա ի վերայ երկրի, ոչ յառաջ քան զջրհեղեղն և ոչ յետոյ՝ մինչև ցայսօր ժամանակի։

Բայց Արարատի և Մասիսի[4] յերկիրն այլևս չեր կարողանում [նրանց] տեղավորել։

* Var. յերկու լեռների՝ Արարատի և Մասիսի միջև, վորոնք անմատչելի յեն մարդկանց համար] ի մեջ Կովկաս (Կավկասիա), Արարատ և Մասիս լեռների, վոր ամուր ե[ն] և անմատչելի մարդկանց համար։ Так., Опис. II, 11։

** Var. + վոր այժմ կոչվում ե Գիլանի։

*** Var. + վոր այժմ կոչվում ե Սև ծով։

**** Var. + վոր քյուրդերի յերկրումն ե։

***** Var. 1. Հաոս. 2. Քարթլոս] 1. Քարթլոս. 2. Հաոս. Так., Опис. II, 11—12։

*Թորգոմը (Թարգամոսը) բաժանեց իր յերկիրն ու ժողովուրդն այս ութն հսկաների միջև. իր ժողովրդը կեսն և իր յերկրի լավագույն մասը (կեսը) տվեց Հայկին (Հաոսին). իսկ մյուս յոթին տվեց նրանց հասանելիքն ըստ յերիցության**:...*

*Սոյա բաժանեաց Թորգոմ զաշխարհն իւր. եւ զկէսն Հայկին. և զկէսն եւթանց որդւոցն՝ ըստ արժանւոյ նոցա...*

*Բայց Հայկը (Հաոսը) ժառանգեց իր հոր՝ Թորգոմին (Թարգամոսին) պատկանյալ յերկիրը, և տիրեց [սահմանակից] յերկ[րների]րին. հյուսիսից՝ ինչպես մատնանշել ենք, հարավից՝ Արեժ* (sic) *լեռամբ, արևելքից՝ մինչև ծովը Գուրգանի, արևմուտքից՝ մինչև ծովը Պոնտոսի: Յեվ այս յոթն հսկաների կառավարիչն ու իշխանն էր Հայկը (Հաոսը), և այսպես բոլորը հպատակ եյին Հայկին (Հաոսին), և բոլորը մի լեզու ունեյին՝ հայերենը (սոմխուրիը)*. *իսկ ութներյան միասին եյին ի ծառայության Նեբրովթ հսկայի, վորն առաջին արքան էր ամբողջ աշխարհում***:

*Իսկ Հայկն զհաստատեալն ժառանգեալ հայրենիքս՝ ասացեալ սահմանօքն. և էր իշխան եւթանցն եղբարց, և կային ի ծառայութեան Նեբրովթայ հսկայի, որ նախ թագաւորեաց ամենայն երկրի:*

*Սրանից հետո մի քանի տարի անց Հայկը (Հաոսը) գումարեց նույն յոթն հսկաներին, ժողովեց նրանց և ասաց. «Բարձրյալ աստվածը տվեց մեզ ուժ և բազմություն մեր ժողովրդի. այժմ օգնականությամբ արարիչ աստծո չլինենք այլևս վոչորի ստրուկ և վոչորի չծառայենք, բայց արարիչ աստծույ»: Յոթն հսկաները՝ համաձայնվելով նրան՝ հաստատեցին նրա (Հայկի) մտադրությունը,*

*Իսկ զկնի սուղ ամաց անցելոյ՝ ի մի հաւաքեաց Հայկն զեղբարս իւր և զազգ նոցա. Լուարուք ինձ, հարազատք իմ. անհաւատալի եմ մեզ Աստուած զօրութիւն և ժողովուրդ բազում. և արդ՝ վասն օրհնութեանն որ ի վերայ մեր՝ մի՛ ծառայեսցուք այլոյ, այլ Աստուծոյ ճշմարտի: Եւ հաւանեցան ամենեքեան, ապստամբեալ՝ չետուն զհարկն, որկեալ յինքեանս զշրջակայս ազգացն: Եւ լուեալ*

---

* **Var.** *Թորգոմը (Թարգամոսը) բաժանեց... ըստ յերիցության] Թորգոմը (Թարգամոսը) բաժին հանեց իր վորդվոց [հեռակայ] տեղերն ու սահմանները. Բարթլոսին տվեց իշխանություն Կասպից ծովից մինչև ծովը Պոնտոսի և դարձրեց նրան իշխան բոլոր յեղբայրների, և այս յեղբայրներին էր՝ յուրաքանչյուրին բաժին հանեց հեռակայ տեղերը..., իսկ Հայկին (Հաոսին) հատկացրեց այնտեղ, ուր ինքը Թորգոմն (Թարգամոսն) էր ապրում, Արարատ լեռան մոտ, և տվեց նրան Մասիս սարից, վոր այժմ Ալագազ է կոչվում, մինչև Մարաց սահմանները...,* Так., Опис. II, 12:

** **Var.** *Յեվ այս յոթն հսկաները... ամբողջ աշխարհում] Բարթլոսը տիրում էր իր մյուս յեղբայրների վրա, իսկ Հայկը (Հաոսը) իր բաժնում. և բոլորը մեծ սիրով եյին կապված իրար հետ. և հպատակ էր Հայկը (Հաոսը) իր ժողովրդով Ասորեստանի արքա Նեբրովթին:* Так., Опис. II, 13:

և ուրացան Նեբրովթին՝ հարկ չտալով նրան այլևս։ Սրանց հետ մի քանի այլ ժողովրդներ եւ համամիտ յեղան, իսկ մյուսները յերկյուղից դարձան։ Այս բարկացավ Նեբրովթը, ժողովեց իր հսկաներին, և բոլոր հավատարիմ զորավարներին, և դուրս յելավ ընդդեմ Թորգոմյաններին (Թարգամոսյաններին)։ Իսկ Հայկը (Հայոսը) գլխեց յոթնեքյան հսկաներին, և Թորգոմի (Թարգամոսի) ժողովրդին, և նրանն ազնուեթյուն ցույց տվին արեւմտյան այլ և այլ ժողովրդներին եւ։ Սրանց բոլորին ժողովեց Հայկը (Հայոսը) և կանգնեց Մասիսի ստորոտում։ Յեվ յերբ մոտեցավ Նեբրովթը Ատրպատականյան (Ասորաբադագան) աշխարհին և կանգնեց այնտեղ, վաթսուն հսկա և՝ նրանց հետ՝ հզոր զորավարներ ուղարկեց Թորգոմյաններին (Թարգամոսյաններին) կարգի կանչելու համար։ Հենց վոր Նեբրովթի զորավարները մոտեցան, Հայկի (Հայոսի) յոթն հսկաները մեծ զորքով դիմավորեցին [նրանց], իսկ Հայկը (Հայոսը) հզորագույն զորքով կանգնեց յետևից՝ Թիկունքում։ Նրանց միջև տեղի ունեցավ սաստիկ պայքար, վոր նմանվում եր ողի սաստկությանը, քանի վոր նրանց վոտների փոշին նման եր կուտակված ամպերին, նրանց զրահի փայլատակումը՝ յերկնքի կայծերին, նրանց բերանի ձայնը՝ վորոտման ձայնին, նրանց նետերի բազմությունն ու քարերի ձգումը՝ խիտ կարկուտին, և նրանց արյունահոսությունը՝ կարկուտի առուներին։ Ծավալվեց պայքարը նրանց միջև, և յերկու կողմից եւ յեղան անթիվ կոտորվածներ։

Ներբովթայ՝ բարկացաւ, և առեալ ամբոխ բազում հսկայից և խառնադանջից, և դիմեաց ի վերայ նոցա, և եկն յԱտրպատական յաշխարհն։ Եւ Հայկն կայր իւրայովքն առ ստն Մասեաց. և առաքեաց Ներբովթ վաթսուն հսկայս՝ յոլովից բազմութեամբ. և խառնեալք ի միմեանս՝ ահագին և սաստիկ բախմամբ իբրև զձայն որոտմամբ ամպոց. և եղեն կոտորուած յերկոցունց կողմանցն անթիւ և անհամար։

Իսկ Հայկը (Հայոսը) նույն հսկաների յետևից եր կանգնած, քաջալերում եր նրանց և մխիթարում ահարկու ձայնով, վոր կայծակի ձայնին եր նման։ Այս Թորգոմյանք (Թարգամոսյանք) հաղթահարեցին և կոտորեցին Նեբրովթյան հսկաներին և նրանց զորավարներին։ Իսկ Թորգոմյան (Թարգամոսյան)

Եւ Հայկն կայր յետուստ կողմանէ իւրոցն, և սաստկանալով քաջալերէր. և ինքն իբրև զկայծակն սուսերատեկէր շուրջանակի, և ընկենոյր զհսկայսն վաթսունս զօրօքն իւրեանց մինչև իսպառ. եւթանեկին հարազատովքն ողջ մնացեալ ընտրոյն Աստուծոյ, և փառք տային փրկողին իւրեանց ամենակալին։ Եւ

ցնող մեծ զորքով, ընդդեմ Հայոց (սոմխե-ների) և Վրաց և բոլոր Թորգոմյանների (Թարգամոսյանների)։ Իսկ Թորգոմյան-ները (Թարգամոսյանները) բոլորը ժողո-վեցան և դիմեցին Ատրպատական (Ադ-րաբադագան). հաղթահարեցին Փարչո-րատին, որը փախուստի դիմեց, իսկ նրա զորքը ոչնչացրին։

առաջ նոցա Հայոց և Վրաց, դարձին զնոսա յԱտրպատական, և հարեալ ի դիմի՝ կո-տորեցին զբազումս. և փախեաւ Փա-րաբորան ոտկաւուք։

Սրանից հետո մի քանի տարի անց նորից ուղարկեց նույն Քեկապոսն իր թոռան՝ Շիոշ* Ցերջանկի որդուն՝ որը սպանվեց Թուրքաստանում, ինչպես այդ մասին գրած է Պարսից պատմության գրքում, ոչ բոլորն ուղիղ, այլ մեծ մասամբ սուտ։ [Ցեվ] այսպես յեկավ Շիոշի որդին՝ Քախոսրո կոչյալը։ Հա-յերն (սոմխեխներն) ու վրացիները չդի-մադրեցին նրան, քանի որ նրա զորքը մեծ էր։ Շրջեց ամբողջ Հայքն (Սոմ-խիթն) ու Քարթլին, գերեց ամեն ինչ և ավերեց բոլոր բերդերն ու քաղաք-ները և նշանակեց իշխաններ...

Եւ սրտմտեալ Քեկապոս, արձա-կեաց զթոռն իւր, զորդին Քիուսարու (ու-ղիղ՝ Շիուաշու)** Գեդիցկի՝ սպանելոյ ի Թուրքաց, որում անուն էր Քուէ Խոսրով. և ոչ կարացին դիմանալ նմա Հայք և Վիրք, այլ կոխան եղեն ոտից նորա առհասարակ։ Եւ կարգեաց իւր գործակալս...

Ցեվ սրանից հետո մի քանի տարի անց... հարմար առիթ գտան հայերն (սոմխեխներն) ու վրացիները և՝ անջատ-վելով պարսիկներից՝ կոտորեցին պար-սից իշխաններին և ազատվեցին։

Եւ զի անպարապ էր Քուէ-Խոսրով ի Հայոց և ի Վրաց, յայնժամանէ ոյժ առեալ կոտորեցին զիշխանսն Պարսից, և կաղ-մեցին զամուրս։

Մինչ այժմ (Ցիրուսաղեմի գրավումը Նաբուքոդոնոսորի կողմից) Քարթլո-սյանների լեզուն հայերենն (սոմխու-րի [3]) էր, վորով [և] խոսում եյին։ Իսկ յերբ անհամար ժողովրդներ ժողովեցան Քարթլիում, այն ժամանակ վրացիք թողին հայերեն (սոմխուրի) լեզուն, և այս բոլոր ժողովրդներից գոյացավ վրա-ցերեն (քարթուլի) լեզուն ***։

Եւ մինչև ցայս վայր հայերէն էր լեզուն Վրաց. և ապա եկեալ այլայլեց յազգացն՝ որ բնակեցան ի մէջ նոցա, և եղև ամենեցունցն խառնակեալ, և յայս միացեալ՝ որ այժմ առի վրացերէն։

---

* Var. Բրոս. հմմ. 148 յիշեալ * ծանոթությունը.

** Նույնը։

*** Var. Մինչ այժմ... վրացերեն (քարթուլի) լեզուն] Մինչ այժմ Քարթլո-սյանների լեզուն միմիայն վրացերենն (քարթուլի) էր, վորով [և] խոսում եյին։ Իսկ յերբ անհամար ժողովրդներ ժողովեցան Քարթլիում, այն ժամանակ վրա-ցիք այլասերեցին (աղավաղեցին) իրենց լեզուն, և բոլոր այս ժողովրդներից գոյացավ ողորմագարդ լեզու։ Так., Опис. II, 17 (շատ լեզուներ. Так., ibid., 5)։

Սրանից հետո մի քանի տարի անց հանդես է եկել Վաշտաշար պարսից Թագավորի փոխարեն Սպանդիատ կոչյալը, որը միթհրարի էր և անօրենի: Իսկ հայերն (ասմեխները) ու վրացիները չընդդիմացան, այլ՝ ամրացնելով բերդերն ու քաղաքները՝ ապաստան էին նրա գալուն: Բայց երբ նա (Սպանդիատը) եկավ Ատրպատական (Ադարբադագան), նրան լուր հասավ, որ Թուրքերը մտել են Պարսկաստան և սպանել նրա պապին: Ապա Սպանդիատը Թողեց պատերազմը հայերի և վրացիների հետ, դարձավ Թուրքերի վրա՝ [վրեժ]խնդիր լինելու իր պապի արյան համար, և հայերն ու վրացիները ազատ զգացին իրենց...

[Այդ ժամանակ] Բարթլիում խոսում էին վեց լեզվով՝ հայերեն (ասմխուրի), վրացերեն (քարթուլի), խազարերեն, ասորերեն, յեբրայերեն և հունարեն (բերձնուլի): Այսպիսի լեզուներ կային, որ գիտեին դրանց բոլոր Թագավորները, այրք և կանայք:

Իսկ զկնի այսորիկ եկն դարձեալ այլ ոմն Թագաւոր Պարսից՝ Սպանդիար անուն, որդի Վաշդասպիշոյ, ի վերայ Հայոց և Վրաց. և ի գալն յԱտրպատականն՝ լուաւ բօթ գուժի եթէ սպանին ազգն Թուրքաց զհօրեղբայր նորա, և դարձաւ անդրէն ի Թուրքաստան, և հանգեան Հայք և Վիրք...

Եւ յայնմ ժամանակի խօսէին ի Վիրս վեց լեզու, հայերէն և խազրի, ասորի և եբրայեցի, յոյն, և որ ի խառնից նոցա հաւաքեցաւ՝ [10] վրացին:

# [ԱՆՏԻՈՔՈՍ ՅԵՎ ՓԱՌՆԱՎԱԶ]

Յետ տվեց [Ալեքսանդր Մակեդոնացին] Անտիոքոսին Ասորեստանը և Հայքը (Սոմխիթին), և [ամբողջ] արևելքը հանձնեց նրան...

...[Վրաց իշխան] Փառնավազն (Փար[ս-մա]ն Ասփագն ?) դեսպաններ ուղարկեց Ասորեստանի Թագավոր Անտիոքոսի մոտ բազում ընծաներով և՝ խոստանալով ծառայել նրան՝ օգնություն խնդրեց նրանից հույների (բերձենների) ընդդեմ: Իսկ Անտիոքոսն՝ ընդունելով ընծաները՝ նրան (Փառնավազին) իբրև որդի անվանեց և Թագ ուղարկեց, և հրամայեց Հայքի (Սոմխիթի) իշխաններին* օգնել նրան:

Անտիոքու՝ որ զԱնտիոք շինեաց՝ ետ [Աղեքսանդր Մակեդոնացին] զԱսորեստան...

Եւ արձակեաց [Փառնաւազն] դեսպանս առ Անտիոքոս բազում ընծայիւք, և խնդրեաց օգնութիւն ընդդէմ Յունաց. և խոստացաւ ծառայել նմա: Եւ Անտիոքոս ընկալաւ զբանս նորա յօժարութեամբ, և անուանեաց զնա որդի իւր. և առաքեաց նմա Թագ, և հրամայեաց իշխանացն Հայոց օգնել նմա:

-----

* Var. մթավարներին:

և չէր [էլ] դիմացողներ իր սպանել և ինքն էլ անուն հռչակել: Սա զորք խընդրեց հայոց (սոմխիթների) թագավորից, որն և տվեց այն. և արշավեց Արշակի վրաց թագավորի՝ իր մորեղբոր՝ վրա...

[Սպանելով Արշակին՝]Ազորկին իսկույն և եթ գնաց Հայոց (Սոմխիթի) զորքի մոտ, և ասաց. «Յերկրպագում եմ ձեր աստվածներին, մի՛ ուղղեք ձեր սրերը վրացիների դեմ, քանի որ ազգակից են (հայրենի յեն) մեզ, և այժմ յես եմ նրանց թագավորը՝ ձեր ուժերի օգնությամբ»: Հայերը (սոմխեթները)լսեցին նրա ասերը և կանգ առան նույն տեղում: Գալով վրաց զորքի մոտ՝ Ազորկը բարձր ձայնով աղաղակեց. «Յես ձեր թագավորների որդին եմ, և իմ բաժին ինձ է վիճակել [ձեր] թագավորությունը: Այժմ ընդունեք ինձանից բարիք և ուրախություն: Այլևս հայոց (սոմխիթների) զորքը չի ուղղվի ձեր վրա»... Յեվ խաղաղությամբ ժողովեցան միասին հայերը (սոմխիթները) և վրացիները և պարսիկները և ռանները, և՝ բերելով վրաց թագը [, որ] Արշակի[նն էր]՝ դրին Ազորկին...

... և սպան [Ազորկ] զնա (Արշակ). և դարձան Վիրք ի փախուստ: Եւ յաղաչանս անկեալ Հայոց Ազորկի՝ արգել ի կոտորելոյ զՎրացիսն. Զի ես եմ, ասաց, այսուհետև թագաւոր նոցա՝ շնորհիւ ձերս: Եւ ամենայն զօրքն Վրաց անկեալ երկիրպագին Ազորկայ, և դրին ի գլուխ նորա զթագն Արքակայ (ուղիղ՝ Արշակայ)*. և մի եղեն Հայք և Վիրք և ազգն Առանայ...

Յեվ այս Ազորկը տիրեց ամբողջ յերկրին Քարթլիի և Յեգերաց (Եգրիսի). և հայոց (սոմխիթների) թագավորն իր դուստրը տվեց նրան ի կնություն...

և... թագաւորեաց [Ազորկն] ի վերայ Վրաց, առեալ դուստր թագաւորին Հայոց իւր ի կնութիւն

Իսկ Անդրեաս սուրբ առաքյալը... անցավ Կղարջքի (Կլարջեթի) ճանապարհներ[ով,] Քարթևաց յերկրները, որ [նույն] Հայքն (Սոմխիթն) է, և անցավ Յերուսաղեմ՝ դառնալն անելու...

Այս Ազորկի թագավորության օրոք կրկին ուժեղացավ Պարսից թագավորությունն... Ապա հայերն (սոմխիթներն) ու վրացիները հնազանդ եղին Պարսից թագավորին **:

Յեվ մինչև Ազորկի թագավորելը՝ Քարթլիում վրաց մի թագավոր էր նստում: Իսկ այս Ազորկին յերկու որդի

---

* Տես 148 յէջ. * ձանոթությունը

** Var. Ամպրան [պարսից թագավոր]ին

ունեք՝ վորոնց և բաժանեց նա [իր թագավորությունը, տալով մեկին՝ Բարսամին՝ այն մասը, վորը Կուր գետից դեպի հյուսիս է Մցխեթ քաղաքով, իսկ մյուսին՝ Քարթամին՝ հարավային մասը Արմազ քաղաքով]...

Իսկ Ադերկիից սկսած այս թագավորները հայոց (սոմխիթների) թագավորների հնազանդության ներքո էին. նամանավանդ՝ Արմազեցվոց թագավորներն ոգնում էին հայերին (սոմխիթներին) նրանց բոլոր թշնամիների դեմ։

Այս թագավոր դարձավ Հայքում (Սոմխիթում) մեծն Յերվանդ (Երվանդ), վորը՝ մոռանալով վրաց բարիքները՝ միացավ Փարնավազ Արմազեցու դեմ և գրավեց Քարթլիի սահմանները, քաղաք Ծունդան և Արտահանը (Արտանը) մինչև Կուրը, և բնակեցրեց Ծունդայում զավզանդարարս մարդկի՝ դևերին ազգակից, և կոչեց Ծունդան [նոր] անունով՝ Քաջատուն, վոր թարգմանաբար նշանակում է «Դևերի տուն»։..

Այս Սմբատ Բյուրատյանը (Սումբատ Բիվրիտիանը) սպանեց Յերվանդ հայոց (սոմխեթների) թագավորին, և թագավոր հաստատեց Յերվանդի յեղբայր Արտաշեսին (Արտաշանին)։

Այս Քարթլիի թագավորները՝ Ազորկ [Արմազեցին] և Արմազել [Մցխեթցին]՝ գնացին ոսերին և լեգրիներին (լեկերին) [խնդրելով ոգնություն]... և ժողովեց անթիվ բազմություն... Մինչ կժողովվեր հայոց (սոմխեթների) զորքը՝ սրանք [բոլորը] մտան Հայք (Սոմխիթ) և անակնկալ կերպով գրավեցին Շիրակավանն ու Վանանդը մինչև Բագրեանդ** ու Բասենը (Բասիանը), և վերադարձան***՝ վերցնելով բազում գերիներ ու ավար և լցվելով ամենայն հարստությամբ. իսկ [վերադարձին] անցան Փարիսոսի ճա-

... Եւ Բարսամն և Քարթամ կային ի հնազանդութիւն թագաւորացն Հայոց, յԱզրկայ սկսեալ. և առաւել Արմազու թագաւորքն օգնէին Հայոց՝ ընդդէմ կալով թշնամեաց նոցա։

Յետ այսորիկ թագաւորեաց Հայոց մեծն Երուանդ, և առ ի Վրաց զԱրտահան, մինչև ցԿուր գետ, և զքաղաքն Ծունդայ. և բնակեցոյց ի նմա մարդ դիւախօս, և անուանեաց զնա Քաջատուն..

Իսկ Սմբատ Բիւրատայ՝ սպան զԵրուանդ, և թագաւորեցոյց զեղբայր նորա զԱրտաքսան (ուղիղ՝ Արտաշան)*։...

Յայնժամ թագաւորքն Վրաց՝ Ազուկ և Արմայէլ, կոչեցին յօգնութիւն զԼեկաց և զՕսաց... և զօրքն Վրաց առ հասարակ ի մի վայր եկեալ, մտին յանկարծուստ յաշխարհն Հայոց, մինչդեռ անկազմ կային նորա, և գերեցին զՇիրակ և զՎանանդ մինչև ցԲասեն. և դարձան ի պաշտն Նախջաւանու, և առին աւար բազում. և եկին ընդ դուռն Փարիսոսայ, և փութով անցին ընդ Կուր գետ. և երթեալ ի Կամբէճ[ան], բանակեցան ի վերայ Իորի գետոյն։ Իսկ Սմբատայ ժողովեալ զզօրս Հայոց, չո-

* Հմմ. 148 յեր. *· ծանոթությունը։

** Var. Տաղրեանդ։ Հմմ. 146 յեր.* ծանոթությունը։

*** Var. – և գերեցին գաւառն մինչև Նախճևան

բենք Վրաց (Քարթլիի) թագավորները Մցխեթից ուղղվում էին դեպի Հայք (Սոմխիթ) Աշոցքի (Աբոցի) * ճանապարհով, և այսպես վրացիք միշտ ստրկության ներքո էին։

Այս հայոց (սոմխեխների) թագավոր Արտաշեսն (Արտաշանն) իր ամբողջ զորքով և նրա սպարապետ Սմբատ Բյուրատյանը շարժվեցին դեպի Քարթլի։ Իսկ վրացիներն ամրացրին բերդերն ու քաղաքները և՝ բերելով զորք Օսեթից՝ լցրին բերդերն ու քաղաքները։ Յեկան հայերն (սոմխեխներն) ու նստեցին Մցխեթում, և կռվում էին հինգ ամիս, և ամենայն որ տեղի ունեին կարիճների ընդհարում։ Այս վրացիք ու օսերն՝ նեղ տեղն ընկնելով՝ խնդրեցին հաշտություն, արյուն և հատուցում չվճարելով։ Հայոց (սոմխեխների) թագավորն ունկնդիր եղավ նրանց (վրացոց և օսերի) աղերսին, և դրվեց ուխտ և յերդումն. և հայոց (սոմխեխների) թագավորը՝ ստրկացնելով վրացիներին ու օսերին՝ գնաց։ Անցավ մի քանի տարի և հայերից (սոմխեխներից) ավերված Քարթլին վերաշինվեց։ Այդ ժամանակ հայերը (սոմխեխները) զբաղված էին, քանի որ պատերազմ սկսեցին պարսից և հույների (բերձենների) հետ։ Այս վրացիք և օսերը բարեպատեհ ժամանակ գտան և սկսեցին հոշել հայերին (սոմխեխներին), քանի որ հայոց (սոմխեխների) ամբողջ զորքը և թագավորի յերկու որդին Սմբատի հետ միասին պատերազմում էին [ընդդեմ] պարսից։ Իսկ երբ վրացիք և օսերն սաստկացրին պայքարն հայերի (սոմխեխների) հետ, այլև նրանց տառապանքը, այն ժամանակ Արտաշես (Արտաշան) թագավորը զորք ժողովեց [նրանցից,] վորոնք տանն էին մնացել և՝ առնելով իր

Այս թագաւորն Հայոց Արտաշան (ուղիղ՝ Արտաշան) ** խաղաց ի վերայ Վրաց, և նստաւ ի վերայ Մցխիթայ հինգ ամիս՝ քանդելով զաշխարհն, մինչև յորոր անկեալ խնդրեցին զհաշտութիւն, զի ծառայեսցեն նոցա Վիրք և Օսք։ Եւ լուաւ նոցա, և եդ հարկս, և գնաց ի նոցանէ։ Թագաւորն Հայոց, և զօրայր ընդդէմ Յունաց և Պարսից։ Եւ պարապ առեալ Վրաց և Օսաց, ապստամբէին ի Հայոց։ Եւ Արտաշան (ուղիղ՝ Արտաշան) *** առաքեաց զորդի իւր զԶարեհ ընդդէմ նոցա սակաւ զաւրաւ. և նորա գնացեալ՝ իբրև զմանուկ ըմբռնեցաւ ի նոցանէ ի տեղին՝ որ կոչի Ցլիխ լին. և կամեցան Օսքն սպանանել զնա վասն արեան իւրեանց թագաւորացն, և արգելին Վիրք, զի առցեն նովաւ զամենայն իւրեանց՝ զոր առեալ էին Հայք. և արգելին զնա ի Դալարա։ Իսկ Հայք ոչ արարին փոյթ զամս երիս. այս զկնի ամաց երից գնաց Սմբատ որդւովք թագաւորին, Արտաւազդաւ և Տիգրանաւ, և ամենայն զօրօքն Հայոց յերկիրն Թռեղաց։ Իսկ թագաւորքն Վրաց ամրացան, և գաղթեցին զերկիրն, և խնդրեցին զհաշտութիւն, տալով ի նոսա պատուով զորդի թագաւորին, և խոստացան ծառայութիւն այսպէս. Զզրահն դրով և մնացամբ Հայոց թագաւորին վարել, և թէ գայ թշնամին ի վերայ ձեր, երկոքին թագաւորքս Վրաց կեամք և մեռանիմք ընդ ձեզ. և եթէ դուք երթայք ի պատերազմ ընդ այլում ազգի, տասն հազար սպառազէն ի Վրաց գան ընդ ձեզ։ Եւ հաւանեալ

* Հմմ. 148 յերես ծանոթությունը։

** Նույնը։

*** Նույնը։

Զարեհ (Զարեհն) որդուն՝ ուղարկեց ընդդեմ դրա։ Իսկ դրացիք ու ամենքը՝ ժողովվելով՝ դիմեցին Զամախարի (Զամախաեթի) կողմը, հաղթեցին և փախուստի մատնեցին Զարեհ (Զարեհն) հայոց (սամխեթների) թագավորի որդուն*, և խորտակեցին նրա ամբողջ զորքը, որին հետամուտ լինելով մինչ Հայքի (Սամխիթի) սահմանները, և բանտարկեցին թագավորազն Զարեհին (Զարեհնին) յՃի ափին, որ Ցել է կոչվում, և յետ բերին։ Իսկ ամենքն ուզում էին Զարեհին (Զարենին) սպանել իրենց թագավորների արյան փոխարեն, սակայն դրացիք կենդանի թողին, որպեսզի իրենց սահմաններն [յետ] տանեն, և կալանավորեցին Դարխալանի բերդում։ Հայերը (սամխեթները) չկարողացան նրան փրկել, քանի որ գրավված էին պարտեց [պատերազմով]։ Այս յերրորդ տարին յեկան Ամրան Բյուրատյանը և թագավորի որդիք ** Արտավազդ (Արտավազ || Արտավազ) և Տիգրանը *** հայկական (Սամխիթիանի Սամխիթիա) ամբողջ զորքով։ Այս Վրաց (Քարթլիի) թագավորները հրամայեցին իրենց ամբողջ յերկրներին փախչել դեպի բերդերն ու քաղաքները, և լեռնաստանցիք (մթիուլները) ամրացրին բերդերն ու քաղաքները։ Իսկ հայերն (սամխեթներն) յեկան և կանգ առան Թռեղքում (Թրիալեթում)։ Հանդես յեկան նրանց մեջ դեսպանները և հաշտվեցին։ Վրացիք [վերա]դարձրին թագավորի որդուն, որը կալանավորված էր, և օգնություն խոստացան՝ այսպես ասելով. «Յեթե յերևան գա որևէ թշնամի և պատերազմի ձեզ հետ, մենք յերկուսյան թագավորներս անձամբ և մեր զորքով ձեզ հետ կլինենք և կռվենք. իսկ յեթե որևէ մեկը ընդդեմ պատերազմեք,

---

* Var. abs հայոց (սամխեթների) թագ

** Var. որդիք] յերկու որդիք։

*** Var. Տիգրին։

մենք տասը հոգով ազատագրեիններով կռվեինք ձեզ: Յետ վրացական այս քաղաքում կկարեինք գրավ Արտաշես (Արտաշան * Թագավորի պատկերով: Այս պատճառով հայերը (սոմխիթները) վերադարձրին Վրաց (Քարթլիի) սահմանները, Ծունդա քաղաքն և Դեմոթի բերդը, Ջավախքն (Ջավախեթն) ու Արտահանը (Արտաանը). և այսուհետև համերաշխ եյին հայերն (սոմխեթները) և վրացիներն և ոսերը, և չորեք [ժողովուրդներն] եւ միասին կռվում էյին [ընդհանուր] թըշնամու դեմ...

... Իսկ Փարսման [թագավորը] ժողովեց Վրաց (Քարթլիի) զորքը, վարձին ուժեր միացրեց Հայերից (Սոմխիթից **), և [պարսից] դեմ չելավ նաև Բիլինիսթեով[16]. Կարիճևները սկսեցին կռվել, վորը (կռիվը) յերկար (շատ օրեր) տևեց: Յեվ յեթե հանդես եյին գալիս պարսից կարիճները, վորոնց հետ չէյին կարողանում կռվել Վրաց (Քարթլիի) և Հայոց (Սոմխիթի) կարիճները, նրանց դեմ դուրս էր գալիս ինքը Փարսման թագավորը կամ նրա սպարապետ Փառնավազը, [վորոնք և] հաղթահարում եյին նրանց...

... Այս վրացիք ու հայերը (սոմխեթները) հարձակվեցին պարսից վրա, փախուստի չենթարկեցին և կոտորեցին նրանց և անթիվ [էլ] գերի վերցրին. և գնաց Միհրդատ (Միրդատ) փախստական դեպի Պարսից յերկիրը:

... Յետ [քաջ Փարսմանը] Վրաց (Քարթլիի) և Հայոց (Սոմխիթի) զորքի առաջնորդ չեղավ [ընդդեմ պարսից]...

Իսկ [Փարսմանի սպանությունից հետո] Փառնավազ սպարապետը տարավ քաջ Փարսմանի կնոջն ու վորդուն, և թափառեց, ապա գնաց Հայք (Սոմխիթ), քանի վոր Փարսմանի կինը հայոց (սոմխեթների) թագավորի աղջիկն էր...[17]

---

* Var. Արտաշրան: Հմմ. 148 էջ.

** Var. Հարավից:

*Այս պահին հայերն (սոմխիները) ու հույները (բերձնիները) համերաշխ էին: Իսկ հայոց (սոմխիների) թագավորը զորք բերել տվեց Հունաստանից և դնում պատերազմելու պարսից և վրաց հետ. [հայերին] միացան և յեգերացիք (մեգրելները) և անհամար զորք կազմեցին: Ապա Միհրդատն (Միրդատը) և պարսից իշխանը զորք բերեցին պարսից յերկրից, իսկ հայերն (սոմխիները) ու հույներն (բերձնիները) և յեգերացիք (մեգրելները) յեկան ներքին Քարթլի (Շիդա Քարթլի), և այնտեղ նրանց հանդիպեցին պարսիկները և վրացիք՝ Լիախվ կոչված գետի ափին, և յեղավ այնտեղ մեծ պատերազմ այն տեղում, որ կոչվում է Ռեխի...*

*Յեվ [քաջն Փարսմանի թոռան որդի Համազասպը (Ամզասպը)]՝ ... զորք բերելով Հայքից (Սոմխիթից)՝ ժողովեց իր բոլոր ուժերը և անցավ Ոսեթ, և ոչ ոք չելավ նրա դեմ. նա գերեց Ոսեթը և հաղթանակով տուն վերադարձավ:*

*Ապա նա հանդգնությամբ սկսեց վրեժխնդրություններ անել և յերիկլիներից շատերին ոչնչացրեց. հենց այս պատճառով Վրաց (Քարթլիի) ժողովուրդը նրան ատեց, և ատելի դարձավ նա նաև հայերի (սոմխիների) համար, և սիրեց նա պարսիկներին: Ապա նրան ուրացան արևմտյան հինգ իշխանները՝ յերկոքյան իշխանները Յեգերաց (Եգրիսի), մեկը Օձրխեի, մեկը Կլարջքի (Կլարջեթի) [և] մեկն [էլ] Ծունդայի: Գրեցին հայոց (սոմխիների) թագավորին՝ խնդրելով իրենց համար թագավոր նրա որդուն, քանի որ [վերջինս] Համազասպի քեռորդին էր: Ապա հայոց (սոմխիների) թագավորը մեծ զորքով յեկավ Քարթլի, և զորք բերել տվեց նաև Հունաստանից, և խնդրեց ոսերին էլ, որոնք ուրախությամբ յեկան, քանի որ Համազասպը նրանց ոխերիմ թշնամին էր... և յեկան յեգերաց (մեգրելների) իշխանների մոտ... Յեվ այս-*

*... Եւ թագաւորն Հայոց հաշտեալ ընդ Յոյնս՝ չոգաւ ընդդէմ Պարսից և Միհրդատայ, և պատահեցան նոցա ի վերայ Լեխ գետոյն. և սպան զՄիհրդատ և զիշխանն Պարսից, և թագաւորեցոյց Վրաց զորդին Փարսմանայ՝ զԱզմի...*

*Եւ... առեալ զօր ի Հայոց Համազասպ, էանց յայնկոյս լերինն ի վերայ Օսաց, և գերեաց զաշխարհն ամենայն, և դարձաւ ի տուն իւր:*

*Չինի այսորիկ հպարտացաւ յանձն իւր Համազասպ, և ապստամբեաց ի Հայոց. և սպան յազատացն արս երեւելիս, և ապաւինեցաւ ի Պարսս: Եւ վասն այսորիկ ատեցին զնա Վիրք, և խնդրեցին ի թագաւորէն՝ զորդի թագաւորին Հայոց զՎրոյն զքեռորդի Համազասպայ: Եւ լուաւ նոցա թագաւորն Հայոց, և եկն ի Վիրս: Եւ եկին առ նա իշխանքն արեւմտից կողմանն Եգերեաց, և իշխանն Ոձրխեայ և իշխանն Ծունդայ. կոչեցին և զզօրսն Օսաց, և եկին խնդութեամբ վասն վրիժուց արեանն՝ զոր արարեր նոցա Համազասպ: Կոչեաց [Համազասպ] յօգնութիւն զաւրսն Պարսից. և եղև պատերազմ սաստիկ, և յաղթեցաւ Համազասպ, և սպանաւ ի պատերազմին, և հարան զօրքն Պարսից...*

րո Կոսարոս) հայոց (սամեխինների) թա-
գավորից… այս է իմ խորհուրդս, որ
խաղաղությամբ ու ազնիւով և հար-
կավորությամբ հանդուցանենք Խոսրով
(Կասրո . Կոսարո) թագավորին։ [Ցեղ]
ինչ որ ասաց Անակն, անկեալ չատաց…
Այս [պարսից] թագավորը գաղտնիա-
բար զինեց Անակին. և Անակն ասաց.
«Կեցցես, արքա՛, հավիտյան. յես կգտնեմ
հնար վրեժն առնելու. Խոսրովից (Կաս-
րո Կոսարո), և կգնամ նրա մոտ ըն-
տանիքով, և նա կխոստանա ինձ իբրև
ազգականի, և քո բաղդը բարով կգա.
յես կսպանեմ այդ (հայոց) թագավորին
և գլուխս կբերեմ քեզ համար»։

Թագավորը հավանեց այս մտադրու-
թյունը, և մի քանի օրից հետո Անակը
և նրա յեղբայրն ընտանիքով յեկան,
իբրև ուրացյալք պարսից թագավորին։
Ցեղ յեկավ Հայքի (Սամխիթի) սահմա-
ները Մողխազ (Մըլխազլա) կոչված քա-
ղաքը, ուր հայոց (սամեխինների) թագա-
վորների ձմեռանոցն էր։ Հենց որ
Խոսրով (Կասրո . Կոսարոս) թագավորը
տեսավ նրան, մեծ պատիվ[ներ]ով ըն-
դունեց նրան, և ամենուրեք նրա բարի
գալուստն էր ցույց տալիս հավատարի-
օրեն, և թագավորը տեսնում էր, որ
նա իր ամբողջ ընտանիքով էր յեկել։
Այս թագավորը շնորհեց նրան պատիվ
և բազմեցրեց յերկրորդ աթոռի վրա՝
ուրախությամբ և հանգիստ [սրտով]։
Յեվ անցան ձմեռվա օրերը և մոտեցավ
ամառվա շրջանը, և մեծացան գետերը։
Թագավորը գնաց այնտեղից և յեկավ
Արտաշատ[յան] (Արտաշատ ?) քաղաքը. և
Խոսրով (Կասրո Կասրո) թագավորը
պատրաստ էր նորից մտնելու պարսից
յերկիրը։ Այդ մի օր թագավորը որսի
գնաց, և նրա հետ եկին Անակն ու նրա
յեղբայրը, վորոնք սրած սուսեր ունեյին
բռնած [ձեռին] գաղտնիաբար՝ պատ-
մուճանի տակից,… և [հարմար] ժամ[ա-
նակ] (ժամ*) գտնելով՝ սպանեցին թա-

* Var. յեղանակ։

գավորին և փախան։ Իսկ Հայքի (Սամխիթի) իշխանները հետամուտ յեղան և վրա հասան ոմանց՝ կամրջի վրա, և ոմանց՝ ծանծաղուտում (հունում) [գետն անցնելիս]. և ամբողջ սերնդով նեղ տեղն ընկնելով՝ նրանք չկարողացան փախչել, և սպանվեցին։ Յեվ մնաց նրանից միմիայն յերկու վորդի, վորոնք բաժանվեցին գավառների միջև. մեկին տարան Հունաստան, իսկ մյուսին Պարսից սահմանները։

Հենց վոր Բարսե[-Տարվան] Սասանյան պարսից թագավորը լսեց այս՝ լցվեց ուրախությամբ, և շարժվեց [դեպի հյուսիս] ամբողջ զորքով։ Նախ նա մտավ Հայք (Սամխիթ) և գրավեց Հայքը (Սամխիթը), և ընտաջինջ արավ ու գերի վերցրեց հայոց (սամեխների) թագավորի ամբողջ ազգատոհմը։ Իսկ Կասրով (Կասրո՞ Կոսարոս) թագավորի մի վորդին, [վոր] փոքր տղա յեր, ապավինել եր Հունաստան և այնտեղ եր դաստիարակվում, Տրդատ (Թրդատ) անուն [18]։ Այդ պարսից թագավորը՝ նվաճելով Հայքը (Սամխիթը)՝ մտավ Քարթլի։ [Իսկ] Ասփագուր (Ասփագոր) վրաց թագավորը գնաց Ոսեթ, վորպեսզի զորք բերի Ոսեթից, և ամրացրեց բերդերն ու քաղաքները։ Բայց յերբ [Ասփագուրը] մտավ Ոսեթ, [այնտեղ] նրան վրա հասավ մահը և նա վախճանվեց։

Այս Ասփագուրին արու զավակ չուներ, այլ միմիայն մի դուստր։ Ապա Վրաց (Քարթլիի) բոլոր իշխանները ժողովվեցին Մցխեթ քաղաքում՝ սպարապետի մոտ, վորի անունն եր Միհժան... Այս Միհժան * սպարապետն ասաց. «... Հայքի (Սամխիթի) մեծն թագավորը սպանվեց, և Հայքը (Սամխիթը), վորից կախումն ունեինք մեր թագավորությունը, նվաճված ե, և պարսից թագավորն ախորժակ ունի ամբողջ մեր յերկիրը կլանելու։ Մեր մեջ չկա վոչոք

* Var. Միհրան։

[փոքր] նրա գետ [լինի], և մեր ժողովուրդը փոքր և թույլ ինչպես անհովիվ վոչխարները: Այժմ այս և մեր ժառանգությունը, որ մեր հնազանդությունն արտահայտենք պարսից թագավորին և խնդրենք նրանից մեզ թագավոր նրա որդուն, և աղերսենք, որ ամուսնացնե նրան մեր՝ Ասփագուր (Ասփագոր) թագավորի դստեր հետ: Զեկուցենք, որ այդ աղջիկը Նեբրոթյանների սերնդից է և մեծամեծ* Արշակունյաց** և մեր Փառնավազյան թագավորների զարմից...:

... Յեվ [պարսից թագավորը] հարցրեց [դեսպաններից] Ասփագուրի (Ասփագորի) դստեր ծագման մասին, և նրանք պատասխանեցին թե Նեբրոթյան և Արշակունյաց և Փառնավազյանների սերնդից է: Պարսից թագավորը հավանեց այս և բավարարեց վրաց խնդիրը, և ինչ էլ լավ և բարվոք*** համարեց Մցխեթում նստեցնել իր որդուն թագավոր, քանի որ Հայոց (Սամխեթի) և Վրաց (Քարթլիի) և Ռանի և նրա շրջակայքի բոլոր քաղաքներից այն (Մցխեթը) նա համարեց ամենից ավագ և ամուր...

# [ՍԱՍԱՆՅԱՆՔ]

Ընդառաջ գնալով վրաց աղերսանքին՝ Քասրե[-Շարվանը] իր որդի Միհրանին (Միրիանին)**** ամուսնացրեց վրաց թագավորի դստեր հետ, և հաստատեց նրան թագավոր և նստեցրեց Մցխեթում, և հանձնեց Քարթլին, Հայքը (Սամխեթը), Ռանը, Մովականը և Հերքը (Հերեթը)... Յեվ... քառասուն հազար պարսից ընտիր զինվոր... ուղարկեց (Հերք) Հերեթ և Մովական և Հայք (Սամխեթ)...

Եւ նա նույն երկրում, և թագավորեցայց նույն ժամանակին Միհրան... և... թողեց նա նրա քառասուն հազար ընտիր արանց Պարսից...

* Var. տեղերից:

** Var. Արքակունյաց՝ հմմ. 146 յեր.* ծանոթ.:

*** Var. ավելի լավ և բարվոք abs:

**** Var. Միհրիանին:

... Երբ Միհրանը (Միրիանը) քառասուն տարեկան դարձավ, վախճանվեց [այդ] Միհրանի (Միրիանի) հայրը՝ պարսից թագավորը, և նրանից հետո պարսից թագավոր նստեց նրա կրտսեր յեղբայր Բարտամ կոչեցյալը... Պարսից մեծավորներն ու մարզպանները... պարսից թագավորու թյունը հանձնեցին Բարտամին, իսկ Միհրանին (Միրիանին)՝ սիրտը շահելու համար՝ տվին Բարտամից [մասն հանելով] Ջազիրքը (Ջազիրեթը), Շամի * կեսը, Ատրպատականը (Ադարբադագանը) հետը կցելով ամբողջ այս Քարթլին, Հայքը (Սոմխեթը), Ռանը, Հերքը (Հերեթն) ու Մովականը...

Ի քառասուն ամին սորա (Միհրանայ) մեռաւ հայր նորա Ասպաշիր, և էառ զթագաւորութիւնն կրսեր եղբայր նորա Բարտամ... Այս եւս Միհրանայ զՋազիրէթ և զկէս երկրին Շամայ. և զԱտրպատական և զՀայս և զՄովկան և զՌան և զՀերեթ, և հաստատեցին զոր յառաջագոյն ունէր...

... Այս Գութաց թագավորը մեծ զորքով ներս խուժեց Հունաստան... Իսկ հայոց (սոմեխների) Խոսրով (Կասրո , Կոստրոս) թագավորի որդին՝ Տրդատ (Թրդատ) ** կոչեցյալը, վորին վերև հիշեցինք, մնացել եր Հունաստանում, և եր նա հսկա: Այդ պահին նա հունաց (բերձենների) զորքի հետ եր. հունաց (բերձենների) ամբողջ զորքը նրան ընտրեց, հագցրին նրան կայսերական զգեստ և զինեցին, և կայսեր տեսքով ուղարկեցին նրան կռվելու Գութաց ընդդեմ... Տրդատը (Թրդատը) *** հաղթեց [նրան] և փախուստի յենթարկեց Գութաց բանակը: Իսկ կայսրը զորք տվեց Տրդատին (Թրդատին****) և ուղարկեց Հայք (Սոմխիթ)՝ իր հայրենիքը, և նա յեկավ Հայք (Սոմխիթ) [և] քշեց Միհրանից (Միրիանից) [նշանակված] պարսիկ ***** իշխաններին...

Յայնմ ժամանակի որդին Խոսրովու Տրդատէս՝ քաջութիւն մեծ ցուցեալ ի Յոյնս, և ըմբռնեալ անդ զթագաւորն Գոթացւոց զնեղիչն Յունաց, և վասն այսորիկ պսակեալ ի նոցանէ դառնայր ի հայրենիս իւր, և սատակէր զամենայն օտարս՝ զորս գտանէր և զզօրսն Միհրանայ:

... Յետ Միհրանը (Միրիանը) տվեց [իր ազգական] Պերոզին իր դուստրը ի կնություն, նաև շնորհեց յերկիրը Խունանից սկսած մինչև Պարտավ (Բար-

Իսկ Միհրան եբեր զազգական իւր զՊերոզ յօգնութիւն իւր, տուեալ նմա ի կնութիւն զդուստր իւր...

* Var. Բամի. հմմ. 148 յեր.* ծանոթ.:
** Var. Թարդատ sic:
*** Var. Թարդատը:
**** Var. Թարդատին:
***** Var. զինվորները:

դավ) Կուրի յերկու կողմը՝ իշխան նշանակելով նրան այնտեղ... և զորք բերելով պարսից յերկրից՝ սկսեց կռվել Տրդատի (Թրդատի)* հետ։ Իսկ յերբ Տրդատը (Թրդատը)** զորք է բերել տալիս Հունաստանից և գալիս Միհրանի (Միրիանի) դեմ, վերջինս ուժ չի ունենում ընդդիմադրելու, ամրացնում է բերդերն ու քաղաքները, և Տրդատը (Թրդատը***) շրջապատում է Միհրանի (Միրիանի****) յերկիրը. իսկ յերբ Միհրանն (Միրիանն) է ուժեղանում [աջակցությամբ] պարսից յերկրի, այն ժամանակ չի կարողանում ընդդիմադրել Տրդատը (Թրդատը*****), և նա (Միհրանը) շրջապատում է Հայքը (Սոմխիթը)։ Այսպես յերկար տարիների ընթացքում անդադար խռովություն է լինում, և յերբեք փոքր յերևան չեկավ պարսից մեջ միայնակ մարտնչող Տրդատի(Թրդատի******)հետ։ Յեվ նա հռչակավոր դարձավ ամբողջ աշխարհում, և ամենուրեք հաղթահարեց իրեն հետ մարտնչողներին, ինչպես գրված է նրա մասին «Հայոց պատմության» մեջ։

Սրանից հետո թագավոր յեղավ պարսից յերկրում Միհրանի (Միրիանի) յեղբորորդին՝ Բարտամի վորդին։ Նա դեսպան ուղարկեց Միհրանի (Միրիանի) մոտ ասելու, վոր «ժողովվենք և անցնենք Հայք (Սոմխիթ), և մտնենք Հունաստան»։ Այսպես գալիս յեկավ պարսից թագավորը, վորին դիմավորեց Միհրանը (Միրիանը) և ժողովեց հոծ բազմություն՝ ինչպես խոտն դաշտի և տերևները ծառի։ Անցան [գետի] Հայք (Սոմխիթ). Տրդատը (Թրդատը*******) չընդդիմադրեց, այլ ամրացրեց բերդերն

Յաւուրսն յայնոսիկ թագաւորէր երրորդ եղբայրն Միհրանայ ի Պարսս. և առաքեաց առ Միհրան՝ զի առեալ զկարողութիւն իւր՝ գնասցէ ընդդէմ ի Հայս և ի Յոյնս։ Եւ չոգաւ ընդ առաջ նմա ամենայն ուժով իւրով. և կոտորեցին ամբոխ յոյժ, որ զանցանէր զչափով համարոյ։ Եւ մտին ի Հայս, և առին գերի յոլով. զի Տրդատ ոչ կարաց պատահել նոցա, առ ի բազմութեան նոցա. այլ մնաց յամուրս աշխարհին։ Իսկ նոցա առեալ զՀայս՝ անցին յաշխարհն Յունաց...

* Var. Թարդատի։
** Տես նախորդ ծանոթությունը։
*** Var. Թարդատի։
**** Var. Նրա։
***** Var. Թարդատի։
****** Տես նախորդ ծանոթ.։
******* Var. Թարդատը։

ու քաղաքները, և գերեցին Հայքը (Սամխիթը) և մասն Հունաստանի...

[Միհրանը] դեսպան ուղարկեց Կոստանդիանոս թագավորի մոտ՝ խնդրելով հաշտություն, և խոստացավ ծառայել նրան և ուրանալ* պարսիկներին: Կոստանդիանոսը հավանեց այս, քանի որ նորից յերկյուղ էր կրում պարսից թագավորից, և օգնություն [ստանալու] համար հաշտվեց Միհրանի (Միրիանի) հետ. Միհրանի (Միրիանի)՝ Բաքար կոչեցյալ վորդուն վերցրեց պատանդ, և Տրդատին (Թրդատին) ու Միհրանին (Միրիանին) խնամիացրեց: Իր՝ Սալոմե կոչեցյալ դուստրը Տրդատը (Թրդատը**) տվեց ի կնություն Միհրանի (Միրիանի) Ռև կոչեցյալ վորդուն: Յեվ բաժանեց [Կոստանդիանոսը] սահմանները Միհրանի (Միրիանի) և Տրդատի (Թրդատի***) միջև այսպես****. այն յերկիրները, ուր գետերը դեպի հարավ են հոսում և մտնում [Յե]րասխին (Ռասխին), թողեց Տրդատին (Թրդատին*****), իսկ այն յերկիրները, ուր գետերը դեպի հյուսիս են հոսում և մտնում Կուրին, թողեց Միհրանին (Միրիանին). և այսպես կարգադրելուց և նրանց միջնորդ լինելուց հետո Կոստանդին թագավորը հեռացավ******: Միհրանը (Միրիանը) թագավորում էր Քարթլիում, Ռանում, Հերքում (Հերեթում) և Մովականում, և ուներ նաև Յեգերքը (Եգրիսը) մինչ Եգրիս-գետը, իսկ նրա վորդուն Ռևին տվեց ի ժառանգություն Կախքն (Կախեթն) ու Կուխքն (Կուխեթն) և հաստատեց նրան Ուջարմայում: [Յեվ այսպես] Ռևն ու նրա կինը՝ Տրդատի (Թրդատի*******) դուստր Սալոմեն ապրում էին Ուջարմայում:

... Եւ եկեալ ի միտս՝ յղէ [Միհրան] դեսպանս առ Մեծն Կոստանդիանոս, և խնդրէ ի նմանէ զհաշտութիւն՝ զի ծառայեսցէ նմա. նոյնպէս և առ Մեծն Տրդատէս առաքեաց: Եւ լուան նմա, և արարին խաղաղութիւն: Կոստանդիանոս էառ զորդին Միհրանայ զԲաքար՝ պատանդ. և Տրդատ ետ զդուստր իւր զՍալոմէ՝ որդւոյն Միհրանայ՝ որ Ռեւն կոչէր՝ ի կնութիւն, և նստաւ յՈւջարմէ:

* Var. կոտորել:
** Var. Թարդատր:
*** Var. Թարդատի:
**** Var. յեվ բաժանեց... այսպես] բաժանից սահմանները այսպես:
***** Var. Թարդատին:
****** Var. և այսպես... հեռացավ] նրանց միջնորդ յեղավ և հեռացավ:
******* Var. Թարդատի:

# [ՀՌԻՓՍԻՄՅԱՆՔ]

Նախ և առաջ հիշատակենք այսպես սուրբ և յերանելի մեր մոր և ամբողջ Վրաց (Քարթլիի) լուսավորիչ Նունեի (Նինո) առաքյալի մասին, որ ինքն յերանելին պատմեց մահվան պահին և որը գրի առավ հավատացյալ տիկին (թագուհի) Սալոմե Ուջարմեցին՝ Միհրան (Միրիան) թագավորի թոռն և Տրդատ (Թրդատ)* թագավորի** դուստրը։

... Յեվ սուրբ Նունեն (Նինոն) ծագում էր [Յերուսաղեմում] հույնի Նիափորա Դվինեցու*** մոտ՝ յերկու տարի, և ամեն օր հարցուփորձ էր անում Քրիստոսի տանջանքի, խաչելության, թաղման և հարության մասին...

Եւ մտի ես ի տուն Նիափորայ հայկազնոյ, ի Դունայ քաղաքէ, և սպասաւորեցի նմա զամս երկուս. և հանապազորդ տեղեկանայի վասն անօրէնութեանն Քրիստոսի Աստուծոյ մերոյ, և թէ որպէս եղև կատարումն, և ուր են պատանք թաղման Տեառն մերոյ...

... Յեվ ասաց Նիափորը****, որ դեպի արևելք գտնվում է [մի] քաղաք՝ անունով Մցխեթ (Մցխեթա), և յերկիրն Վրաց (Քարթլիի) և Հայոց (Սոմխիթի)՝ լեռնաստանում, և նա այժմ անհավատ[ության բույնն] է՝ հունաց (ելլենների)***** և [խ]ուժիկների թագավորությանց ներքո...

... Գալով թագավորա[նիստ քաղաքն] Հռոմ,... [Նունեն և Նիափորան] գտան այնտեղ վանք թագուհու և թագավորազուն՝ Հռիփսիմե անունով ու նրա դայակ Գայանեին, որոնք գտնվում էին կուսանաց վանքում... Այս այն կինը (Նիափորան)՝ ներկայացնելով սուրբ Նունեին (Նինոյին)՝ հաղորդեց Հռիփսիմե տիկնոջը (թագուհուն) նրա մասին՝ Քրիստոսասեր Հռիփսիմեին՝ տեսնելով նրան՝ ուրախացավ և ընդունեց իրեն մոտ... Նույն տարին մկրտվեց Հռիփսիմեն՝ ըստ իր բաղձանքի, և նրա հետ նրա դայակ Գայանեն էլ ու բոլոր

... Եւ չոգաք ի Հռոմ...

* Var. Թարդատ։
** Var. հայոց թագավորի։
*** Var. հայուհի Նափոր Դանիացվո (sic)։
**** Var. Սարնիափորը։
***** Var. abs. հունաց։

գիրգաստանցիք՝ Թվով հիսուն հոգի, ի ձեռն սուրբ Նունեյի (Նինոյի)։ և մնացին նրանք իրենց վանքում՝ ու. նրանց հետ սուրբ Նունեն (Նինոն) էլ՝ յերկու տարի։

Այդ ժամանակ կայսրը [մարդիկ] ուղարկեց [այս ու այն կողմ] մի վայելչատես և գեղեցիկ աղջիկ վորոնելու, վորն արժանի դառնար նրա կինը լինելու։ Յեվ յերբ փնտրողները յեկան կուսանաց վանքը և տեսան Հռիփսիմեյին, [հարցու]փորձի յենթարկեցին նրան, և՝ հարցնելով նրա ծագման մասին՝ ճանաչեցին նրա ազգակցությունը թագավորների հետ (նրա թագավորական ծագումը)։ Նրանց շատ դուր յեկավ նրա դեմքն ու գեղեցկությունը, վորի նմանը՝ տեսքով ու վայելչությամբ՝ վոչ մի տեղ չկար։ և նրա վայելուչ ու գեղեցկատեսիլ դեմքը նկարեցին տախտակի վրա և ուղարկեցին կայսրին։ Կայսրը՝ տեսնելով այն՝ շատ հավանեց [նրան] և և հույժ ուրախացավ, և վորոշեց կատարել հարսանիքը մեծ խանդավառությամբ, վորի համար էլ փութով դեսպաններ ու կուսակալներ ուղարկեց իրենց ստորադրյալ բոլոր յերկրները, վորպեսզի բոլորը մեծ ուրախությամբ գան՝ ըստ այս հրամանի՝ արքայական հարսանիքին...

Իսկ յերանելի Հռիփսիմեն, Գայանեն և այլ սուրբ կույսերը՝ տեսնելով, վոր նրանց փորձանք է սպասում՝... սկսեցին վողբալ և լալ, [վոր] անօրեն թագավորի համար նկատելի յե դարձել գեղեցկությունն սուրբ Հռիփսիմեյի, վորի պատկերը նկարել եյին և ուղարկել նրան (թագավորին),... և բոլորը միասին՝ [թվով] հիսուն յերեք հոգի՝ գաղտնաբար թողնելով նույն յերկիրը (Հռոմը), գաղթեցին Հայքի (Սոմխիթի) կողմերը՝ Նոր-Քաղաք (Ախալ-Քալաք) կոչված տեղն փառակերտ, վոր է Դվին, հայոց (սոմեխների) թագավորի [աթոռա]նիստը։ Յեվ մտան այնտեղ հնձանների

տաղավարների մէջը, որոնք կառուցված էին [քաղաքի] հյուսիսային և արևելյան կողմը, և պահպանում էին իրենց գոյությունը՝ վաճառելով իրենց ձեռագործ իրերը։ Իսկ անպիտան կայսրը՝ տեսնելով, որ սուրբ Հռիփսիմեն ընկերակիցներով ազատվեց նրա ձեռքից ու սիրուց՝ լցվեց անմխիթար վշտով, և մարդիկ ուղարկեց բոլոր կողմերը նրանց որոնելու։

Այս կայսեր դեսպաններն յեկան Տրդատ (Թրդատ*) հայոց (սոմխեթների) թագավորի մոտ, և ներկայացրին կայսեր նամակը, որի մեջ գրված էր այսպես. «Ինքնակալ կայսրը՝ իմ սիրելի յեղբոր և բարեկամին և աթոռակից Տրդատին (Թրդատին**) ողջույն... Ինձ վիճակվեց տեսնել... մի աղջիկ, և մտադրվեցի ամուսնանալ նրա հետ, բայց նա... չուզեց ինձ, և ատելությամբ և հայհոյանքով [կույսերն] անպատվեցին ինձ և գաղտնի կերպով փախան ինձանից ու քո յերկրի սահմաններն են յեկել։ Մանիր, յեղբայր իմ, և որոնիր նրանց, իսկ յերբ գտնես նրա ընկերակիցներին, մահվան դատապարտիր։ Իսկ տեսքով գեղեցիկ՝ Հռիփսիմե կոչեցյալին, որին նրանք մոլորեցրին, ինձ ուղարկիր։ Իսկ յերբ նրան դու հավանես, քեզ համար ի նկատի ունեցիր, քանի որ նրա նման մի ուրիշին չես գտնի հունաց (հոռոմների) աշխարհում...»։

Տրդատը (Թրդատը***) կարդաց թե ոչ կայսեր այս հրամանը, իսկույն և եթ սկսեց փութով փնտրել նրանց (կույսերին) և գտավ [նրանց] վերոհիշյալ հնձանների մեջ։ Տեսնելով Հռիփսիմեյին, [Տրդատը] լցվեց սիրով և մեծ ուրախությամբ, և որոշեց ամուսնանալ նրա հետ։ Իսկ յերբ սուրբ Հռիփսիմեն մերժեց այս բանում Տրդատին (Թրդա-

---

* Var. Թարդատ

** Var. Թարդատին։

*** Var. Թարդատը։

·տրին*), այն ժամանակ նա մտանվեց ատրուշանքի, նրա հետ նաև նրա պայակ Գայանեին և այլ բազմաթիվ ընկերակիցները, ինչպես վոր այդ [մասին] գրված է նրանց վկայաբանության գըրքում, հայոց դարձի [պատմությա]ն մեջ[19]։ Իսկ Տրդատ (Թրդատ**) թագավորը, նախախնամությամբ աստուծո, վորպես դարձավ։ Իսկ սրբուհիներից վոմանք թաք կացան և փախան, [և] նրանց հետ սուրբ Նունեն (Նինոն) եկ թաքնվեց վարդենիի մեջ...

Այնտեղից հետո սուրբ Նունեն (Նինոն) յեկավ Ուրբնիսի***[20] Հայքի (Սամխիթի) սահմանները... և այնտեղից անցավ դեպի Ջավախքի (Ջավախեթի) լեռները, ուր յեկավ մի մեծ լճի մոտ, վորը դուրս եր հոսում և կոչվում է Փառավանա****[21]։ Այնտեղից նա աչք ձգեց դեպի հյուսիսային լեռները, վոր ամռան օրերին ձյունով եյին պատած և ծանր ոդով լեցուն... Այնտեղ նա (Նունեն) մնաց երկու որ և կերակուր խնդրեց ձկնորսներից, վորոնք այն լճում ձուկն եյին վորսում։ Այնտեղ կային և հովիվներ, վորոնք հսկում եյին իրենց հոտերին գիշերվա հանգստյան կետերում՝ իրենց ոգնական և հովանավոր համարելով իրենց աստվածներ Արմազ ու Զադենին... և խոսում եյին նրանք հայերեն (սամխուրի) լեզվով, վորին մի փոքր տեղյակ եր և Նունեն (Նինոն)՝ առաջներում սովորելով Նիափորա Դվինեցու մոտ։ Հովիվներից մեկին նա (Նունեն) դիմեց հայերեն (սամխուրի) լեզվով. «Վ՞որ կողմից (գյուղերից || յերկրներից) եք դուք»․ նա պատասխանեց. «Մենք Դաբայից ենք, և Ծլարբինից[22] և Սափուրցլեյից, և Քինձարցիք ու Ռապատացիք մեծն քաղաք Մցխեթից»*****[23]...

... Եւ իմ յարուցեալ եկի յՈւրբանիս Հայոց, և ձմեռեալ անդ, և յունիսի ամսեան եկի ի լեառն Ջաւախեթոյ. և ի ծովն Փառնաւայ եկեալ՝ տեսի անդ ձկնորսս ի ծովուն, և հովիւս առ եզր ծովուն. և լուայ՝ զի երդնուին յԱրմազազն և ի Զադէն. զի տեղեակ էի լեզուին Հայոց, ուսեալ ի տանն Նիափորայ Դունացւոյ։ Եւ հարցեալ զաւառին՝ ասեն. ի Դաբայ, ի Լբբնայի Սափուրցլոյ, ի Քինձարոյ, յՌապատէն Մցխեթոյ. ուր չաստուածք փառաւորին և թագաւորք թագաւորին...

---

* Var. Թարդատին։
** Var. Թարդատ։
*** Var. Ուրբանթա։
**** Var. Փառավնա։
***** Var. Հայքից (Սամխիթից)։ ÷ ուր աստվածներն աստվածություն են անում և թագավորները թագավորում։

[Արմազի և այլ աստվածների արձանները կործանելուց հետո] վկաները ասում էին. «Այն աստվածային զորությունը, վորն էլ հայոց (սոմխեթների) Տրդատ (Թրդատ*) թագավորին վարազ դարձրեց և վարազից նորից մարդ դարձրեց, նույն այդ աստվածն առաջ բերեց այդ...»։ Եվ այս ասում էին այն պատճառով, վոր Տրդատ (Թրդատ**) թագավորը զորությամբ Քրիստոսի վարազ էր դարձել և քրիստոսային զորությամբ նորից մարդ էր դարձել...

[Հրեյական ծագում ունեցող] Աբիաթարը պատմում է. «...երբ մենք (հրեյաներս) ցրվեցինք ամբողջ աշխարհում, համայնքներ տեղերին մեր եկեղեցին...»։

... Միհրան (Միրիան) թագավորը ցանկություն ուներ ընդունել հավատը Քրիստոսի, քանի վոր Քրիստոսի բազում սքանչելագործությունների մասին լսել էր Հունաստանից և Հայքից (Սոմխիթից), և արգելք չէր հարուցում Նունեյի (Նինոյի) ու նրա աշակերտուհիների քարոզության դեմ...

Այդ ժամանակ թուղթ հասավ Հռոմից՝ սուրբ պատրիարքից, Նունեյի (Նինոյի) և թագավորի և Վրաց (Քարթլիի) ամբողջ ժողովրդի [հասցեյով]. յեկավ և մի սարկավագ [ծագումով] բրանջ[25]..., վորը նամակ ուներ հեռու բրանջաց թագավորից Նունեյի (Նինոյի) հասցեյին, քանի վոր նրա (Նունեյի) հոր միջոցով էր բրանջաց ամբողջ ժողովուրդը մկրտություն ստացել. և այս բոլորը լսվում էր Երուսաղեմից ու Կոստանդնուպոլսից, վոր Վրաց (Քարթլիի) երկրում տարածվեց արդարության արեգակը...

... Բրանջների[26] սարկավագն ամեն ինչ տեսավ և լսեց բոլոր այն սքանչելագործությունների մասին, վորոնք տեղի ունեցան Մցխեթում, և զարմա-

... Եւ կէսք ճշմարիտ ասէին, թէ. Մեծ Աստուածն՝ որ եհար զԹագաւորն Հայոց, և դարձեալ բժշկեաց Հայաստանօք հանդերձ, նա արար զսքանչելիս...

Իսկ քահանայն Աբիաթար պատմեաց ի լուր ամենեցուն... եթէ Թագաւորութիւնս (Հրէից) հերձաւ ընդ երիս, և իշխեն մեզ Հռոմք և Յոյնք և Հայք...

...Եւ հրամայեաց [թագաւորն Աջրիկ] մի արգելուլ զքարոզութիւնն զայն (աւետարանին) յաշխարհէն իւրմէ. քանզի լուեալ էր զհրաշսն՝ որ եղև ի Հայս և ի Հռոմ...

Յաւուրս յայնոսիկ առաքեաց Թագաւորն Կոստանդիանոս սարկաւագ մի, որ ունէր թուղթ ի Բրանջաց ազգէն. որք ի հօրէ նորա (Նունեյի) լուսաւորեալք էին. քանզի լուան նոքա եթէ ի Հայս և ի Վիրս ծագեաց արեգակն արդարութեան մեծապայծառ ճառագայթիւք...

... Եւ տեսեալ կամեցան տեղեկանալ ի ձեռն Բրանջ սպասաւորին, զի գրեալ զամենայն սրբութեամբ՝ տարցի առ նոսա, որ ինչ ի Հայս և ի Վիրս իրք եղեն.

* Var. Թարդատ
** Var. Թարդատ

Թրդատ*) թագավորի դստեր վոր զուն։ Իսկ այս Բաքարը բռնակցել պարսից թագավորի՝ իր հոր յոլքորորդու հետ, խնամիացավ ու փոխանակել յերկիրը, և նրա փեսա Պերոզին (Փերոզին), վորը տիրում եր Միհրանից (Միրիանից) նրան շնորհել Խունի մինչ Պարտավ (Բարդավ), ակեց Սամշվիլդեյից սկսած մինչ Աշոցքի ** գլուխը։ Այս Պերոզն (Փերոզն) ու նրա ժողովուրդը քրիստոնյայացավ՝ ուժ ստանալով Խոսրովից. հայերը գավթեցին Ջավախքը (Ջավախեթը), [իսկ վրացիք] հաղթեցին ու քշեցին հայերին։ Այս Բաքար թագավորը, հունաց (բերձենների) և պարսից թագավորների միջնորդությամբ, նամակ գրեց իր յոլքորորդուն ու նրանց մորն Սալոմեյին...

ապաշխանս արձակեալ ի Յոյնս, և յամենայն կողմանց ժողովեալ զօրս՝ առեալ պատերազմ ընդ Հայս ի Ջաւախէթ, և հալածեցին զնոսա. և թագաւորեաց Բաքար՝ ուժով Յունաց և Պարսից Գիր էառ ի Սողոմեայ և յորդւոյ իւրմէ..

...[Բաքարի վորդի Միհրդատ թագավորի որոք] մեռավ Հակոբ յեպիսկոպոսն, և [նրա տեղ] յեպիսկոպոս նստեց Հովել (Իոբ) հայը՝ Ներսես (Ներսեհ) կաթողիկոսի սարկավագը...

... Եւ յետ նորա (Յակոբ եպիսկոպոսի)՝ Ներսէհս կաթուղիկոսն Հայոց ձեռնադրեաց զսարկաւագն իւր զՅակոբ (ուղիղ՝ զՅովէլ)՝ եպիսկոպոս Վրաց. և առաքեաց...

Ահա և պարսից թագավորն ուղարկեց իշխան[ներից մեկ]ին մեծ զորքով, վորպեսզի հարկ դնի հայերի(սոմեխների) և վրացիների վրա։ Այս հայերն (սոմեխներն) գնացան ուղարկեցին [վրաց] Վարազ-Բաքար [թագավոր]ի մոտ՝ ասելու, վոր ժողովեն և օգնություն խնդրեն հույներից (բերձեններից), և՝ բացելով դուռն Կովկասյաց (Կավկասյաց)՝ բերին ոսերին ու լեզգիներին (լեկերին) պարսից ընդդիմադրելու։ Յեվ նրա յերևելիներն եվ խորհուրդ եյին տալիս ընդդիմադրելու պարսիկներին։ Բայց նա չլսեց վոչ հայերին (սոմեխներին) և վոչ եվ իր յերևելիներին, վորովհետև համարձակ չեր ու վախկոտ եր և թաք կացավ Կախքի (Կախեթի) ձորում... Նախ և առաջ պարսիկներն յեկան Հայք (Սոմխիթ), վորն և ավե-

... Յաւուրսն յայնոսիկ եկն զօրագլուխն Պարսից՝ մեծաւ ուժով ի սահմանս Հայոց և Վրաց, յաւուրս Խոսրովայ՝ արքայի Հայոց, որդւոյ քաջին Տրդատայ, և խնդրէր հարկս ի Հայոց և ի Վրաց։ Եւ հրամայեաց Խոսրով թագաւորին Վրաց՝ ածել զբնակիչս Կովկասու՝ զԼեկս և զՕսս, զի կռուեսցին ընդ Պարսս։ Եւ կնամարդին այն Վարազբաքար երկիւղալից եղեալ՝ թաքեաւ ի Ձորն Կախեթոյ. և եկին Պարսիկք և շինեցին բերդ ի դրանն Տփխեաց՝ հակառակ Մցխիթոյ...

* Var. Թարդատ։

** Բնագրում՝ Աքոցի. հմմ. 148 յեր. * ծանոթ.

*բերին Աստ առան Քարթլի, և պարսից զօրապետը (իշխանք) կառուցին Տփղիս (Տփխիս) «դոնեբի» մէջն [Կասպից և Դարիալանի]՝ ընդդէմ Մցխեթին...*

*[Վարազ-Բաքարի որդի Փարսմանի մահից հետո] թագավոր նստեց նրա յեղբայրը Միհրդատը (Միրդատը)՝ Տրդատի (Թրդատի) դստեր և Վարազ-Բաքարի որդին, հորով Բաքարյան և մորով Ոսկյան, վորոնք Միրիանի որդոց սերնդից էին...*

*... Եւ թագաւորեցուցին իշխանքն զՏրդատ, զորդի դստերն Մեծին Տրդատայ՝ աշխարհին Հայոց արքայի...*

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. *Հմմ.* Մ. Խորենացու *տված ծննդաբանությունը (I, 5)*։

2. *Աստ է՝ «Արարատի և Արագածի», կամ գուցե «[Ս]արարատի և Մասիսի». Հմմ. F. Murad,* Ararat und Masis. Studien zur armenischen Altertumskunde und Literatur, Heidelberg 1901. *Նաև՝* Ս. Կանայանց, *Անյայտ զուտանկեր հին հայաստանի, Էջմիածին 1914, էջ 76—88։ Հմմ. Վրաց մեջ գրագիտություն տարածող ընկ. հավաքածուի № 3226 ձեռագրի լուսանցքում տված դիտողությունը՝ «Արարատի Ալագազիս»* Արարատը՝ Ալագյազն է (*Е. Такайшвили,* Описание рукописей, II, стр. 3)։

3. *Տես նախորդ ծանոթությունը։*

4. *Տես նույնը։*

5. *Այն հանգամանքը, որ* Լեոնտիոս Մրովելու *Կովկասյան ժողովուրդների նախնիներին հորինելիս առաջնությունը՝ հանձինս Հայկի՝ հայերին է ընծայում և ոչ թե՝ հանձինս Քարթլոսի՝ վրացիներին,— այնինչ Ք. Ց.-ի վարիանտներից մեկում, որը Մոսկվայի Ռումյանցևի անվան թանգարանում էր գտնվում և այդ պատճառով «Ռումյանցևյան վարիանտ» էր կոչվում, այդ կարգը փոխված էր հօգուտ վրացիների (նույնը հետագայում յերևան յեկավ և Վրաց մեջ գրագիտություն տարածող ն. ընկերության հավաքածուի № 3666 ձեռագրում),— հիմք էր տվել վրաց շովեն բանակի գաղափարախոս-բանասերներից մի քանիսին, որ.* Որոսմենդելիշվիլուն (Սերեբրյակովին), Ա. Խախանաշվիլուն *և* Մ. Ջանաշվիլուն *վայնասուն բարձրացնելու վրաց ժողովրդի «պատիվը» վոտնատակ անելու և վրացատյացության հիմնադիր՝ բազմավաստակ ակադ. M. Brosset-ին մեղադրելու Ք. Ց.-ի վրացերեն բնագիրը խեղաթյուրելու մեջ։ Սակայն այդ յելույթներին իր ժամանակին արժանի պատասխանը տվին՝ առաջին յերկուսի նկատմամբ* Ե. Թաղ՛այշվիլին (Описание рукописей, II, 92—96), *իսկ վերջինի նկատմամբ* Իվ. Ջավախիշվիլին *(Հին վրացական պատմական գրականություն, ա. հրատ., էջ 119, բ. հրատ., էջ 177)։ Յեվ իրոք,* Ե. Թաղ՛այշվիլու *ասելով,* «никакого искажения текста... Броссе в данном месте не допускал, и во всяком случае, прежде чем обвинять в искажении этого места Броссе, следовало в том же обвинить царевича Вахушта, который в своей Истории Грузии (издание Бакрадзе, стр. 35) точно воспроизводит известие К.-Ц. в пользу

армянского языка. Известно, что первая часть Истории Грузии Вахушта есть сокращенное повторение содержания К.-Ц. Что касается первого существенного отличия Румянцевского списка от других, по которому первенство между сыновьями Таргамоса отдается Картлосу, а не Аосу, то это явление исключительно свойственно Румянцевскому списку и его копии. Ни в одном другом списке не только довахтанговском, но и вахтанговском мы такого явления не наблюдаем. Нет этого и в Истории царевича Вахушта (стр. 28—32). Стало быть, это тенденциозное изменение текста не есть дело Вахтанговской комиссии. Это изменение, без сомнения, позднего происхождения, начала XIX века. Поэтому оно не повлияло на списки XVIII века» (op. cit., 96)։ Իվ. Ջավախիշվիլին *էլ* (op. cit., 172) *համամիտ է* Ն. Թաղ՚այշվիլուն, *որ «այստեղ, ի հարկե, որոշ դեր չի կատարել» և որ «այս անկեղծությունն անպայման իրեն՝ Լեոնտիոս Մռովելցունն է», որն «ընդհանրապես հայոց նախահորը և հայերեն լեզվին է առաջնություն ընծայում։ Բայց «ինչո՞ւ։ „Վորովհետև, — պատասխանում է նույն գիտնականը,—Լեոնտիոս Մռովելցին գրեթե ամեն բանի մեջ հետևում է մի յերկասիրության, որը սխալմամբ Յեփրեմ Ասորվո հորինված եր համարվում և կոչվում է «Սրբո հորն մերո Յեփրեմի ասացյալ՝ մեկնություն ստեղծագործության յերկնի և յերկրի և Ադամի մասին...»“։ Վերջինս, որ հրատարակել է* Ն. Թաղ՚այշվիլին *իբրև հավելված Ք. Ց.-ի «Մարիամ թագուհու վարիանտի» (եջ 786—846), ըստ* Իվ. Ջավախիշվիլու *հետազոտության, այն շարքի՝ պարականոն համարված՝ դրվածքներից է, ինչպիսի յեն ասորական «Գանձանձավ»-ը (գանձուց անձավ, այր գանձուց) և եթովպական «Ադամագիրք»-ն, թեև իրոք առաջինի ուրույն խմբագրություններից մեկն է։ Ցեվ այս «Գանձանձավ» կամ «Այր գանձուց» դրվածքն է, Ցեփրեմ [Ասորի]ի ձեռքով վրացերենի վերածած, ուր ասված է, որ «յերբ Նոյան տոհմերն ու որդիք Սեմ, Քամ և Հաբեթը... գնացին արևելքից, մի դաշտ գտան փողոցված յերկրում, ուր և հաստատեցին բնակություն, և եր նրանց լեզուն մի, և սկսած Ադամից մինչ այդ որը նրանք խոսում եյին ասորերեն լեզվով, որը հույժ տարածված է* մինչ Հայք *(Սոմխիթ) և [որը] բոլոր լեզուների թագավորն է... Իսկ յերբ Բաբելոնում աշտարակ շինեցին, այնտեղ բոլոր լեզուներն իրար հետ խառնվեցին, և ցիր ու ցան յեղան յերկրիս յերեսին... և այս ժամանակից սկսած աշխարհումս յեղավ յոթանասուն լեզու և յոթանասուն իշխան, և յուրաքանչյուր լեզվին ամեն թագավոր»* (Ն. Թաղ՚այշվիլի, *Քարթլիս-ցխովրեբա, Մարիամ թագուհու վարիանտը, եջ 812—818, հավելված)։ «Միջին դարերի պատմչի համար այս որինակելի յերկասիրությունից Լեոնտիոս Մռովելցուն նկատած պիտի լիներ, որ սկզբում յերկար տարածության վրա, որը «մինչ Հայք» եր հասնում, իշխում եր մի լեզու ասորերենը, ուրեմն Հայքում ասորերենը չի յեղել տարածված, այլ հայերենը, այսպես պիտի դատեր և հենց այսպես էլ դատել է մեր պատմիչը», — նկատում է* Իվ. Ջավախիշվիլին (ibid., 179), *և ապա շարունակում. «Բանի որ վերոհիշյալ յերկասիրության մեջ Հայքից դատ ուրիշ ոչ մի յերկիր հիշատակված չէ, այս պատճառով Հայքն ու հայերեն լեզուն նա (Լեոնտիոսը) համարել է մեծ նշանակություն ունեցող», և «սրանով է բացատրվում, որ Լեոնտիոս Մռովելցին «Հաոսին» և հայերեն լեզվին այսպիսի առաջնություն է ընծայում»։* Իվ. Ջավախիշվիլու *յեզրակացությանն այս կետում սկի համամիտ չէ* Կ. Կեկելիձեն *(Լեոնտիոս*

*Մրովելու գրական աղբյուրները, 10—11), վորը՝ հետևելով* Ք. Պատկանյանին (Ванские надписи etc., ЖМНПР, 1883, декабрь, 240—242), *սակայն վերջինիս անունը չհիշելով՝ արծարծում է այն միտքը, վոր հայերին և հայերենին առաջնությունը տալու գաղափարը Լեոնտիոս Մրովելին յուրացրած պիտի ունենա Մ. Խորենացու պատմության ազդեցությամբ։ Վորքան էլ ուզում է սրամիտ լինել տեսականորեն* Իվ. Ջավախիշվիլու *կարծիքը՝ մի կողմից, և հավանական լինել ըստ էյության* Կ. Կեկելիձեյինը՝ *մյուս կողմից, մենք, սակայն, կարծում ենք, վոր յերկուսն էլ խնդիրն լուծելիս աչքաթող են արել այն կարևոր հանգամանքը, վոր Լեոնտիոսի գրվածքում կամ գուցե նրա ձեռքի տակ յեղած վրացերեն աղբյուրում եպոնիմների անունները հունարեն վերջավորությամբ են գործածված, հետևապես հունականի ազդեցության դրոշմ են կրում (հմմ. К. Патканов,* Ванские надписи etc., ЖМНПР, 1883 г., декабрь, стр. 239—240):

*6. Հայոսի պատերազմը Նեբրոթի դեմ, ինչպես ուղիղ դիտած ունի, ի միջի այլոց, և* Կ. Կեկելիձեն *(Լեոնտիոս Մրովելու գրական աղբյուրները, եջ 11—14), հիշեցնում է հայտնի առասպելը Հայկի և Բելի կռվի մասին, վորի մանրամասն նկարագրությունը տալիս է* Մ. Խորենացին (I, *11). հմմ. К. Патканов,* Ванские надписи etc., ЖМНПР, 1883 г., декабрь, стр. 242:

*7. Տես 2-րդ ծանոթությունը։*

*8. «Սոմխուրի» և «սոմեխ» (այստեղից «Սոմխիթ»-ի) տերմինների մասին, յեթե մի կողմը թողնենք M. Brosset-ի ստուգաբանությունը վրացերեն «սամ-խրեթ»* հարավ *բառից* (Histoire de la Géorgie, t. I, p. 15—16, n. 5; Introduction, p. IV—VI), *վորը լեզվաբանորեն, ի հարկե, անընդունելի յե, անհրաժեշտ է հիշատակել* Ն. Մառի *կողմից այլ և այլ ժամանակ այլ և այլ առիթով առաջարկված հետևյալ յերեք ստուգաբանությունները.* 1. *«սոմեխ»←—«սո-մեխ || «սա-մեսխ», այսինքն* մեխ || մեսխ (История термина «абхаз», — «Известия Академии Наук», 1912, стр. 705): 2. *«սոմեխ» ←— «սո[ն]-մե[ս]խ»* սվան *և* մեսխ *ժողովրդների հիմքից, ինչպիսի յեն, որինակ,* Պլինիուսի *հիշատակած* Armenochalybes, Պտղոմեոսի Σουανοκόλχοι *և* Փավստոս Բյուզանդացվո *«Եգերսուանք»-ը* (Из поездок в Сванию,—«Христ. Восток», т. II, 1913, стр. 22—23; Яфетические названия деревьев и растений,—«Изв. Акад, Наук», 1915, стр. 945; К дате эмиграции мосохов из Армении в Сванию,—ibid., 1916, стр. 1690; Грузинская поэма «Витязь в барсовой шкуре» Шоты из Рустова и новая культурно-историческая проблема, — ibid., 1917, стр. 439—442, *հմմ. նաև* մեր՝ Несколько слов о термине «сомех», — «Христ. Восток», т. VI, 1918, стр. 93-94. *Հայերը վրաց հին գրականության մեջ, – «Գեղարուեստ»,* VII, *1922, եջ 36.* Введение в историю государственных образований Юго-Кавказа, Тфл. 1924, стр. 97 98). *ընդ սմին հաստատելու Լեոնտիոսի այս տեղեկության առթիվ մեծ գիտնականը 1913 թվին գրում եր.* «... в одном списке Грузинских летописей утверждается, что первоначально грузины говорили по-сомехски, а потом они заговорили по-грузински. При намеченном ходе научных приобретений это значило бы, что первоначально у грузин церковно-литературным языком служил сомехский, т. е. сванский язык Сомехии, а с известного момента они свой родной картский язык обратили в литературный язык церкви» (Из поездок в Сванию,—«Христ. Восток», т. II, стр. 24): *Ապա 1921 թվին նույն գիտնականը գրում եր հետև-*

վայլը· «Грузины»· называли и продолжают называть армян не особым каким-либо этническим термином, а тем, точнее, слиянно теми двумя терминами, какими армяне раздельно пользовались для именования двух армениийских народов, hay'ев ( ‖ son' ов) и hayk'ов ( ‖ mes'q ов), отложившихся основными слоями природной своеи речи в двух реально сохранившихся языках Армении, hайском (hayeren) и hайкском (hаукакан). Для Армении грузинский гибридный термин someq' ( ‖ *hay-hаук) более реально историчен и об'ективен, чем простые армянские названия, суб'ективные, будут ли это по народному самоопределению — hay, или по культурно-историческому, т. е. национальному самоопределению — hаук, resp. haykazən ‖ haykazun. Но тот же термин someq' у грузин являлся с известного момента камнем преткновения в отношении Грузии. Имея в крае до-историческую давность с точки зрения национальной истории и грузинской, и армянской, someq первоначально означал гибридное племенное об'единение или первичного населения Армении, чисто яфетического, или вторичного ее населения — мешанного уже с ариоевропейцами, яфетидо-ариоевропейцами. Позднее, по мере дальнейшего перерождения части того же со-мехского ‖ *haii-hайкского населения в пределах Грузии в грузин, этнический термин someq' стал означать грузинское племя, сохранив однако исторически-преемственно первоначальное свое значение как этнического термина, наименования населения Армении (Астрономические и этнические значения двух племенных названий армян,—«Записки Восточного Отд. Рус. Арх. О-ва», т. XXV, стр. 242—243): 3. «սոմեխի»←—«սոմեխ» ‖ «սո-մեր» ‖ «սու-մեր» ‖ «շու-մեր»(Скифский язык, - «По этапам развития яфетической теории. Сборник статей Н. Я. Марра», М.-Л. 1926, стр. 358—361):

*9. Լեոնտիոսի մեկնությունը վրացերեն լեզվի ծագման խնդրում այն իմաստով, որ նա այն համարում է Քարթլիում յերբեմն տարածված լեզուների «խառնուրդ», հիշեցնում է* Ստրաբոնի *(XI, 14, 5) մեկնությունը հայերենի նկատմամբ, որը նմանապես «խառնուրդ» եր համարված։ Սակայն, հետաքրքրը և թե ինչպիսի կարծիքի եյին վրաց հին գործիչներն իրենց մայրենի լեզվի մասին. «Վրացերեն լեզուն թաղված է մինչ յերկրորդ գալուստն նորա (Քրիստոսի)՝ դատելու, որպեսզի այս լեզվով ասված մերկացնի բոլոր լեզուները», — այսպես է սկսում X դարու անանուն վրացի հեղինակն իր «Վրացերեն լեզվի գովասանքը» («Գավկասիոնի» հանդես, № 1—2, Տփղ. 1924, եջ 269) և ապա վերջում ավելացնում. «Ցեվ պճնազարդ և տիրոջ անվամբն օրհնյալ այս գաղտնիք և խոնարհած (փոխած) լեզուն սպասում է տիրոջ յերկրորդ գալստյան և ունի նշան, որ իննսուն և չորս տարով մեծ է ուրիշ լեզուներից Քրիստոսի գալուստից մինչ այսօր»։* Գեորգ Մերչուլը (*Н. Марр*, Житие св. Григория Хандзтийского, *եջ մԹ)՝ նույնպես* X *դարում՝ գրում է. «Քարթլի յե համարվում ընդարձակ յերկիրը, ուր ժամասացությունն կատարվում է և աղոթքներն արտասանվում են վրացերեն լեզվով և միմիայն կվրիելեյսոնը (տեր ողորմեա-ն) հունարեն»։*

*10. Տես նախորդ ծանոթությունը։*

*11. Ըստ M. Brosset-ի* (Histoire de la Géorgie, I, p. 40, n. 1) *պիտի լինի «Անձեանցձոր»։ Բայց մենք կարծում ենք, որ գուցե Անտոնուն աշխարհագրի*

{Խորենացու ?) «Անձանիձոր»-ը լինի, որը Վասպուրականի սահմաններում է ցույց տրված (Աշխարհացոյց Մովսէսի Խորենացւոյ, հրատ. [Արսէն վ. Սուքրեանի], Վենետիկ 1881, էջ 32)։ Հմմ. նաև Ղ. վ. Ինճիճեան, Ստորագրութիւն Հին Հայաստանեայց, Վենետիկ 1822, էջ 208—209. Н. Адонц, Армения в эпоху Юстиниана, стр. 315, 317։

12. «Վրաց դպրություն» (մծիգնոբրոբա քարթուլի) անունով Լեոնտիոսը, անկասկած, ակնարկում է այն այբբենի մասին, որը գոյություն պիտի ունենար վրացոց մեջ նախաքրիստոնեյական շրջանում։ Ճիշտ է, վերջերս Կ. Կեկելիձեն (Վրաց գրականության պատմություն, I, 1923, էջ 28—31) ջանաց վրացերեն այբբենի ծագումն և ձևավորումը վերագրել, համաձայն Կորյունի ցուցմունքների՝ Մեսրոպի վերահսկողությամբ և փոքր Ջաղայի անմիջական մասնակցությամբ և ղեկավարությամբ Վրաստանում գործող՝ հատուկ կոմիսիային 412—429 թ. թ. միջոցին, սակայն պարզ է, որ ինչպես վրացերեն, նույնպես և հայերեն տառերի «գյուտի» հարցը կարող է նոր լուսաբանության բոլորովին այլ հիմքերի վրա։ Բայց՝ համեմատած հայերեն նշանագրերի հետ՝ վրացերենի հարցն ավելի բարդանում է շնորհիվ այն հանգամանքի, որ վերջինումս յերեք տեսակի այբբեն է հայտնի. 1. «խուցուրի ասոմթավրուլի» գլխատառ կամ գլխագիր յեկեղեցական (յերկաթագիր), 2. «խուցուրի նուսխա» փոքրատառ յեկեղեցական, և 3. «մխեդրուլի» զինվորական կամ աշխարհիկ։ Այդ յերեք այբբենների առնչությունն իրար հետ վրացագետները պատկերացրած ունեյին այսպես. մինչդեռ բանասերների մի խումբը Ի. Ոքրոմճեդլիշվիլու-Սերեբրյակովի գլխավորությամբ (Об изобретении грузинского алфавита,— Труды V археологического съезда в Тифлисе в 1881 г., Москва 1887, стр. 221—229) ապացուցում եր, որ «զինվորական» կամ «աշխարհիկ» այբբենն է ավելի հինը, որը հորինվել է դեռ եւս Փառնավազ թագավորի օրոք, իսկ ապա քրիստոնեյությունն ընդունելուց հետո վրացիք հնարել են նորը կամ վերածել հինը նորի, որը «յեկեղեցական» անվամբ է հայտնի, բանասերների մի ուրիշ խումբ Դ. Բաքրաձեյի գլխավորությամբ (Грузинская палеография,—նույն հրատարակության մեջ, էջ 207—214. Վրաստանի պատմությունը, վրացերեն, Տփղ. 1889, էջ 82—85) ապացուցում եր ընդհակառակը, որ սկզբնական այբբենն է «յեկեղեցական գլխագիրը», որից եվոլյուցիոն ճանապարհով նախ առաջացել է «յեկեղեցական փոքրատառը», իսկ ապա X—XI դ. դ. «զինվորականը» (աշխարհիկը)։ Այս՝ յերկրորդ խմբակի կողմից արծարծված տեսակետն ավելի կայուն հանդիսացավ գրականության մեջ, քանի որ նրա ջերմ պաշտպանը և նույնիսկ ջատագովը հանդիսացան նախ՝ XIX դարու վերջերը՝ պրոֆ. Վ. Բոլոտովը (О сочинении студента Георгия Гамрекелова «Древнейшая история церкви в Грузии etc».,—«Христианское чтение», 1898 г., в. IV), իսկ ապա XX դարու սկզբից սկսած և մինչ մեր օրերը գրեթե բոլոր վրացագետները։ Սակայն այս խնդրում առանձնապես հետաքրքիր յեն Ն. Մառի և Իվ. Ջավախիշվիլու կարծիքները։ Ն. Մառը 1925 թվին գրում եր (Грамматика древнелитературного грузинского языка [Материалы по яфетическому языкознанию, XII], Лнгр., стр. 2). «Вообще церковный алфавит как инициальный, так строчный есть письмо грузинской христианской культуры, возникшее с нею и обслуживавшее религиозно-просветительные, а затем и общественные интересы грузинской христианской среды. Письмо, обслуживавшее культурные интересы грузин-

ской языческой среды, до нас не дошло. Вероятно, *военный* или *рыцарский* алфавит есть его пережиток, получивший развитие в светской военной среде под воздействием церковного письма, в свою очередь влиявший на него, на выработку его строчного вида»: *Հատկապես կանգ առնելով Լեոնտիոսի ցուցմունքի վրա,* Իվ. Ջավախիշվիլին *1928 թ. (Վրաց հնագրություն, վրացերեն, Տփղ., էջ 188) գրում էր. «Վրացական պատմական գրականության մեջ առայժմ միմիայն* Լեոնտիոս Ռուիսեցվ» *(Լեոնտիս Մրովելու) յերկասիրության մեջ ենք հանդիպում տվյալին վրաց այբբենի հորինման ժամանակի և հորինողի անձնավորության մասին։ Նա վրաց «գրության» հորինումը Փառնավազ թագավորին է վերագրում։ Քանի որ այս Փառնավազին XI դարու այս՝ վրացի պատմիչը պատկերացնում է իբրև Վրաստանի պետության և հասարակակարգի, ինչպես և կրոնի հիմնադիր, որին առասպելական անձնավորության է վերածված, այս պատճառով* Լեոնտիոս Ռուիսեցվո՝ *վրաց այբբենի մասին [տված] տեղեկությունն իր արժեքը կորցնում է։ Այստեղ միմիայն այն հանգամանքն է ուշագրավ, որ XI դ. վրաց պատմիչը վրաց այբբենը պատկերացրած ունի իբրև նախաքրիստոնեյական շրջանի մի գյուտ, որը, նրա կարծիքով, հնից հին էր և ուրիշների նման քրիստոնեյության ջահվածք չէր համարում։ Գուցե ապագայում պարզվի, ուներ արդյոք* Լ. Ռուիսեցին *այս առթիվ որևէ հիմնական աղբյուրներ կամ պատմական «ավանդություն»։ Սրանից հետո* Իվ. Ջավախիշվիլին *հատկապես շոշափում է վրաց այբբենի՝ այս կամ այն այբբեններին և, ի միջի այլոց, հայերենի հետ* (ibid., *էջ 189—196) ունեցած առնչության հարցը, որը, սակայն, լուծում է՝ գոնե հայերենի նկատմամբ՝ բացասական իմաստով։ Վրացերեն տառերի հայերենի հետ առնչության մասին տես.* Հ. Աճառեան *Հայոց գիրը [«Ազգային Մատենադարան» ԿԹ], Վիեննա 1928։ Օգտվելով առիթից, առաջ ենք բերում ակադ.* Ի. Մեշչանինովի *(*Загадочные знаки Причерноморья [«Известия Госуд. Акад. Ист. мат. культуры», вып. 62], Лнгр. 1933. стр. 60) *դիտողությունը կովկասյան ժողովուրդների այբբենների ծագման ժամանակի մասին ընդհանրապես.* «Поскольку Закавказье в первом тысячелетии до н. э. не представляло еще в своей социальной структуре классового расчленения, постольку же всякие поиски в нем «настоящей», т. е. фонемной, письменности заранее обречены на неудачу»:

*13. «Մայրենի կրոն» (սջուլի դեդուլի) դարձվածքը* Լեոնտիոսը *«հայրենի կրոն» (սջուլի մամուլի)-ի հակադրությամբ է գործածում, ակնարկելով յերբեմնի մայրիշխանական կամ մայրապետական (մատրիարքատային) կարգերի վրա, որի ամենացայտուն ապացույցները մինչև մեր օրերը պահպանել է վրաց իրականությունը, առանձնապես և շեշտակի կերպով լեզվական տվյալներում արտահայտված փաստերը (այս հարցի մասին մանրամասն մեր համապատասխան աշխատության մեջ* К вопросу об обычае кувады на Кавказе, *որ տպագրվում է։*

*14. «Սումբերիգ» նույն արաբ. «սուբերազ»- վրաց «բումբերազ» բառն է* դյուցազն-*ի իմաստով. նույնն է և* Լեոնտիոսի *յերկասիրության մեջ։*

*15. Որ Անդրեաս (Նախակոչյալ) առաքյալը վոչ մի առնչություն չի ունեցել Վրաստանի (նաև Հայաստանի) հետ, և նրա վերաբերմամբ ամբողջ զրույցը միմիայն X դարում է առաջանում վրաց գրականության մեջ, տես հետևյալ գրականությունը. И. Джавахов.* Проповедническая деятельность св. Нины и апостола Андрея,—«Журн. Мин. Нар. Просв.», 1901 г., январь, *նույնը*

վրացերեն, «Մոամբե» հանդեսում 1900 թ., № IV և առանձին. Կ. Կեկելիձե, Վրաց դարձի գլխավոր պատմական-ժամանակագրական խնդիրները, վրացերեն, — «Միմոմխիլվելի» I, 1926, եջ 3—9, նույնը գերմաներեն՝ Die Bekehrung Georgiens zum Christentum, Leipzig 1928, S. S. 9—15:

16. «Րկինիս-խևի», իրոք, յերկաթաձոր և նշանակում:

17. Սկսած աքցացից «Ապա թագավոր դարձավ Հայքում (Սոմխիթում) մեծն Յերվանդ» ելն մինչ այստեղ Լեոնտիոսը կամ գուցե նրա նախաղբյուրն ընդհանուր գծերով հիշեցնում են Մ. Խորենացու տվյալները (II, 37—61) հմմ. Ս. Գորգաձե, Գրությունններ վրաց պատմությունից, վրաց., եջ 23—26, Կ. Կեկելիձե, Լեոնտիոս Մրովելու գրական աղբյուրները, եջ 14:

18. Անակի, Խոսրովի և Տրդատի մասին խոսելիս Լեոնտիոսը, անկասկած, օգտագործած ունի Ագաթանգեղոսի Պատմությունը, սակայն ոչ հայերեն բնագիրը, այլ X դարու հունարեն թարգմանությունը, վորը յերկու խմբագրությամբ է հայտնի. 1. ընդարձակ և 2. համառոտ (Vita et conversatio et martyrium sancti martyris Gregorii Magnae Armeniae,—*Migne*, Patrologiae cursus completus, series graeca, t. CXV, p. p. 143—996; Acta sancti Gregorii, interpretae Ioanne stiltingo,—«Acta sanctorum» septembris, t. VIII, Antverpiae 1762; *V. Lenglois*, Collection des historiens anciens et modernes de l'Arménie, t. I, Paris 1867; *Paul de Lagarde*, Agathangelus und die Akten Gregors von Armenien, — «Göttingische Gelehre Anzeiger» XXXV, 1887. Հմմ. XI դարու վրացերեն թարգմանությունը *L.* Melikset-Bek, Vita s. Gregorü Parthianensis, T. 1920). Հմմ. նաև՝ *Л. Меликсет-Беков*, Грузинская версия Агафангелия и ее значение для грузинской историографии,—«Христ. Восток», т. V, 1915, стр. 168—170. Կ. Կեկելիձե, Լեոնտիոս Մրովելու գրական աղբյուրները, 4—5. Ս. Կակաբաձե, Պատմական պրպտումներ, 150:

19. Այսինքն Ագաթանգեղոսի պատմության մեջ. տես նախորդ ծանոթությունը:

20. Հայոց (Հայքի) Որընկթի մասին տես. այս աշխատության ը. հատորի ժե. գլխի 2 ծանոթությունը:

21. Հմմ. «Փարվանա»-ի մասին լեգենդը՝ Ց. Կոստանեանց, Շիրակի լեգենդաներից և ժողովրդական կեանքից, Ալեքսանդրապոլ 1896. նույնը Հ. Թումանյանի կողմից օգտագործած:

22. Հմմ. 20-րդ ծան.:

23. Այս կետի մանրամասն վերլուծումը տես. *Л. М[еликсет]-Б[еков]*, По поводу одного из анахронизмов в грузинских летописях,—«Христ. Восток», т. III, 1915, стр. 200—203:

24. Հռիփսիմյանց մասին խոսելիս, Լեոնտիոսը, անկասկած, օգտագործած ունի Ագաթանգեղոսի պատմությունը:

25. Այսինքն՝ փրանկ:

26. Նույնը:

27. Ասել է Սղնախ քաղաքից 4 կլ. հեռավորությամբ գտնվող Բոդբեն (սրանից մի փոքր հեռու կա և Բոդբիս-խևի գյուղը), ուր հետագայում կառուցվեց Նունեյի անվան վանքը, վորը բազմիցս վերանորոգված ձևով հասել է մինչ. մեր օրերը: Ցեկեղեցու մեջի պատկերագրությունը, վորը ներկա վիճակում այն-

քան հին եւ չէ, համաձայն նկարիչ Գ. Շարբաբչյանի մեզ հաղորդած տեղեկության, կատարված պիտի լինի XVIII դարու վերջերում նկարիչ Հովնաթան Հովնաթյանի ձեռքով (սրա մասին Շարբաբչյանը պատրաստած ունի հատուկ հոդված. իսկ առայժմ տես Լ. Մելիքսեթ-Բեկ, Հովնաթան, վրացերեն,—«Մնաթոբի» ամսագիր, 1933 թ. № 5, եջ 185)։—Վերջերս Ս. Կակաբաձեն (Бюллетень Кавк. Ист.-Арх. Института, № 4, Тфл. 1928, стр. 6—7) կարծիք հայտնեց, որ Բոդբի || Բուդբե վանք թե Սղնախի մոտ գտնվող Բոդբեն և հանդերձ ս. Նունեյի մենաստանով, այլ «Նինո-ծմինդա» գյուղը Սագարեջոյի մոտ՝ հնագույն տաճարի բեկորներով (վերջինիս մանրամասն նկարագրությունը տես Լ. Մելիքսեթ-Բեկ, Հնագիտական ուղևորություն Գարե-Կախեթ և Ծորեմի հովիտը, վրացերեն,—«Սախալխո սաքմե» 1920 թ. № № 964, 974)։

28. Հռիփսիմյանց մասին տեղեկությունները Լեոնտիոսը քաղած ունի գլխավորապես յերկու աղբյուրից, որոնցից մեկն է ս. Նունեյի վարքը (տես ա. պրակը), իսկ մյուսը նույն Հռիփսիմյանց վկայաբանության վրացերեն թարգմանությունը, որը մի քանի խմբագրությամբ է հասել մեզ, դրանց մեջ ամենահնագույնն է, ինչպես Իլիա Աբուլաձեն նորերս պարզեց, Վրաց յեկեղեցական նախկին թանգարանի հավաքածուի № 511-ը (*Ф. Жордания*, Описание рукописей Тифлисского Церковного Музея, Кн. II, Тфл. 1902, стр. 63), ապա գալիս են Գիտությանց Ճեմարանի նախկին Ասիական թանգարանի, այժմ Արևելագիտության Ինստիտուտի Georgica հավաքածուի № 58 (*А. Цагарели*, Сведения о памятниках грузинской письменности, т. I, в. 3, стр. 160) և Վրաց մեջ գրագիտության տարածող Նախկին ընկերության հավաքածուի № 3640. սրանց կողքին անպայման հիշատակելու յե Փարիզի Ազգային Մատենադարանի Georgica հավաքածուի № 3 (*E. Takaichvili*, Les manuscrits Géorgiens de la Bibliothèque Nationale de Paris et les vingt alphabets secrets Géorgiens, Paris 1933, p. 26, վրացերեն) և Կեմբրիջի համալսարանի գրադարանի Georgica հավաքածուի № 5 (*Robert P. Blake*, Catalogue of the Géorgian Manuscripts in the Cambridge Universty Library,—«Harvard Theological Review, Vol. XXV, July 1932, № 3, pp. 216, 220—221). վերջապես, նորագույն ժամանակվա յե վրաց յեկեղեցական ն. թանգարանի № 1043 (*М. Джанашвили*, Каталог предметам Церковного Музея грузинского духовенства, Тфл. 1914, стр. 1. *Л. Меликсет-Беков*, Новый список «Жития свв. Рипсимии, Гаянии и сподвижниц» на грузинском языке,—«Христ. Восток», т. III, 1915, стр. 313—314)։ Ընդ սմին ավելորդ չի լինի մատնանշել, որ Դավիթգարեջա մայրավանքի վիմափոր մեծ սեղանատան հյուսիսային պատի վրա մի ուշագրավ fresco կա, ուր ներկայացված է 2 աղջիկ համապատասխան մակագրություններով վրաց յեկեղեցական յերկաթագիր տառերով. 1. «ծմ. Րիփսիմե», և 2. «մոցիքուլի քարթ...» (մեր 1921 և 1929 էքսպեդիցիաների նյութերից), որ մենք կարդում ենք և մեկնում այսպես. 1. «ծմիդայ Ռիփսիմե» սուրբ Հռիփսիմե, և 2. «մոցիքուլի քարթ[ուելթա Նինո]» վր[աց] առաքելուհի [Նունե]։ Իր տեղում, Դավիթ Գարեջեցու վարքի մասին խոսելիս, մենք արդեն ցույց ենք տվել, թե ինչպիսի դեր ունեին գրաված միջին դարերում Դավիթգարեջայի վանքն իր շրջակա այրիվանքերով հանդերձ հայ «ուխտավորների» աչքում։

# ՀԱՎԵԼՎԱԾ

Ինչպես ընթերցողը հիշում է, այս գրքի ներածականում մենք առաջ ունենք բերած այն հիշատակարանը (թարգմանաբար), որը Քարթլիս-ցխովրեբայի Մարիամ թագուհու վարիանտում նախորդում է «Արչիլ թագավորի վկայաբանությանը» և որից պարզվում է վերջինիս հեղինակի անունը՝ «Արչիլի վկայաբանությունն էլ... գրեցի Լեոնտիոս Ռուիսեցիս (Լեոնտի Մրովելին)»,—ասում է իր մասին Լեոնտիոսը։ Նույնը մենք գտնում ենք և հիշյալ Արչիլի վկայաբանության ընդարձակ խմբագրության մեջ, ուր ասված է, որ վերջինիս «յերանելի վարքն ընդարձակ կերպով գրել է, ինչպես «Վրաց մատյան»-ն է հաղորդում, սուրբ Լեոնտիոս եպիսկոպոսը» (Մ. Ջանաշվիլի, Վրաց գրականությունը, վրացերեն, I, Տփղ. 1900, էջ 258)։ Հետևապես Լեոնտիոս Ռուիսեցու՝ «Արչիլ թագավորի վկայաբանության» հեղինակ լինելն ամենայն կասկածից դուրս է։

Ինչ վերաբերվում է «վկայաբանության» տեկստին, այն հասել է մեզ յերեք խմբագրությամբ, որոնցից հնագույնն է Ք. Ց.-ի մեջ մուծածը՝ Ե. Թաղ'այշվիլու հրատարակությամբ 211--215 էջերում, իսկ M. Brosset-ի (նույնը և Ն. Մառի)՝ 181—184, որին համապատասխանում են նույն M. Brosset-ի ֆրանսերեն թարգմանության 253—255 էջերը («Համառոտ պատմություն Վրաց»-ի մեջ բացակայում է). մյուս խմբագրությունն է ընդարձակը, որին հիմք է ծառայել հնագույն համառոտը և որը հայտնի է Մ. Ջանաշվիլու հրատարակությամբ՝ «Վրաց գրականություն», I, 253—292. վերջապես յերրորդը՝ դարձյալ համառոտ՝ համեմատաբար նոր ժամանակների (XVIII դարու), որ հրատարակել է Մ. Սաբինինը՝ «Վրաստանի դրախտը», վրացերեն, էջ 321—332. նույն Մ. Սաբինինին պատկանում է և «վկայաբանության» ռուսերեն թարգմանությունը՝ «Полное жизнеописание святых Грузинской церкви», ч. III, СПБ. 1873, стр. 71—84:

«Վկայաբանությունն» ինկատի ունի արաբական արշավանքի դեպքերը և Արչիլ II թագավորի (668—718) նահատակությունն «ի ձեռն Ճիճում-Ասիմի»։

... [Արչիլին արքեյանոցի մեջ ձգելուց հետո] Ասո[ի]մին ներկայացավ Գարդաբանեցի իշխան[ներից] մեկը (var.+ազգով հայ), որը սարկինոզ[1] էր դարձել...

## ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆ

1. Այսինքն մահմեդական

## Գ.

# ՋՈՒԱՆՇԵՐ ՋՈՒԱՆՇԵՐՅԱՆ (XI Դ.)

## „ՎԱԽՏԱՆԳ ԳՈՐԳԱՍԱԼԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ“

*Քարթլիս-ցխովրեբայի Մարիամ թագուհու վարիանտում* Լեոնտիոս Մրովելու *«Վրաց թագավորների և նախահայրերի ու տոհմերի պատմությանն» անմիջապես հետևում է մի ընդարձակ երկասիրություն հետևյալ վերնագրով. «Պատմություն Վախտանգ Գորգասալ թագավորի ծնողների, ապա և հենց իրեն՝ մեծ և աստվածապաշտ թագավորի, որը վրաց բոլոր այլ թագավորներից առավել ևս հռչակավոր հանդիսացավ»։ Այդ երկասիրությունը գրաված ունի* Ե. Թաղ'այշվիլու *հրատարակության մեջ 117—211 էջերը, իսկ M. Brosset-ի (նույնը և* Ն. Մառի)՝ *108—161, 163—181, որին համապատասխանում են նույն M. Brosset-ի ֆրանսերեն թարգմանության 114—216, 220—253 էջերը և «Համառոտ պատմութիւն Վրաց»-ի 72—104։ Որ այս երկասիրությունը, իրոք,* Ջուանշերինն *է, երևում է այն հիշատակարանից, որն ինչպես նույն Մարիամի վարիանտում, նույնպես և Վախտանգ* VI*-ի հանձնաժողովի խմբագրության բովով անցած գրչագրերի մեջ անմիջապես կցված է «Արչիլ թագավորի վկայաբանությանն» հետևյալ բովանդակությամբ. «Վրաց (քարթվելների) պատմության այս գիրքը մինչ Վախտանգ [Գորգասալ] գրվում էր հնուց հետե, իսկ Վախտանգ թագավորից սկսած մինչ այստեղ գրեց Ջուանշեր Ջուանշերյանը, սուրբ Արչիլի* (sic) *եղբոր դստեր ամուսինը, Միհրանի (Միրիանի) որդի Ռևի սերնդից. իսկ այսուհետև թող գրեն եկող սերունդներն՝ ինչպես գիտեն»* (Ե. Թաղ'այշվիլու *հրատ., 215, M. Brosset-ի, 184, հմմ. ֆրանսերեն թարգմանության 256)։ Նույնն ըստ «Համառոտ պատմութիւն Վրաց»-ի տես այս պրակի ներածականում։*

*Այն հանգամանքը, որ այս հիշատակարանում Ջուանշերին Արչիլ թագավորի եղբոր փեսա է անվանված, հիմք տվեց բանասեր-*

ների կարծելու, որ իբր այդ Ջուանշերը VIII դարու պատմիչ եւ Այսպես էր դատում, ի միջի այլոց, և «Համառօտ պատմութիւն Վրաց»-ի հրատարակիչ Հ. Ա[թանաս] Թ[իրոյան]ը, երբ իր հրատարակության առաջաբանում («Տեղեկութիւն»-ում) գրում էր. «Առաջիկայ Պատմութեանս Վրաց... ոչ է յայտ ով եկաց մատենագիր, թէ և ի բազմաց հաւաստի՝ թարգմանութիւն լինել երկասիրութեանն Ջուանշերի (Ջուանշերի) Վրաց պատմչի, որ եկաց առ ժամանակօք, որպէս թուի Արչիլ Բ-ի (688—718), զի և յիշատակի անուն նորին ի պատմութեանս»։ Ապա հրատարակիչն առաջ է բերում համապատասխան memento-ն ըստ նույն պատմության, որը նա վերջ ի վերջո Ջուանշերին է վերագրում և ըստ այնմ էլ խորագրում իր հրատարակության վերնագիրը՝ «Համառօտ պատմութիւն Վրաց ընծայեալ Ջուանշէրի պատմչի»։ Թեև Ս. Կակաբաձեն (О древнегрузинских летописцах XI столетия, Тфл. 1912, стр. 22—26, 36) սկզբում բոլորովին այլ կարծիքի էր Ջուանշերի մասին՝ համարելով նրան XI դարու պատմիչ, սակայն վերջերս՝ սկսած 1924 թվից՝ պնդում է, որ «Վախտանգ Գորգասալի պատմության» հեղինակն «8-րդ դարու երկրորդ կիսին, ավելի ճիշտն՝ երրորդ քառյակին պիտի վերագրել» (Պատմական պրպտումներ, 1924, էջ 190, Պատմական ժողովածու, II, 1928, էջ 68)։ Իսկ Իվ. Ջավախիշվիլին՝ Ս. Կակաբաձեից էլ առաջ և մինչ օրս՝ թե իր բանավոր յուրայիններում (դասախոսություն-դիմումներին) և թե 1916 և 1921 հրատարակված «Հին վրացական պատմական գրականություն» աշխատության ա. և բ. տպագրությանց մեջ ապացուցում էր, որ Ջուանշերը ոչ թե VIII դարու պատմիչ է, այլ XI-րդի, քանի որ օգտագործած ունի X—XI դարերում յերևան յեկած աղբյուրները։ Ճիշտ է, Ջուանշերի յերկասիրությունն իբրև պատմագրական գործ ցածր որակի գրվածք է, բայց և այնպես նույն Ջավախիշվիլին այսպես է այն բնորոշում. «Ջուանշերի գրած «Վախտանգ Գորգասալի պատմությունը» այնպիսի ոճով է գրված և այնպիսի անհավատալի տեղեկություններով լցված, որ ավելի առասպելին է նման, քան թե իսկական պատմությանը» (բ. տպ., 189)։ «Ջուանշերի յերկասիրությունը Վախտանգի ժամանակվա պատմության համար, բացի մի քանի տեղեկություններից, գրեթե պիտանի չէ և ուշագրավ է միմիայն իբրև բնորոշող նրա, թե ինչպիսի տեղեկություններ և ինչպիսի պատկերացում ունեյին XI-րդ դարում վրաց ուսյալ շրջանները Վախտանգ Գորգասալի անձի և թագավորության մասին. Թեև VII—VIII

*դարերի [անցքերի] մասին [նրա մեջ] ավելի ուշագրավ տեղեկություններ կան»* (ibid., 194):

*Ըստ* Կ. Կեկելիձեյի *(Վախտանգ Գորգասալի պատմիչն ու նրա պատմությունը, վրացերեն,--«Ձվենի մեցնիերեբա», № 4, 1923, եջ 46) եա, «Վախտանգ Գորգասալի պատմությունն իրոք XI դարումն է գրված, բայց նրա հեղինակը վոչ թե Ջուանշերն է, այլ հենց նույն անձնավորությունը, վորը գրել է «Թագավորների պատմությունը» և վորը հայտնի յե Լեոնտիոս Ռուիսեցվո անվամբ»։*

*Ով ուզում է լինի «Վախտանգ Գորգասալի պատմության» հեղինակը, մեզ համար եյականն այն է, վոր այդ գրվածքը պատմագրական լուրջ գործ չի կարող համարվել. բավական է հիշել, վոր Վախտանգ Գորգասալի կյանքի՝ նկարագրությունն այնպիսի առասպելաբանություններով է զարդարված, վոր ուղղակի հակասում է Ղազար Փարպեցվո տված միանգամայն հավաստի տվյալներին։ «Վախտանգի մասին մենք ունինք ուրիշ տեղեկություններ եւս», ասում է այս առթիվ* Իվ. Ջավախիշվիլին (op. cit., 191), *ակնարկելով Ղազար Փարպեցվո վրա և ապա շարունակում. «և այս տեղեկությունները մեզ ցույց են տալիս, վոր Վախտանգը յերևելի թագավոր է յեղել. սակայն, ճիշ այն Վախտանգը և ճիշ Ջուանշերի նկարագրած Վախտանգ Գորգասալը։ Ջուանշերի պատմությունն այն աստիճան առասպելական գծերով է զարդարված, վոր հետազոտողի մեջ ակամա միտք է ծագում՝ մի՞ գուցե Վախտանգ թագավորի պատմության մեջ սխալմամբ մտցրած լինին այն դյուցազներգությունները, վորոնք, Գրիգոր Մագիստրոսի ասելով, գոյություն ունեյին Վրաստանում Վահրամ (Բահրամ) Պահլավունու մասին»* (ibid.)*:

---

* *Տես հատուկ ըրակինությունն այս առթիվ* Կ. Կոստանեանց, *Գրիգոր Մագիստրոսի Թղթերը. Ալեքսանդրապոլ 1910, եջ 40. Н. Марр*, Грузинский извод сказки о трех остроумных братьях из «Русудаииани»,—«Восточные Заметки», Спб. 1895, стр. 228. Նույնը, Вступительные и заключительные строфы Витязя в барсовой коже Шоты из Рустава [«Тексты и Разыскания по армяно-грузинской филологии», XII], Спб. 1910, стр. XXXVII—XXXVIII и прим. 1. стр. XXXVIII: *Ինքնըստինքյան հասկանալի յե, վոր այստեղ մի կողմն թողնելու յե* Թ. Ժորդանիայի *(Քրոնիկոններ, I, եջ XXXIV) անհեթեթ կարծիքը, իբր Վախտանգ Գորգասալի պատմության հեղինակը վերջինիս ժամանակակից պիտի լինի և համապատասխան անցքերի ականատես։*

# [ՎԱԽՏԱՆԳ ԳՈՐԳԱՍԱԼ[1] ՅԵՎ ՆՐԱ ՀԱՋՈՐԴՆԵՐԸ]

*... Վախտանգը մարդ ուղարկեց իր մորեղբայր Վարազբակուրի մոտ, որն իշխան էր Ռանում, և՝ հաղորդելով Ոսաց (Օսեթի) արշավանքի մասին՝ օգնություն խնդրեց նրանից... Ապա Վախտանգը դիմեց Վրաց (Քարթլիի) զորքին, և բոլորը ժողովեցան... [Յեվ]՝ հանձնելով թագավորությունն իր մոր Սա[հա]կդուխտին (Սագդուխտին)[2] Խվարանձե քերամբ հանդերձ՝ գրեց հետևյալ կտակը. «Յեթե կենդանի չվերադառնամ [պատերազմից], իմ քույր Խվարանձեյին ի կնություն վերցնի Միհրանը (Միրիանը), որը Վախտանգի հորեղբոր որդին էր Միհրանի (Միրիանի) որդի Ռևի զարմից, որը հայոց, (սոմեխների) Տրդատ (Թրդատ) թագավորի փեսան էր...»:*

*... Յեվ խնդրեց [Վախտանգը] Պարսից թագավորից տալ իր դուստրը նրան ի կնություն: Յեվ Պարսից թագավորը տվեց նրան ի կնություն իր դուստրին, որի անունն էր Բալենդուխտ. նաև Հայքն (Սոմխիթը) և Կովկասյան բոլոր թագավոր[ություն]ները տվեց նրան օժիտ: [Յեվ] նամակ գրեց նրան, որի մեջ ասված էր հետևյալը. «Որմիզդ ամենայն արքայից արքայի առ Վախտանգ Վարանխոսրով-Թանգին՝ տասն թագավորների ախոյանին»: Յեվ պատվիրեց նրան կռվել [Բյուզանդացվոց] կայսեր դեմ, որովհետև կայսրը պատերազմ էր սկսել պարսից հետ:*

*Ապա Վախտանգը հաղորդեց իր բոլոր զորքերին և Կովկասյան բոլոր թագավորներին, և սրանք ժողովեցան և կանգ առան Կուր [գետի] հայնկույս և հանկույս՝ ընդամենը յերկու հարյուր հազար: Յեվ նրան, Պարսից թագավորի հրամանով, միացավ նրա մորեղբայր Վարազ-Բակուրը, որը Ռանի իշխանն էր, Ատրպատականի, Ռանի և Մովականի զորքով հանդերձ՝ թվով յերկու հարյուր*

*... Եւ առաքեաց [Վախթանգ] առ եղբայր մօր իւրոյ Վարզաբակ[ուր] խնդրել օգնութիւն ի վերայ Օսաց... Եւ ինքն Վախթանգ ձայն տուեալ յամենայն Վիրս... Եւ յանձն արար զթագաւորութիւնն մօրն, և թէ՛ մեռանիմ, ասէ, ի պատերազմիս, տացէ զթագաւորութիւնս Միհրան՝ թոռն Տրդատայ, առեալ զքոյր իմ Խորանձէ ի կնութիւն...:*

*... Եւ խնդրեաց [Վախթանգ ի թագաւորէն Պարսից] զդուստր նորա իւր ի կնութիւն... Եւ թագաւորն Պարսից տեսեալ զաջողութիւն նորա, ետ նմա զդուստր իւր Բալենդուխտ, և զլեառն Կովկասու ի հրամանս նորա. և գրեաց զնախերգանս թղթոյն այսպէս. ՅՈրմզդէ Շահիշխանայ (ուղիղ՝ Շահնշահէ) առ Վախթանգ Վարնխոսրովթանգ, ախոյեան տասն թագաւորաց՝ խնդալ: Արարի զոր խնդրեցերն. այլ զօրացիր և քաջ լեր՝ կալով ընդդէմ Յունաց, առեալ զքեռին քո ընդ քեզ:*

*Եւ արար Վախթանգ համօրէն զօրաց երկուհարիւր հազարաց, և եկ ընդ Հայս, զի և նոքա եւս առեալ էին զնոյն պատուէր: Եւ եկին նախարարքն Հայոց ընդ նմա՝ Տրդատ Արշակունի և Արև Սիւնեաց տէր և Ջուանշեր (ուղիղ՝ Ջուանշիր) Վասպուրականի և Համազասպ Տարօնոյ, Գրիգոր և այլքն ընդ նմա. և չոգան ի Կարախպուլս, և թողին ի վերայ նորա իշխանս երկուս՝ երկո-*

հազար հեծյալ... [Յետ] արշավանքի յելավ Վախտանգն ընդդեմ Հունաց (Հունաստանի) և հասավ (բնագրում՝ հասան) Հայք (Սոմխիթ)։ և Գերմակափարում, ուր բերդ էր կառուցել վերոհիշյալ Պերոզը, նրան միացան Հայոց (Սոմխիթի) իշխանները՝ Սյունյաց Արևը, [Վ]ասպուրականի (Ասփուրագնեցի) Ջուանշերը*, Տարոնեցի [Հ]ամազասպը, Գրիգորաշեն քաղաքից Տրդատը (Թըրդատը**)՝ Մեծն Տրդատի (Թրդատի**) զարմից։ Յետ [բոլորը միասին] մտեցան քաղաքին***, որ կոչվում էր Կարախաղոլիս, այժմ Կարնոյ****-քաղաք անվանյալը։ Յետ կռվում էյին նրա (Կարախաղոլի) դեմ, սակայն գրավել այն չկարողացան, քանի որ վերջինս [յերեք շարք] բարձր պատերով էր [շրջապատված]։ Յետ թողեց [Վախտանգն] այնտեղ յերկու իշխան [յուրաքանչյուրը] տասներկու հազար [հեծելա-]զորքով այն քաղաքն պաշարելու համար։ [Իսկ ինքը] Վախտանգը գնաց դեպի Պոնտոս և ճանապարհին ավերեց յերեք քաղաքներ՝ Անձիանձոր*****, Ծեկեղեց (Եկլեց) [և] Դասատեր******։... [Յետ] Վախտանգը Հայոց (Սոմխիթ) զորքին և [առհասարակ] բոլոր զորքերին պատվիրեց, որ կրոնավորներից փոքրի չսպանեն, այլ [միմիայն] գերի վերցնեն։ [ապա] ասաց. «...Առաջին ընդհարումը թագավորների միջև յեղավ Անձիանձորում, ուր այժմ գտնվում է մեծն վարդապետ Գրիգորի գերեզմանը... իսկ դուք, Հայք (Սոմխիթի) բնակիչներդ, Արշակունյաց բդեշխ (պիտիախշ) Բյուրատյանք, միթե չեք հիշում Գրիգոր Պարթևի ու նրա հակառակորդների գործերը, ինչպես Տրդատ*******

տասան հազար հեծելօք՝ պատերազմել ընդ նմա, որ է Կարնոյ քաղաք. և չոգան ընդ միջերկրայս մինչ ի Պոնտոս, և առին երիս քաղաքս։ Եւ պատուէր ետ Վախտանգ զօրացն մի զոք սպանանել զանօրինացն պարտն (ուղիղ՝ զկրօնաւորացն [զան]պարտն), որք Քրիստոսի յերկրպագուքս են իբրև զմեզ։ Քանզի հաւն իմ յորժամ ել ընդ Պարսից թագաւորին ի Յոյնս և հասին մինչև յԱնձիանձու, ուր գերեզման սրբոյն Գրիգորի է... Եւ մեծն Տրդատ թագաւորն Հայոց պատուհասեալ ի Տեառնէ, վասն տանջելոյն զսուրբ Լուսաւորիչն և զսուրբ տիկնայսն, և ծանուցեալ զՔրիստոս՝ ոչ յաղթահարեցաւ յումեքէ մարդոյ. զոր գիտէք դուք իսկ, քաջք Հայոց, թէ որպէս հսկայն և նշանաւորն յամենայն ազգս Տրդատ՝ թիկամբք բեռնարկեալ՝ շինէր տուն աստուծոյ... Եւ թողեալ [Ներբովթեանք] զքաղաքն և զաշտարակն՝ զոր շինէին, գնացին յաշխարհն իւրեանց. Թորգոմ ի Թորգոմեանս, Սիգոն ի Սիգէթ, Բերձեանք ի Բերձանս, Յոյնք ի Յունէթ, Ագ և Մագ՝ յԱգմագուգէթ (ուղիղ՝ Գուգ և Մագ[ոգ]՝ ի Գուգմագոգեթ), Պարսք ի Պարս, և այլք յայլս...

---

* Var. Ջուանշեր. հմմ. 148 յեր.* ծանոթ,։
** Var. Թարդատը։
*** Var. Քաղաքաբերդին։
**** Var. Տարնու։
***** Var. Անձրձոր, Անձորեթ։
****** Var և Սատր (դա սաերի)։
******* Var. Մրդատ

Արշակունյաց* թագավորն ամբարտավանությունից գլորվեց և խող դարձավ, իսկ Գրիգորը նրան [քրիստոնյա] դարձրեց[5], և այնուհետև յաղթեց նա յեկեղեցիների սպասավոր (մշակ), և մեծ յեկեղեցի կառուցեց Տրդատը (Թրդատը)** իր թիկունքով, քանի որ նա հսկա էր... Իսկ [Ներքոթյանները] բոլորը թողեցին այն քաղաքը. և ավեց հնդկերեն խոսողներին Հնդկաստանը, սինդացիներին՝ Սինդը, հռոմայեցիներին՝ Հռոմը, հույներին (բերձեններին)՝ Հունաստանը, Գոգ և Մագոգին՝ Մագուգքը (բնագրում՝ Ագ և Մագոգին՝ Մագուգիթը), պարսիկներին՝ Պարսկաստանը։ Իսկ առաջին լեզուն ասորերենն էր. և այսպես Ներքոթի որոշ յոթը լեզվով եյին խոսում[6]...»։

Ծեվ զարթնելով քնից՝ թագավորը փառաբանեց աստծուն... և դիմեց [իրեն մոտ գտնվող Գրիգոր աստվածաբանի աշակերտներ Պետրոս քահանային և Սամվել մոնոզոնին, ասելով՝] «...Տեսնում ենք***, որ Պարսից զորքն ավելի շատ է, քան թե Հայոց (Սոմխիթի) և Վրաց (Քարթլիի) զորքերը, և մեր մեջ չկա փոքր ճշմարիտ հավատացյալ [այն հավատքը], որ սերմանեց մեր հայր Միհրանը ((Միրիանը) կամ՝ մորով իմ ազգական Տրդատը (Թրդատը)****... Ապա [Վախտանգ] թագավորը դիմեց իր մորեղբորն ու բոլոր թագավորներին՝ ասելով. «Բանակ հաստատենք ծովից դեպի հարավ*****, որ պեսզի մենք յեկեք ունենանք ողետից և խնդությունից»։[Ցեվ] նա հանեց այն զորքը քաղաքի շրջապատից, և անցան հինգօրյա ճանապարհով դեպի հարավ ****** և կանգ առան Սպերի շրջանում...

... և ապա զարթուցյալ փառս եա, [թագաւորն] ստուածոյ։ Եւ ի վաղիւն դառնայր առ Հայօք, և պատուիրէր մի ումեք մեղանչել։

---

* Var. Արբակունյաց. հմմ. 148 յեր. ծանոթ.։
** Var. Թարդատը։
*** Var. Գրտենք։
**** Var. Թարդատր։
***** Var. Դեպի Հայք (Սոմխիթ)։
****** Var. Դեպի Հայք (Սոմխիթ)։

... Ապա փող փչեցին, և դուրս յելան ամբողջ Հայքը (Սոմխիթը) և Պարսիկք և Դարուբանդի թագավորը...

Ցեվ վերադարձավ Վախտանգը [Հունաստանից] Կղարջքի (Կլարջեթի) ճանապարհով, իսկ իր զորքը թողեց Հայոց (Սոմխիթի) ճանապարհով...

Ցեվ յերեք տարուց հետո Պարսից թագավորը պատերազմի յելավ Վախտանգի դեմ... իսկ Վախտանգը մարդիկ ուղարկեց հույների (բերձենների) մոտ՝ հաղորդելով հետևյալը. «...Ահա պարսիկները՝ թվով մոտ յերեք հարյուր հազար՝ ներս խուժեցին Վրաց (Քարթլիի) սահմանները. Թեև նա (պարսից թագավորը) հուսով եր, վոր Հայոց (Սոմխիթի) և Կովկասյանների թագավորների զորքով կս կուժեղանա, սակայն վերջինները հանձն չառան նպաստելու նրան, քանի վոր նրանցից վոմանք հավատարիմ եյին խաչեցյալին, իսկ վոմանք սատանայի դրդմամբ (սատանայից հաղթահարվելով) Դարուբանդի թագավորին միացան...»...

Ցեվ ընդլայնացրեց Վախտանգը Մոգվթա[7] [կոչված] կամուրջն իբր վաթսուն կանգուն՝ նրանով զորք անցկացնելու համար։ Ցեվ ինքը թագավորը և Ջուանշեր* սպարապետը կանգ առան Մցխեթում, իսկ Նասր և Միհրդատին (Միրդատին) թողեց Հայոց (Սոմխիթի) և Վրաց (Քարթլիի) զորքի հետ, վորոնք կանգնած եյին Արմազի մոտ[8]։...

... Ցեվ չորս ամիս շարունակ նրանց (վրաց և պարսից) միջև տեղի ուներ սաստիկ պատերազմ. ապա [վրաց մոտ] հասավ կայսեր դեսպանը, վորը մատուցեց Վախտանգին ընծաներ և հասցրեց ութսուն հազարանոց հեծելազորքը հույներից (բերձեններից), նաև կայսեր գիրն առ Վախտանգ, ուր ասված եր. «Վերադառնալով պատերազմից ընդդեմ խականի, ահա ուղարկում եմ քեզ ութ-

---

* Var. Ջուանբեր. հմմ. 148 յեր.* ծ.

սուն հազարանոց հեծելազորք և դրել եմ Լեոնին[9], որ՝ յեթե կարիք ունենաս զորքի, քո առաջն է Մելիտինից *[10] սկսած մինչ Համդե **[11] և գնալի վեր մինչ Կարնո-քաղաքը, և հրամայել եմ Լեոնին լինի քեզ մոտ»։

... Ցեվ ավեց Վախտանգն ի կնություն պարսից թագավորին իր քույրը, վորի անունն եր Միհրանդուխտ և վորին դեռ եյին վերցրել ռսերը, իսկ Վախտանգն ազատել եր։ Ցեվ Խվարանձեյին չավեց այն պատճառով, վոր վերջինս գրավ եր Հայոց (Սոմխիթի) բդեշխի (պիտիախշի) մոտ...

... Եւ ետ Վախթանգ զքոյր իւր Միհրանդուխտ՝ թագաւորին Պարսից Խոսրովու ի կնութիւն. զի միւս քոյրն Խորազնէ առ Հայոց Պատիաշխոյն (ուղիղ բդեշխին) դրաւ էր...

Ցեվ Վախտանգի հրամանատարության ներքո ժողովվեց հիսուն հազար ընտիր հեծելազորք՝ հույնը (բերձենը), վրացին (քարթլին) և հայը (սոմխը)***։

Ցեվ Պարսկաստան մտնելուց ութերորդ տարին Վախտանգ թագավորը հասավ Անտիոքիա, ապա յեկավ Ուրհա... Ցեվ Վախտանգը վողջ և առողջ գտավ իր մորն ու քրոջը. իսկ [նրա զորքը] հասավ մինչ հունաց (բերձենների) և հայոց (սոմխեների) սահմանագիծը...

Եւ եկին ի սահմանս Հայոց և Յունաց...

Ցեվ [հունաց] թագավորը մեծամեծ ընծաներ ուղարկեց Վախտանգ թագավորին, նաև ի կնություն ավեց նրան իր դուստր Հեղինեյին, վորին [և] ուղարկեց մեծ զորքով հանդերձ մինչ Հայքի (Սոմխիթի) սահմանները, ուր [հույներին] դիմավորեց Վախտանգ թագավորը. ապա հունաց (բերձենների) զորքը վերադարձավ, իսկ նա (Վախտանգը) յեկավ Մցխեթ...

... Ցեվ նստեց ինքը Վախտանգն Ուջարմայում, վորը մեծ կառուցվածքներով զարդարեց, և իր քույր Խվարանձեյին ի կնություն ավեց Հայոց (Սոմխիթի) բդեշխ (պատիախշ) Բակուրին...

... Եւ նստաւ Վախթանգ ի յՈւջարմայ... և զԽորանձէ՝ զքոյր իւր դաւաղ՝ ետ ի կնութիւն Հայոց բդեշխին՝ Բակուրայ։

. . . . .

* Var. Մելիտից։

** Var. Բնագրում՝ Լամդե (sic)։ Ըստ յերևույթին առաջացած է յեկեղեցական վրացերենում «հ» և «լ»-ի շփոթությունից, վորոնք իրար նման են։

*** Var. Հույները (բերձենները), վրացիք (քարթվելները) ու հայերը (սոմխները)։

Իսկ հույնաց (բերձեննների) թագավոր [Լևոնը]՝ Վախտանգի անբըը մեռավ, և թագավոր նստեց նրա որդի (sic) Զենոնը[12], որը գեպի Սպեր ուղղվեցՔարթլի գալու նպատակով։ Ցեվ՝ լսելով [Վախտանգ] Գորգասալի ծանր վիճակը՝ նա կանգ առավ Կարնո-քաղաքում։ Այնտեղ գիմեց և [պարսից] Խոսրով (Խվասրո) [թագավորը]։ Խոսրովն (Խվասրոն) ու կայսրն [իրար հետ] կռվեցին Կարնիփորում, ուր մեծ կոտորած յեղավ յերկու զորքիցն էլ, որից արյան յերկու հոսանք կազմվեց. և այդ պատճառով էլ այն Կարնիփորա[13] կոչվեց։

Յայնմ ժամանակի մեռաւ կայսրն Յունաց, և թագաւորեաց Զենոն որդի (sic) նորա, և եկն օգնել Վախթանգայ. և հասեալ ի Սպեր՝ լուաւ զբօթ վիրաւորելոյն ի մահ զՎախթանգայ, և դարձաւ ի Կարնոյ քաղաք ։

... Այսպես Վախտանգը՝ զգալով իր մահ[վան մերձեցում]ը՝...դիմեց իր որդի Դաչիին. «Դու իմ անդրանիկ որդին ես. քեզ եմ տալիս իմ թագավորության թագը, իսկ քո յեղբայրներին բաժին եմ հանել Տասխիսըից[14] և Ծունդից[15] սկսած մինչ Հայք (Սոմխիթ) և Հունաստան...»։...*

Եւ մեռաւ Վախթանգ, յոլով պատուիրանաւ՝ որդւոյն՝ Դաչէի, որոյ ետ զթագաւորութիւնն...

... Ցեվ մեռավ Փարսմանը, և թագավոր նստեց նրա որդի Բակուրը։... Ցեվ սրա օրոք Պարսկաստանում թագավորում եր Ուրմիզդ կոչեցյալը, իսկ Հայքում (Սոմխիթում) կար մի իշխանաց որդի Վազգեն (Վարքեն) անուն, որն ամուսնացած եր իշխանազն Շուշանիկ կոչեցյալի՝ Վարդանի դստեր՝ հետ։ Սակայն սատանան տիրեց այս Վազգենին (Վարքենին) և մխոր հղացրեց կրակապաշտ դառնալու։ [Ցեվ Վազգենը] գնաց պարսից թագավորի մոտ և՝ հրաժարվելով քրիստոնեյական կրոնից՝ դարձավ կրակապաշտ։ Իսկ պարսից թագավորը յետ ուղարկեց նրան (Վազգենին) մեծամեծ ընծաներով [նշանակելով նրան] Ռանի իշխան։ Յերբ նա (Վազգենը) վերադարձավ, նրա կին Շուշանիկը նկա-

* Var. + ... Սուրբ Անտոն [Միջադեացին] (խոսքը Անտոն Մարտամդ՝ոփելու, այսինքն Մենակյացի մասին և. Լ. Մ.-Բ.) հարցուփորձ արավ իր ուսուցչի ուղի[ի մասին], և սովորեց ճշմարիտն, և իմացավ, որ նա (ուսուցիչը՝ Հովհան Զեդաղնեցին) գնացել է Հայք (Սոմխիթ), որը հյուսիսումն է։

տեց, որ իր ամուսինն ուրացել է քրիստոնեական կրոնը, այլև չէր խոնարհվում նրան իբրև ամուսին, և մոռացության տվեց սերն առ իրեն ամուսինն, և վողջ սրտով նվիրվեց Քրիստոսին՝ նրա պատգամները կատարելու համար։ Ապա Վազգենն (Վասքենն) ամենայն հիգ ու ջանք գործ դրեց [վերադարձնելու սերը]՝ նախ շողոքորթությամբ և աղերսանքով ու ընծաներ տալով. ապա յենթարկեց նրան (Շուշանիկին) մեծամեծ տանջանքների. Թեև սուրբ Շուշանիկի վարքը չկարողացա [նկարա]գրել վարքաբանության ընդարձակ լինելու պատճառով[16]. [ի վերջո] նա սպանվեց իր ամուսին Վազգեն (Վասգեն) իշխանից... *17

Ապա վրաց Բակուր թագավորը դիմեց Վրաց (Քարթլիի) բոլոր իշխաններին և դաղտնաբար զորք ժողովելով՝ դաղտագողի յելավ Վազգենի (Վասքենի) դեմ։ Իսկ Վազգենը (Վասքենը) կանգնած էր դաշտից դուրս, Կուր [գետ]ի ափին, ուր Անեկրիտ** 18 գետը մտնում է վերջինիս, հարձակվեց նրա վրա և կալանավորելով նրան՝ մաս-մաս արավ նրա մարմինը, որին ապա ծառից կախեցին։ Իսկ սուրբ Շուշանիկի մարմինն առանձին մեծարանքով բերին և թաղեցին Ցո[ւ]րտավում[19]...

.. Ապա պարսիկները՝ դրավելով ամբողջ Քարթլին, Հայքը (Սոմխիթն) ու [Վ]ասպուրականը(Ասփուրագանը)՝ սկրսեցին պատերազմել հույների (բերձենների) դեմ...

| | |
|---|---|
| ... Հերակլ կայսրն եկավ [Քարթլի] և մտեցավ Տփղիսին... | ... Ճանապարհ կալեալ ընդ Հայս [կայսրն Հերակլ] եկն ի Բզնունիս, և անտի եկանէ ի Տփխիս... |
| ... Ապա Հերակլ կայսրը Մանգլիսից և Երուշեթից[20] տարավ մեր տեր Հիսուս Քրիստոսի վոտնի տախտակները և բևեռները, որ Կոստանդիանոս | ... և էառ [Հերակլ] ի Մանկլեայ և յԵրուշէթոյ՝ զոտից Տեառն տախտակն, և զբևեռսն՝ զտուեալսն ի Կոստանդիանոսէ Մհրանայ թագաւորին... |

* Var. Ռանի իշխանից։
** Var. Անակերտ։

[կայսրն] էր տվել Միհրան (Միրիան) թագավորին...*

Իսկ այդ պահին ապականված էր Քարթլին, Հայոց (Սոմխիթի) և Ռանի երկրները, քանի որ ոչ մի տեղ այլևս չկար ո՛չ շինություններ և ո՛չ էլ ուտելիք մարդկանց և անասունների համար[21]...

...Ապա Արչիլ թագավորը կանչեց [իրեն մոտ] Քարթլիի բոլոր իշխաններին և նրանց հանձնեց իր [հանգուցյալ] եղբոր՝ Միհր[22] թագավորի որդոց. մեկին տվեց հորեղբորորդի Գուրամ Կուրապաղատին, որը տիրում էր Կղարջքին (Կլարջեթին) և Ջավախքին (Ջավախեթին), իսկ մյուսին՝ Գիորգի ազգական բդեշխին (պիտիախշին), որն իշխում էր Թռեղքում (Թրիալեթում), Տաշիրում և Աշոցքում**, երրորդին՝ Ներսես (Ներսե) Ներսիանին, որը Վախտանգ թագավորի ընտրյալն էր...

...Ապա նրա (Արչիլ թագավորի) մոտ եկավ մի իշխան, որը Դավիթ մարգարեի սերնդից էր, Ադրներսեհ (Ադարնասե) անունով, Ադրներսեհ (Ադարնասե) կույրի եղբորորդին, որի հայրը խնամիացել էր Բագրատո[ւ]նյաններին հետ և նշանակված էր հույներից (բերձեններից) Հայոց (Սոմխիթի) կողմանց իշխան. սա [Մուրվան] Խուլի արշավանքի ժամանակ Գուրամ Կուրապաղատի որդոց մոտ էր անցել Կղարջք (Կլարջեթ) ու մնացել այնտեղ: Սա Ադրներսեհը (Ադարնասեն) խնդրեց Արչիլից... տալ նրան [որևէ] երկիր. և [Արչիլը] տվեց նրան Շուլավերն***[23] ու Արտահանը (Արտանը)...

...Իսկ արաբացիք (սարկինոզները) ուժեղացան Ռան երկրում և տիրեցին Դարբընին և Հայքին (Սոմխիթին)[24]...

Յաւուրսն յայնոսիկ իշխան մի ի տանէ Դաւթի մարգարէի, Ադրնասէ կոչեցեալ, եկն առ Արչիլն, որ լեալ էր ի Հայս, և գերեալ որդւովքն յայլազգեացն, և գերծեալ անտի՝ խնդրէր ինմանէ տեղի բնակութեան. և ետ նմա զԹիրշա և զՇղուեր և զԱտօնէ։ Եկին և ի Տար[օ]նոյ եղբարք երեք և բնակեցան մինչև ցԳաղգաղ՝ հրամանաւ Արչլին...

* Var. + ... Մուրվան Խուլը գերեց Հունաստան և Հայաստան (Սաամխեթո) երկրները մինչ ծովը...

** Բնագրում՝ Աբոցում. հմմ. 148 էջ.* ծանոթ.։

*** Var. Շոլավերը։

Առներսեհ (Ադարնասե) Կույրի յեղբորորդիք, յերկու յեղբայրները, վորոնք այրեցին հորեղբոր աչքերը, Տարոնից եկին յեկեղ Շակի* ու հաստատվել այնտեղ Արշիլի հրամանով, քանի վոր Կովկասի բոլոր ծայրերը Ռանի կողմից անբնակ էին դարձել... և յերկու յեղբայրները հաստատվեցին մինչ Գուղգուզ (Գուլգուլ)։

Նույն ժամանակներում բդեշխներից (պատիախշներից) վոմանք, վորոնց ներս չթողին Կղարջք (Կլարջեթ), գրավեցին Տայքում (Տաոյում) մի ժայռ, վոր կոչվում եր Կա[լ]մախ[2], և շինեցին այնտեղ ամրոց...

... և ոմանք ի նոցանէ (յերևելի արանց)՝ գնացին յերկիրն Տայոց, և գտին քար մի, և շինեցին զնա ամրոց, և կոչեցին զնա Կամախ (ուղիղ՝ Կալմախ)։...

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. Վորքան առասպելական գծերով է լի Վախտանգ Գորգասալի ժամանակվա (V դարու) անցքերի նկարագրությունը, վորը տալիս է Ջուանշերը, նույնքան իրական է նույն Վախտանգի պատմությունը, վորը՝ թեև համառոտ՝ տալիս է Ղազար Փարպեցին։

2. Այս Սահակդուխտ-Սագդուխտն՝ իբրև Վախտանգի մայր՝ հայտնի յե վոչ միայն Ջուանշերի յերկասիրության մեջ, այլև «Համառօտ պատմութիւն Վրաց»-ի համապատասխան տեղերում, ուր կարդում ենք. «Եւ կին Միրդատայ հաւատաց ի Քրիստոս և մկրտեցաւ. և շինեաց զսուրբն Սիօն ի Շամշոյտէ, և էր անուն նորա Սակդուխտ» (եջ 73). «Եւ մեռաւ Միրդատ, և մնաց Վախթանգ եօթնամեայ։ Եւ զահի հարաւ մայր նորա Սակդուխտ ի հօրէ իւրմէ՝ թէ քինախնդիր լինի վասն թողլոյն իւր զմոգութիւնն և աւերմանն Պարսից՝ յանէ նորա Միրդատայ» (եջ 74). «Իսկ Սակդուխտ վարէր զթագաւորութիւնն կամօք հօր իւրոյ, մինչև մեռաւ նա. և էառ զիշխանութիւնն նորա Վարզաբակուր որդի նորա, եղբայր Սակդխտոյ» (ibid.)։ Վարդան պատմիչն այս առթիվ գրում է (Հաւաքումն պատմութեան Վարդանայ վարդապետի լուսաբանեալ, Վենետիկ 1862, եջ 91). «Եւ տիրեցին [վիրքն] ի ծովէն Պոնտոսի մինչև ցծովն Կասբից՝ մինչև ցՄիհրան, և ցԱրբակ (ուղիղ՝ Արշակ) թոռն իւր, որ էառ կին ի Պարթևաց՝ Սահակդուխտ անուն ի Պարտաւայ. որ և ամուլ գոլով հաւատաց ի Քրիստոս, և ետ նմա զաւակ՝ զՎախտանգ, որ և Գուրգասարն կոչեցաւ, որ է Գայլագլուխ ի Պարսից բառն»։ Արևմտյան Վրաստանի Ռաճայի նախկին գավառի սահմաններում Ջվարիսա կոչված գյուղում 1925 թ. յերևան հանած մի ուշագրավ արծաթե «խաչի» վրացերեն յեկեղեցական գլխատառ արձանագրությունն էս, վորը թերևս VI դարուն է պատկանում, հիշատակում է այս անունը. «Սուրբ Գրիգոր Սքանչելագործ, քեզ աղօթող քո աղախին Սահակդուխտին պահպանիր ամենայն չարից»

* Var. Բակի. հմմ. 148 յեր.* ծանոթ.

(Գեորգ Բոճորիձե, *Ջվարխայի հուշարձանը, վրացերեն — «Վրաստանի Արխիվ», գ.* III, *Տփղ. 1927, էջ 205—208)։*

3. *Տես այս պրակի Բ. գլխի 11-րդ ծանոթությունը։*

4. *Այսինքն Աստվածաբանի կամ Նազիանզենի։*

5. *Հմմ. այս պրակի Բ. գլխի 18-րդ ծանոթությունը։*

6. *Հմմ.* Լեոնտիոս Մրովելու *համապատասխան ցուցմունքը Քարթլիում յերբեմն վեց լեզուների գործածության մասին («Այլ և այլ դեպքեր «Խազրաց» արշավանքների շրջանից» հատվածում)։*

7. *«Մոզու»-ի «մոզվ»-ի* մոզ *բառից. հմմ. նույն արմատից կազմված «Թ-մոզվ-ի» բերդի անունը (հայերեն արդի փոլկլորում «Թմբուկ»-«Թմբկաբերդ»-ի վերածված)։*

8. *Մցխեթի և Արմազի հակադրության մասին տես մանրամասն. Л. Меликсет-Беков,* В поисках Страбоновой Севсаморы, Тифлис 1917, стр. 3—4:

9. *Հունաց զորապետի անունն է, որին Վախուշտը* (XVIII *դ.) պատրիկ է կոչում, իսկ «Համառոտ պատմութիւն Վրաց»-ը (էջ 86, 89)՝ «զօրագլուխ»։ Հմմ. M. Brosset,* Histoire de la Géorgie, t. 1, p. 179 et n. 1:

10. *Մելիտա-Մալաթիայի մասին տես. Y. Sandalgian,* Les inscriptions cunéiformes Urartiques, Venise 1900, p. 396, *И. Мещанинов*, Халдоведение, Баку 1927, стр. 22, 24, 34, 36, 167:

11. *Հմմ. M. Brosset,* ibid., p. 179, n. 2:

12. *Այստեղ* Ջուանշերը *շփոթած է Հունաց (Բյուզանդական) կայսրների ծննդաբանությունը։*

13. *Այսինքն «Կարմիր փոր». հմմ. M. Brosset,* ibid., p. 199, n. 2:

14. *Այժմյան Բորջոմի հովիտը։*

15. *Կումուրդո գյուղից ցած, Կուրի հովտում։*

16. *Ակնարկում է Հակոբ յերեցի* (V *դ.) կազմած «Ս. Շուշանիկի վկայաբանության» վրա, որի մասին մանրամասն տես մեր աշխատության այս հատորի առաջին մասի Ա. գլխում։*

17. *Տես նույնտեղ։*

18. *Անհայտ է։*

19. *Ցուրտավի մասին մանրամասն տես նույնտեղ 6-րդ ծանոթությունը։*

20. *Երուշեթը նույն Արտահանն է. հմմ. «Ե-րուշ-եթ»—Իշա-ուն-իք* Araston-*ի հետ (Н. Марр,* Надпись Сардура II, сына Аргиштия в Даш-Керпи на Чалдырском озере [Записки Кавказского Музея, Серия В.—I], Пгр. 1919, стр. 7, 15, 36, 38։

21. *Այս աբզացի մեկնությունը տես՝* Իվ. Ջավախիշվիլի, *Վրաց ժողովրդի պատմությունը, վրացերեն,* II, *Տփղ. 1914, էջ 352։*

22. *«Միհր», «Միհրան», «Միհրդատ» ևն անունների մասին տես.* Լ. Մելիքսեթ-Բեկ, *Արտուազդ և Մհերի հետքերը Վրաստանում,—«Բանբեր Էջմիածնի Գիտական Ինստիտուտի», գ.* I—II, *Էջմիածին 1921—1922, էջ 98—104.* Թադևոս Ավդալբեգյան, *Միհրը հայոց մեջ [«Ազգային Մատենադարան», ԾԻ], Վիեննա 1929։*

23. *Ըստ յերևույթին, Արտահանին սահմանակից մի վայրի (գավառի) անունն է, որին հանդիպում ենք նաև արևելյան Վրաստանում (նախկին Բորչալուում, այժմյան Շահումյանը), նաև հարավային Ոսեթում, վերջինում «Շուլաուր»*

և «Շելեուր» ձևերով. հմմ. *Л. Меликсет-Беков*, К археологии и этнологии Туальской Осии,—сборник «Юго-Осетия», Тфл. 1925, стр. 260, 276:

24. Ջուանշերի *տեղեկությունն արաբական արշավանքների մասին, ըստ* Իվ. Ջավախիշվիլու *(Վրաց ժողովրդի պատմությունը,* II, *1914, եջ 351), «վերաբերում է* VIII *դարու առաջին քառորդի անցքերին և ոչ թե արաբացվոց առաջին արշավանքի պատմությանը»:*

25. *Կալմախ-Կամախի մասին մանրամասն տես. Н. Я. Марр* и *Я. И. Смирнов*, Вишапы, Лнгр. 1931, стр. 19—21 (Ն. Մառի հոդվածը):

Դ.

# ԱՆԱՆՈՒՆ (XI Դ.)

## „ՎՐԱՑ (ՔԱՐԹԼԻԻ) ՄԱՏՅԱՆԸ“

*Քարթլիս-ցխովրեբայի Մարիամ թագուհու վարիանտում «Արչիլ թագավորի վկայաբանությունը», ինչպես նախորդ (Գ-րդ) գլխի ներածականում տեսանք, կցված է մի հիշատակարան, ուր, ի միջի այլոց, ասված է, որ Վախտանգ Գորգասալի պատմությունը գրել է Ջուանշեր Ջուանշերյանը, «իսկ այսուհետև թող գրեն յեկող սերունդները՝ ինչպես դիտեն»։ Այդ հիշատակարանին անմիջապես հետևում է մի նոր՝ բավականին ընդարձակ՝ յերկասիրություն, որը հասնում և մինչ «[Դավիթ] արքայից-արքայի պատմությունը»։ Այս յերկասիրությունը, ճիշտ է, վերնագիր չունի, և ոչ էլ նրա հեղինակի անունն է հայտնի, սակայն ինքնըստինքյան պարզ է, որ այստեղ մենք գործ ունինք մի նոր գրվածքի հետ, որը տալիս է մեզ Վրաստանի անցյալի նկարագրությունը սկսած* VIII *դարուց և մինչ* XI *դար (Գեորգ* II*-ը) և, իբրև* XI *դարու յերկասիրություն, անշուշտ, ծանոթ է յեղել «[Դավիթ] արքայից-արքայի պատմության» հեղինակին* XII *դարու առաջին կիսում, որն՝ ոգտագործելով այդ յերկասիրությունը՝ «Վրաց (Քարթլիի) մատյան» (մատիանե քարթլիսա) յե կոչում այն։ Յեվ այս հիման վրա* Իվ. Ջավախիշվիլին *(Հին վրացական պատմական գրականությունը, բ. հրատ., եջ 200) նպատակահարմար է գտնում այս գրվածքը հենց այդպես էլ կոչել՝ «Վրաց (Քարթլիի) մատյան» (մատիանե Քարթլիսա)։*

*Անանուն հեղինակը, անտարակույս,* XI *դարու գրող է։ Սա յերևում է նրանից, որ իր յերկասիրության մեջ նա քանի հեռանում է* VIII *դարուց և մոտենում* XI*-ին, ավելի և ավելի ընդարձակ կերպով է նկարագրում այլ և այլ անցքերը, իսկ իրեն ժամանակակից դեպքերի մասին պատմում է ամենայն մանրամասնությամբ և բարեխղճությամբ։*

«Վրաց (Քարթլիի) մատյանը» գրաված ունի Ե. Թաղ՝այշվիլու հրատարակության մեջ 216—280 էջերը, իսկ M. Brosset-ի՝ 184—236 էջերը (ըստ Ն. Մառի միմիայն 184—200, քանի որ Ք. Ց. հրատարակությունն այդ 200 յերեսով առհասարակ ընդհատված է), որին համապատասխանում է նույն M. Brosset-ի ֆրանսերեն թարգմանության 256-345 էջերը և «Համառօտ պատմութիւն Վրաց»-ի 104—114։

# [ԱՐԱԲԱԿԱՆ ԱՐՇԱՎԱՆՔՆԵՐԸ [1]]

... Յերկար տարիներ անց [արաբացիներից Տփղիսը գրավելուց հետո՝ Տփղիս] յեկավ հագարացվոց ամիրան, վորն իշխում եր Հայքում*, Քարթլիում, Հերքում (Հերեթում)՝ Խոսրով (Խվասրո) անուն, վորը խազարներից ավերած Տփղիսը[2] [վերա]շինեց...

Յեվ նրանից հետո յեկավ Խալիլ Յեզիդի (Իզիդի) վորդի՝ արաբացին, վորը դրավեց Հայքը (Սոմխիթը), Քարթլին և Հերքը (Հերեթը)[3]...

Ապա յեկավ Բուղա** թուրք ստրուկը Բաղդադից, վորին մեծ զորքով հանդերձ ուղարկել եր ամիր Մումլը. սա ավերեց ամբողջ Հայքը (Սոմխիթը) և դերեց նրա բոլոր իշխաններին, ապա՝ [մտնելով Քարթլի՝] մոտեցավ Տփղիս քաղաքին, քանի վոր վերջինը նրան չեր հպատակվում, և սպանեց Տփղիսի ամիրա Սահակին. և ավերեց Տփղիսը[4]... Իսկ Աբուլ-[Ա]բաս (Աբուլբազ) հայոց (սոմեխների) իշխանն և Գուարամ*** Աշոտի վորդին**** հաղորդեցին լեռնականներին, վորպեսզի նրան (Բուղային) [իրենց մոտ] ներս չթողնեն...

... Ապա իբրև ամիրա յեկավ Խալիլ

...Ջինի երկերիւր ինն և տասն ամաց առաջին Մահմետի, եկն Բուղայն, մշտացոյց դերկիրն Հայոց. և հասեալ ի Տփղիս՝ սպան զՍահակ ամիրայն, զի ոչ հնազանդէր նմա...

* Var. Հայքում abs.

** Var. Շուղա. հմմ. 148 յեր.* ծանոթ.։

*** Var. + Սամփալ։

**** Var. + Բագրատ Կուրապաղատի յեղբայրը։

որդի Մոհմեդը*, որն ավելի ևս կամայականորեն գրավեց ամբողջ այս յերկիրը՝ Հայքը (Սոմխիթը), Քարթլին և Ռանը... Յեվ ամիրա յեղավ սոա՝ Սահակի ծառաներից** մեկը՝ Դաբլուց անուն, [որը]... մեծարեցաւ [նույներից] և որին հպատակվեցին դարդբանեցիք. սա կոչում եր իր հորեղբոր որդի*** և Գուարամի յեղբայր (sic) Աշոտի հետ: Իսկ Գուարամը՝ տիրելով Ջավախքին (Ջավախեթին), Թռեղքին (Թրիալեթին), Տաշիրին, Աշոցքին**** և Արտահանին (Արտանին)՝ կռվում եր սարկինոզների դեմ: Յեվ յերբեմն հաղթում եր Գուարամը և յերբեմն սարկինոզները. իսկ Գուարամը բաժանեց յերկիրներն իր յեղբայրների՝ Ատրներսեհի (Ադարնասեյի) և Բագրատի միջև, և Աշոցքը***** բաժին հանեց իր աներորդի (կնոջ յեղբայր)՝ հայոց (սոմխեների) թագավորին...

Այս Դավիթ Կուրապալատի հետ թշնամացավ Նասրան, Գուարամ Մամփալի որդին, որը սույն Դավթի հորեղբայրն եր: Իսկ այս Նասրան՝ նույն Դավիթ Կուրապալատի քեռորդին՝ և Գուրգենը ափխազների կողմնակից եյին. և Դավիթն ու Լուպարիտն ոգնում եյին հայերին (սոմխեններին). և հայերն (սոմխեններն) ու ափխազները կռվում եյին Քարթլիում: ... [Յեվ] ժողովեցան ընդդեմ Նասրայի հայերն (սոմխեները), և Լիպարիտն ու վրացիք, և Աշոտ՝ Դավթի յեղբայրը, և նրանց հետ սարկինոզները: ... [Այս] Ատրներսեհ (Ադարնասե) թագավորի [կռվում նույն Նասրայի դեմ] հայերն (սոմխեներն) [ևս] նրա (Ատրներսեհի) հետ եյին ...

---

* Var. Մումեդը:

** Var. Ազգականներից:

*** Var.+Հայոց (սոմխեների) Սմբատ թագավորի որդի

**** Բնագրում՝ Աբոցին. հմմ. 148 յեր.* ծանոթ.

***** Նույնը:

Այն ժամանակ, [երբ Քարթլիում իշխում էյին ազատները (ազնվականները)] դուրս յեկավ Կոնստանդլին ափխազաց թագավորը, վորը գրավեց Քարթլին. սրան թշնամացավ հայոց (սոմեխների) Սմբատ Տ[ի]եզերակալ[6] թագավորը, վորը մեծ զորքով յեկավ արշավանքի և մոտեցավ Ուփլիսցիխեյին[7]... և գրավեց այն. իսկ Սմբատն ու Կոնստանդինը բարվոք խնամիացան[8], և [Սմբատը] վերադարձրեց նրան (Կոնստանդինին) Ուփլիսցիխեն ու ամբողջ Քարթլին[9]։ Սրանցից հետո յեկավ հագարացվոց ամիրան՝ Աբուլ-Կասիմ անունով, Աբու-Սաջիի վորդին, արաբացին. սրան ուղարկել էր Ամիր-Մումլին մեծ և անհամար զորքով, վորին յերկիրը չէր տեղավորում։ Նա նախ մտավ Հայք (Սոմխիթ) և ավերեց ամբողջ Հայքը (Սոմխիթը), Սյունիքը, Վայոց-Ձորն ու [Վ]ասպուրականը (Ասփուրագանը)։ Չդիմանալով նման ավերածությանը՝ Սմբատ հայոց (սոմեխների) թագավորը փախուստի դիմեց և ուղղվեց Ափխազաց լեռների կողմը, և այնտեղ էլ մնաց։ Յեվ [Աբուլ-Կասիմ] Աբու-Սաջիի վորդին յեկավ Տփղիս, ուր ամիրա յէր Ալիի վորդի Ջափարը,... ապա մտավ Քարթլի և ավերեց Քարթլին, ...այնտեղից մտավ Սամցխե, և ավերեց Սամցխեն ու Ջավախքը (Ջավախեթը), ապա մոտեցավ Թմոգվիի բերդին[10]. տեսնելով վերջինիս անառիկ և ամուր դիրքը, այնտեղից քաշվեց և յեկավ Ղ՛վելիի մոտ, վորը սկսեց պաշարել։ Նրա (Ղ՛վելիի) մեջ էր մի պատանի՝ Գոբրոն անունով... վորին կալանավորեցին և նահատակեցին, և վորի վկայաբանությունը մանրամասն գրած ունի մեր սուրբ հայր Ստեփան Տբեթի (Ստեփանոս Մտբևարի) յեպիսկոպոսը[11]։ [Ապա Աբուլ-Կասիմը] այնտեղից [էլ] քաշվեց և գնաց Դվին քաղաքը. իսկ այնտեղ նրան լուր հասցրին, վոր Սմբատ թագավորը մտած է Կապույտ (Կապոետ) բերդը, իսկույն և յեթ տեղից

...Ի ժամանակս Սմբատայ՝ Հայոց արքայի տիեզերակալի, որ մարտ եդեալ ընդ Կոստանդեայ՝ թագաւորին Ափխազաց՝ էառ զՔարթլ և զՈւփլիսցիխէ. և դարձեալ հաշտեալ՝ խնամիք եղեն, և դարձոյց անդրէն։ Յաւուրսն յայնոսիկ եկն Բուլկասիմ (ուղիղ՝ [Ա]բուլ-Կասիմ) զորապետն Սարակինոսաց՝ ի Հայս, և ապա ի Տփխիս... և... անդէն ի Դուին։ Եւ Սմբատ արքայն Հայոց խոյս ետ ի նմանէ, և եկն շրջէր ի լերինս Ափխազեթայ. իսկ բռնաւորն սպասէր նմա, քանզի պերճացեալ էր յաղթութեամբն Վրաց. քանզի առեալ էր զամենայն Քարթլ, և յոլով բերդս, զԹմօք և զՇուխլա, յորում եսպան զգեղեցիկ և զքաջ մանուկն Գօբուն (ուղիղ՝ Գոբրոն)՝ վասն Քրիստոսի, զի ոչ ուրացաւ զնա. զորոյ վկայութիւնն գրեաց սուրբ հայրն մեր Ստեփանոս Վլայեաց և սուրբ թագաւորն Սմբատ՝ ի նոյն բռնաւորէն՝ ի Դուին քաղաքի. բոլոր տարի մի չարչարեալ, և ապա խեղդամահ սպանին և կախեցին զփայտէ, զի մահակից և խաչակից լիցի Քրիստոսի։

շարժվեց և դիմեց դեպի այն բերդը, ուր գտնվում էր հայոց (սոմխեխների) Սմբատ թագավորը․ և պատվիրեց իր բանակին, որպեսզի ամեն մեկին, որին կենդանի կգտնեն, բերեն իրեն մոտ։ [Յեվ Աբուլ-Կասիմը] յեկավ և մոտեցավ Կապույտ (Կապոետ) բերդին, և կալանավորեց բերդակալների կանանց, որոնց գտավ դրսում։ Գրավելով բերդը՝ [արաբացիք] կալանաւորեցին Սմբատին*, որին ապա տարան Դվին, ուր և կախեցին փայտից․ և նա մեռավ[12]։ ...

# [X—XI ԴԱՐԻ ԱՆՑՔԵՐԸ]

...Յեվ Հերքում (Հերեթում) սկզբներում՝ մինչ Իշխանիկի թագավորությունն՝ բոլորը հերձվածող էին։ Իսկ Իշխանիկը Գուրգեն իշխանաց-իշխանի քրոջ որդին էր․ և նրա մայր Դինար թագուհին դարձրեց նրան ուղղափառ[13]։...

...Յայնմ ժամանակի Իշխանիկն էր թագաւոր ի կողմանս Հերեթոյ, և ունէր նա հերձուած, և մայր իւր դարձոյց յուղղափառութիւն...

...Յեվ իշխան էր Կլդեկարում Ռատը, որը գրավել էր Ատենի բերդը և Քարթլիից սկսած Կուր [գետ]ի հարավային մասը՝ Թռեղքը (Թրիալեթը), Մանգլյացփորը (Մանգլիսի ձորը) և Սկվիրեթը[14], և չէր հնազանդվում Բագրատ թագավորին։ Ապա Բագրատ թագավորը շատ** զորք հավաքեց և յեկավ Քարթլի։ ...Յեվ Բագրատի հայր Գուրգենն էլ զորք ուներ ժողոված և միանգամայն պատրաստ իր որդու մոտ գնալու համար։ Իսկ Դավիթ Կուրապալատն արագ դիմեց [նրանց դեմ]՝ ժողովելով իր զորքը և կանչելով Հայոց (Սոմխիթի) բոլոր թագավորներին[15]։...

...Եւ Ռատն էր ի Կարս (ուղիղ՝ ի [Կլդե]կար), և ունէր զբերդն Ատենոյ և զհարաւակողմն Կուր գետոյ. սա ոչ հնազանդէր Բագրատայ. և Գուրգէն հայր նորա եկն առ որդին, և կամեցան գնալ ի վերայ Ռատին։ Եւ քսեցին առ Դաւիթ կիւրապաղատն՝ եթէ զգլուխ քո խնդրեն. և հաւատաց բանիցն, և ձեռնատուութեամբ Հայոց՝ փախոյց զզօրսն...

Այդ ժամանակ ուժեղացավ Գանձ[ակ]ի ամիրա Փադլոնը, որը սկսեց հպատակեցնել իրեն Հերքի (Հերեթի) և Կախքի (Կախեթի) իշխաններին, ժամա-

...Յայնմ ժամանակի զօրացաւ Փադլուն՝ ամիրայն Գանձակայ, և հարկանէր զիշխանսն Կախեթոյ և Հերեթոյ։ Եւ տառապեաց Բագրատ՝ թագաւոր Ափխա-

* Var. Սմբատ թագավորին։

** Բնագրում՝ զարմանալի կերպով։

նակ առ ժամանակ ավազակորեն և գաղտագողի ավերելով և գերելով այլ և այլ տեղեր։ Իսկ Բագրատ մեծն թագավորը՝ տեսնելով նրա (Փաղլոնի) հանդգնությունը՝ իր ամբողջ զորքով պատրաստեց [նրա վրա հարձակվելու], դեսպան ուղարկեց Գագիկ շա[հ]նշա[հ] հայոց (սոմեխների) թագավորի մոտ, փորփոեղի վրեժխնդիր լինի Փաղլոնին։ Ցավ նա (Գագիկը) հույժ ուրախացավ [սրան], և շտապ կանչեց իր ամբողջ զորքը և դիմեց Ափխազաց թագավորի մոտ, [և] յերկուսը [միասին] ժողովեցան Ձորակերտում[16], Փաղլոնի դեմ լինելու...*[17]

զաց, առ Գագիկ՝ թագաւորն Հայոց՝ երթալ ընդ նմա ի վերայ Փատլոյ ամիրային։ Եւ չոքան երկոքեան ի Գանձակ, և արարեալ ընդհարկաւ՝ դարձան աւարաւ...

...Իսկ նրա (Գեորգի) թագավորության յոթներորդ տարին հույնաց (բերձենների)[18] Վասիլ թագավորը հունաստանի ամբողջ զորքով՝ անթիվ այլազգիներով հանդերձ՝ յեկավ նրա (Գեորգի) դեմ։ Գեորգ թագավորն էլ մեծ զորքով յեկավ նրա (Վասիլի) դեմ. և յերկուսն էլ յերկար ժամանակ կացան Բասեն (Բասիան) յերկրում՝ կռվի չելնելով իրար դեմ։ Խուսափելով [Վասիլից]՝ Գեորգ թագավորը յեկավ և ավերեց քաղաքն Ուղթյայց (Ոլթին), ապա այնտեղից հասավ Կողա (Կոլա)։ Նրան հետամուտ յեկավ հունաց (բերձենների) Վասիլ թագավորը. և ժողովեցան թե վոչ Գեորգուն հետամուտ յեղողներն ու Վասիլի առաջընթաց զորքերը՝ տեղի ունեցավ մեծ ընդհարում Շիրիմք կոչված դյուղում[19]...

...Ի հինգերորդ (ուղիղ՝ յեւթներորդ) ամի թագաւորութեան նորա (Գէորգեայ)՝ եկն Վասիլ կայսրն. և ընդդէմ գնաց նորա ի գաւառն Բասենոյ. և իբրև ետես եթէ բազումք են՝ դարձաւ անդրէն. և Վասիլն գնաց զհետ նորա, և այրեաց զքաղաքն Ուխտեաց. և դարձաւ Գէորգի և կռուեցան. և անկան յերկուց կողմանց բազումք ի տեղւոջն՝ որ կոչի Շիրիմք...

...Յերկրորդ անգամ յեկավ Վասիլ թագավորը Թռեղքով (Թրիալեթով), շըրջեց Ջավախքն (Ջավախեթն) ու Արտահանը (Արտանը) ձմռան պահին ...ապա վերադարձավ Խաղտյաց (Խալդա Խաղայ) յերկիրն՝ Տրապիզոնին կից[20]...

...Եւ գնաց Վասիլն ի Տրապիզոն. և կոչեցեալ առ ինքն զմեծ կաթուղիկոսն Հայոց զՊետրոս՝ ի տօնի յայտնութեանն, և օրհնեաց զջուրն առաջի նորա. և ետես կայսրն մեծ սքանչելիս ի վերայ ջրոյն, և գովեաց զհաւատս Հայոց, և գնաց ի Կոստանդնուպոլիս...

...Նորից յեկավ Վասիլը Բասեն (Բասիան)՝ պահանջելով Գեորգ թագավորից գավառներ և բերդեր, և խոստանալով համերաշխություն և խաղաղու-

* Հմմ. այս գրքի Ա. գլուխը (էջ 137, ծանոթ. ****)։

թյուն*... Ցեվ տվեց Գեորգ թագավորը [Վասիլին] յերկիրը, վորը Դավիթ Կուրապաղատինն եր, Տայքում**, Կղա-Արտահանում (Կոլա-Արտանում) և Ջավախքում (Ջավախեթում)***21։...

[Հունաց Կոնստանդին թագավորի մահվան և Ռոմանոսի գահակալության] յերրորդ տարին22 գնաց Մարիամ թագուհին՝ ափխազաց [Բագրատ] թագավորի մայրն՝ Հունաստան խաղաղություն հաստատելու****, նաև կուրապաղատության պատիվը խնդրելու իր վորդու համար, ինչպես նրանց տան սովորությունն եր ու կարգը*****23...

Եւ էառ զթագաւորութիւնն Բագրատ. և չոքաւ մայրն նորա Մարիամ ի Կոստանդնուպօլիս, և եբեր թուղթ դաշանց խաղաղութեան և պատիւ կիւրապաղատութեան՝ որդւոյ իւրոյ...

Ցեվ սրանից հետո իր վերին և ներքին «հայրենիք»-ին տեր դարձավ Բագրատը******24։...[Ցեվ]սրա թագավորության զորքերը ժողովեցան և կալանավորեցին Լիպարիտին և Աբազա վորդի Հովհաննին (Իվանեյին)։ Ցեվ յեկավ մեծն Կորիկե (Կվիրիկե) Ռանից (ռաների) և Կախից (կախերի) թագավորը, Դավիթ25 հայոց (սոմխեների) թագավորը և Տփղիսի ամիրա Ջափարը. սրանք բոլորը ժողովել եյին Կորիկեյի (Կվիրիկեյի)******* պայմանի համաձայն Ցեկեղյաց (Նիկեց) [գավառ]ում։...

...[Ապա] թագավոր եր Կախքում (Կախեթում) Գագիկը՝ Սամշվիլդեյի և Ձորակերտի******** հայոց (սոմխեների) Դավիթ թագավորի վորդին [և] Կորիկեյի (Կվիրիկեյի) քեռորդին...

...Թագաւորն Կախեթոյ [էր] Գագիկ, որդին Հայոց արքային...

Այս կրկին ուժեղացավ և հզորացավ իր «հայրենիք»ում Բագրատ թագավորը։ Ցեվ Բագրատի բաղդը բանեց թե վոչ՝ Վեստը [նրան] միացավ Անիո

...գի մայր նորա (Բագրատայ) Մարիամ՝ դուստր էր Սենեքերիմայ Հայոց արքայի, ետուն զքաղաքն Անի՝ բնակիչք նորա՝ ի թագուհին Մարիամ...

---

* Var. +... և անցավ Բասենի (Բասիանի) սահմանը...

** Var. + Բասենում (Բասիանում)։

*** Var. + Շավշեթում։

**** Բնագրում՝ փնտռելու։

***** Այս աբզացը գրեթե կրկնություն է Սմբատի յերկասիրության համապատասխան հատվածի (տես այս աշխատության 138 եջը)։

****** Var. Բագրատ թագավորը։

******* Var. կայսեր։

******** Var. սամշվիլդեցվոց և ձորակերտեցվոց։

...յինն բերդով, բացի Ամբերդից։ Եվ անեցիք տվին Անին Բագրատի մորն, քանի վոր այն հայերի (սոմխեթների) «հայրենիքն» էր, [իսկ] Բագրատի մայր Մարիամ թագուհին հայոց (սոմխեթների) Սենեքերիմ թագավորի դուստրն էր[36]։...

...Եվ Լիպարիտը ...հանեց Անիից՝ թագուհուց՝ Աբուսեր Արտանուջի իշխանին, ...և Հովհան (Իվանե) իշխանին, Հովհան (Իվանե) Դադիանուն և Գուարամ Գողերձիս-ձեյին, ...վորոնց և կալանավորեց Անիի դռանը ...

...Եվ Լիպարիտի դաշնակիցներն էին [ընդդեմ Բագրատի]՝ կախերը իրենց զորքով և Դավիթ հայոց (սոմխեթների) թագավորն իր զորքով։...

Եվ մի քիչ ժամանակից հետո դաշնակից յեղան Կալմախի իշխան Սուլան և Արտանուջի իշխան Գրիգորը, վորոնց միացան մեսխ ազնվականներն (ազնաուրներն) չեն՝ ոգնելու Բագրատ թագավորին։... Լսելով այս՝ Լիպարիտը ժողովեց իր զորքը և կանչեց կախերին ու հայերին (սոմխեթներին)․ և հույներն (բերձեններն) [էլ] սրա հետ էին։ ...

Եվ սահմանի դրսով գնալով՝ Լիպարիտը նույն զորքով մտավ Դվին և առաջնորդեց հունաց (բերձենների) թագավորին դվինեցվո վրա․ ապա վերադարձավ իր յերկիրը։ Իսկ նրա վերադարձից մի տարուց հետո Բասեն (Բասիան) գավառում յերևեցան Բահրամ-Լամյան սուլթանական թուրքերը։ ...

...Ապա Լիպարիտը հարձակվեց թուրքերի վրա և մտավ Անի։...

...Մի քիչ հետո սրա (Բագրատի) թագավորության մեծամեծները ձանձրացան Լիպարիտի տիրապետությունից։ Սուլա Կալմախեցին և բոլոր մեսխները փախան Լիպարիտից, և կալանավորեցին Լիպարիտին ու նրա հորը՝ Դիլիվուն։ Իսկ Նիանիան դաղթեց և գնաց դեպի Կլդեկար (Կլդեկարնի), ուր, սակայն, նրա հոր (Լիպարիտի) բերդապահները ներս չթողին նրան, և նա անցավ Անի՝ հույների (բերձենների) մոտ։ ...Եվ մի քա-

-նի տարուց հետո Նիանիան վախճանվեց Անիում...

Սրա (Բագրատի) թագավորության պահին յերևաց սուլթան Արփ-Ասլան (Արփարասան Արփասարան)՝ պարսից թագավորը։ ... [Ցեվ] յեկան [պարսիկներն] անակնկալ կերպով* և ավերեցին Կանգարքն ու Թռեղքը (Թրիալեթը)։ ...

...Ցեվ դիմեց սուլթանը (Արփ-Ասլանը) դեպի Անի և գրավեց Անին, ավերեց այն և անթիվ ժողովուրդ գերեց ու գնաց իր յերկիր՝ Պարսկաստան։ Նա [յեր, վոր] Անին խլեց հույներից (բերձեններից) և ավեց Աբուլասվարի վորդի Մանուչարին։ Իսկ Բագրատի քեռորդին, վորին խնդրում եր սուլթանը ի կնություն, հայոց (սոմեխների) Կորիկե (Կվիրիկե) թագավորի յեղբորորդին եր։ Բագրատը սրան խնդրեց, բայց հայոց (սոմեխների) թագավորը նրան չտվեց։ [Ապա] Բագրատը մեծ զորքով հանդերձ դեսպան ուղարկեց [Կորիկեյի մոտ] Վարազ-Բակուր Գամրեկել իշխանին։ [Նույն Բագրատը] հայոց (սոմեխների) թագավորի մարդկանց ել գրդռեց, և Սամշվիլդե մնող հայոց (սոմեխների) Կորիկե (Կվիրիկե) թագավորին ու նրա յեղբայր Սմբատին կալանավորեցին Բվեշի պուրակում[27]։ Ցեվ հաղորդեցին Բագրատին, [վորը]... պահանջեց Սամշվիլդեն, սակայն [հայերն] այն չտվին, և նրանց (Կորիկեյի ու Սմբատի) մի ուրիշ յեղբայրը՝ Ատրներսեհը (Ադարնասեհ)՝ մտել եր Սամշվիլդե։ Իսկ [Կորիկե և Սմբատին] տարան Սամշվիլդե. և սարքեցին [խաչա]փայտեր, և հայոց (սոմեխների) Կորիկե (Կվիրիկե) արքային յերեք որ [կախված] թողին։ [Հայերը] խնդրեցին խաղաղություն և տվին Սամշվիլդեն[28]։ Ցեվ յեկել եյին հայոց (սոմեխների) թագավորի յերկու իշխան-

...և գայր [սուլտան Արփասլան] առնոյր զամենայն տունն Քարթլայ, կոտորէր և գերէր. և խաղացեալ գնայր ի մայրաքաղաքն Հայոց ի յԱնի, և առնոյր զնա, և լնոյր արեամբ կոտորելոցն։ Եւ այլ ևս սպառնայր Վրաց աշխարհին, եթէ ոչ տացէ նմա Բագարատ՝ զդուստր քեռ իւրոյ ի կնութիւն. որ էր նա դուստր եղբօր Կիւրիկէի Հայոց արքայի. յորմէ խնդրէր Բագարատ աղաչանօք, և ոչ տայր զնա Կիւրիկէ. մինչ գործեցին նմա որոգայթ Վարազբակուր և Գամրեկել զօրագլուխն Վրաց, և ըմբռնեցին զնա յանտառին Բուեշոյ. և ազդ արարին Բագ[ա]րատայ. և գնաց առ նա, և էառ զաղջիկն և զՇամշոյտէ ի ձեռաց նորա, և ապա արձակեաց։ Իսկ Սուլտանն զկնի երից ամաց դարձաւ ի վերայ Վրաց, և ելից արեամբ զերկիրն։ Եւ առեալ զՏփխիս՝ ետ ի յամիրայն Գանձակայ ի Փադլունն։ Եւ Ասխալթան որդի Գագկայ թագաւորին Կախեթոյ՝ եկն առ նա, և շրջէր ընդ նմա՝ մինչև գնաց Սուլտանն...

---

* Բնագրում՝ անզգալիորեն։

*ները՝ Լոկի*[29] իշխանը և Կակվաքարինը։ Կորիկեյի (Կվիրիկեյի) յեղբայր Սմբատը տալիս էր և հանձնում յերեք բերդեր՝ Ոփրեթն[30], Քոթա[յր]ն**[31] ու Վարդաքարը։ Իսկ Բագրատ թագավորը խղճաց նրանց, և ազատեց ու վերադարձրեց նրանց բոլոր բերդերը բացի Սամշվիլդեյից, և վոչ էլ այլ բերդերի տերերին-մեծամեծներին թույլ տվեց նրա մըտնելու այնտեղ, այլ գրավեց Սամշվիլդեն, [վորը և միացրեց] իր թագավորությանը։ Ցեվ այսպես հայերը (սոմեխները) [վրաց] հպատակ դարձան[32]։...*

*[Ապա սուլթանը] յելավ ափխազաց թագավորի դեմ, և նրան միացան հայոց (սոմեխների) Կորիկե (Կվիրիկե)[33] թագավորը, Տփղիսի ամիրան և Աղսարթանը, [վորոնք]՝ ոդակ [կազմել]ով՝ մոտն Քարթլի... քրոնիկոնի 288-ի դեկտեմբերի 10-ին, յերեքշաբթի որը[34]...*

*...Եվ ափխազաց [Բագրատ] թագավորը գրավեց Գագը։ Ապա Փադլոնը... գողցավ Քավազնը...*

*... և էառ [Բագրատ] ի Նմանէ (ի Փատլուն ամիրայէ) զՏփխիս և զԳագ և զՔոզլինն՝ զոր առեալ էին Պարսք ի Հայոց և ի Վրաց։...*

*...[Բագրատի վորդի Գեորգ թագավորը] շնորհեց Հովհանին (Իվանեյին) [Լիպարիտի վորդուն՝] Սամշվիլդեն... սակայն Հովհանը (Իվանեն) չկարողացավ մնալ բերդի ներսում [և] հեռացավ դեպի Հայոց (Սոմխ.թի) լեռները...*

*[Ապա] Հովհանը (Իվանեն) նորից ուրացավ [Գեորգին], խաբուսիկ կերպով խլեց Գագը Գեորգ թագավորի բերդապահներից և ծախեց [այն] Գանձ[ակ]ի տեր Փադլոնին։...*

*... Եւ ապստամբեաց ի Նմանէ (ի Գէորգեայ) Իւանէ՝ որդին Լիպարտի. և յինքն յանկուցեալ զպահապանս դղեկին Գագայ՝ վաճառեաց զնա պարձեալ տեառն Գանձակայ...*

*Մի քիչ հետո Սարանդն իր ամբողջ զորքով՝ դաշնակից ունենալով Գանձ[ակ]ի, Դվինի և Դմանիսի ամիրաներին՝ գնաց Գեորգի դեմ...*

*...[Ապա Գեորգ թագավորը] գրավեց հույներից (բերձեններից) Անակոփիան՝ Ափխազեթի բերդերի գլուխն, և շատ բերդեր Կլարջքում (Կլարջ.թում), Շավըշ-*

*...Եւ էառ Գէորգ ի Յունաց զամենայն բերդսն՝ զոր առեալ էր Նոցա, զԱնակոփի՝ ի գլուխն Ափխազեթոյ, և երկիրն Կլարճէթոյ և ի Շաւշէթոյ և ի*

* *Բնագրում՝ Լուկի։*

** *Բնագրում՝ Կոքա (Կոչա)։ հմմ. 148 յեր.* ծանոթ.*

քում (Տավչեթում), Ջավախքում (Ջավախեթում) և Արտահանում) (Արտանուջ)։ Յեվ որանից հետո... գրավեց Կարս (Կարիս) քաղաքը, Վանանդի բերդն և գավառն, ու Կարնիփոր-Ա[ր]սիանու ամրոցները, և մաքրեց յերկիրը Թուրքերից...

Ջաւախեթոյ և յԱրտահանայ՝ յոլով ամրոցս, և զԿարս և զՎանանդ, նոյնպէս և զՇամշոյլդ, ի Թուրքաց...

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1. *Արաբական արշավանքների շրջանի Հայաստանի պատմության վերաբերյալ տես հետևյալ հատուկ գրականությունը M. Ghazarian*, Armenien unter der arabischen Herrschaft bis zu Enstehung des Bagratidenreiches Marbourg 1903. *H. Thopdschian*, Armenien vor und während der Araberzeit —«Zeitschrift für armenische Philologie», II. B., I. H., Marbourg 1903 S. S. 50—71. Բագրատ Խալաթեանց, *Արաբայի մատենագրեր Հայաստանի մասին [«Ազգային Մատենադարան» ՁԴ], Վիեննա 1919. J. Laurent*, L'Arménie entre Byzance et l'Islam depuis la conquête arabe jusqu'en 886, Paris 1919. Հակոբ Զորյան. *Արաբների հարկային քաղաքականությունը ավատական Հայաստանում,— «Հ. Ս. Խ. Հ. Պետական Համալսարանի Գիտական Տեղեկագիր» № 2—3. Յերևան, 1927, եջ 319—349.* Նույնը, *Արաբական շրջանում ֆեոդալական Հայաստանի քաղաքի և գյուղի միջև ստեղծված հակադրությունը,— «Տեղեկագիր Հ. Ս. Խ Հ. Գիտության և Արվեստի Ինստիտուտի» № 2, Յերևան, 1927, եջ 179—203. № 3, եջ 3—38.* Հակոբ Մանանդյան, *Արաբական արշավանքները Հայաստանում (ժամանակագրական դիտողություններ)—նույնի «Մանր հետազոտություններ»-ի մեջ, հրատ. Մելքոնյան ֆոնդի, Յերևան, 1932, եջ 22—74. R. Vasmer*, Chronologie der arabischen Statthalter von Armenien unter den Abbasiden, von as-Saffach bis zur Krönung Aschots I., 750—887, Wien 1932:

2. *Տես Մովսես Կաղանկատվացի*, II, *11։*

3. *Ըստ* Ասողիկի *(Ստեփանոսի Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն տիեզերական, 106)՝ «ի* ...յմզ *թուականին Խալթ կայն Եգիա՝ հայոց ամիրայ եկն և էանց բազմութեամբ ի Վիրս և մեռաւ ի Ջաւախս, ի գիւղն որ կոչի Խողաբի (այժմյան Խիզաբավրա.* Լ. Մ.-Բ.)»

4. *Մանրամասնությունները տես. И. Джавахов*, К вопросу о времени построения грузинского храма в Атене по вновь обследованным эпиграфическим памятникам,—«Христ. Восток», т. I. 1912, стр. 277—297. Իվ. Ջավախիշվիլի, *Վրաց ժողովրդի պատմությունը, վրացերեն*, II, *1914, եջ 374—377 հմմ. նաև մեր այս աշխատության ա. պրակի Դ. գլուխը*

5. *Հմմ.* Ասողիկը (ibid., 158)։

6. *Պետք է լինի «Խոստովանող». հմմ. հաջորդ ծանոթության մեջ հիշված մեր հոդվածը Քվախրելիի մասին, եջ 218։ Նաև՝ M. Brosset*, Histoire de la Géorgie, I, p. 274, n. 8.

7. *Ուփլիսցիխեյի՝ իբրև հայոց դաղթականության հնագույն վայրերից մեկի մասին Վրաստանում՝ առայժմ տես. П. Иоселиани*, Города, существо

вавшие и существующие в Грузии, Тфл. 1850, стр. 65—66. *Н. Пантюхов,* О пещерных и позднейших жилищах на Кавказе. Тфл. 1896, стр. 34—35. *ավելի մանրամասն՝ Л. Меликсет-Беков,* Пещерный город Кваxрели.— «Известия Кавказского Музея», т. XI, 1918, стр. 208—218. [*Л. Меликсет-Беков*] Прошлое и настоящее Грузии по древним памятникам Мцхетского района и Уплисцихе (Краткий путеводитель экскурсий), изд. Культотдела Совпрофа Грузии [Тфл. 1929], стр. 4. *նույնը, վրացերեն, էջ 4։ Հայկական արձանագրությունների և մանավորապես 1585 թ. արձանագրության ընդօրինակումը տես՝ M. Brosset,* Voyages archéologiques dans la Géorgie et dans l'Arménie, II rapp., livraison II, SPB. 1850, p. p. 161—162. Գ. Դարբինյանց, *Հայկական արձանագրութիւն մը Ուփլիս ցիխէ գիւղում (Վրաստան), «Հանդէս ամսօրեայ» 1907 թ., էջ 300. հմմ. նաև բանահյուսական նյութը՝* Ե. Թաղայշվիլի, [*Վրաց*] *ժողովրդական գրականություն,* I [*Տփղ. 1909—1915*], *էջ 236, 257։*

*8 Վրացերեն բնագրում «իմձախես», որի վերլուծությունը տես՝ M. Brosset.* Histoire de la Géorgie, I, p. 274, n. 9։

*9. Սմբատի և Կոստանդինի թշնամության և ապա հաշտության մասին հմմ. Հովհան Դրասխանակերտցու տվյալները (Յովհաննու կաթողիկոսի Դրասխանակերտեցւոյ Պատմութիւն Հայոց [«Ղուկասեան Մատենադարան» Ե], Տփղ. 1912, էջ 200—201։*

*10. Հայ բանահյուսության մեջ Թմկաբերդ կոչվածը. հմմ. «Թմկաբերդի առումը»* (Ս. Լալայեան, *Ջավախքի բուրմունք, Թիֆլիս 1892, էջ 57*). *Նույնը* Հովհ. Թումանյանի *կողմից օգտագործած։*

*11. Մանրամասն տես մեր յերկասիրության ա. պրակի Ը. գլուխը։*

*12. Տես նույն տեղը, հմմ. նաև* Ասողիկ *(էջ 164—165)։*

*13. Հմմ. ա. պրակի Ժ. գլխի 2 ծանոթ.։*

*14. Թռեղքի և մանավորապես Կլդեկարիի և Մանգլյաց մասին տես. Е. Такайшвили,* Археологические экскурсии, разыскания и заметки, в. IV, Тфл. 1913, стр. 1—79, 130—144. Լ. Մելիքսեթ-Բեկ, *Մանգլիսի շրջանը պատմահնագիտական տեսակետով, վրացերեն,—«Ախալ սկոլիսաթվիս» 1924 № 2—3, էջ 71—80.* Նույնը, *Կլդեկարնի, վրացերեն,*—«Bulletin Historique 1924, № 1, *էջ 167—172.* Նույնը, *Մանգլիսի Նեկրոպոլը, վրացերեն,—«Չվենի մեցնիերեբա», № 13, 1924, էջ 82—87։*

*15. Հմմ.* Ասողիկի *(էջ 252) ցուցմունքը. «Եւ կիւրապաղատն Տայոց Դաւիթ և թագաւորն Վրաց Բագարատ առաքեն առ թագաւորն Հայոց Սմբատ [Տիեզերակալ]՝ կոչել յօգնականութիւն իւրեանց...»։*

*16. Զորակերտը այժմյան Զուրտակետն է կամ Նարաբուլախի գաղթավայրը (Սարրին Ծալկան), ուր՝* VI—VII *և հետագա դարերի վրացական բազմաթիվ հնությունների կողքին՝ հանդիպում ենք և հայկական հնություններին համեմատաբար ավելի ուշ ժամանակների,* XVIII *դարու հայերեն կամ հայերեն-վրացերեն արձանագրություններով (1718, 1721 և 1795 թ. թ.), որ մենք ընդօրինակեցինք 1932 թվի ամառվա գիտական արշավանքի միջոցին (պատրաստվում է տպագրության ժողովածուի մեջ՝ «Հայերեն արձանագրությունները Վրաստանում» վերնագրով)։*

17. Ըստ Ասողիկի (ibid., 252–253), Սմբատ Տիեզերակալ «առեալ զամենայն զօրս Հայոց և զԳագկի զհեծեալս իւր՝ գնաց առ Նոսա ի գաւառն Ջաւախաց և բանակին ի գիւղն, որ կոչի Դղիմնին, և մանուկն Աբաս թագաւորն Կարուց... Եւ ամենայն զօրն Վրաց և Վասպուրականի, Սիւնեաց և Աղուանից իշխանքն միաբանեալք լինէին ընդդէմ Ափխազաց զօրուն: Որոց երկուցեալ զխաղաղութիւն խնդրեին և սէր հաստատեին առ միմեանս: Կիւրապաղատն Դաւիթ խնդրէ ի թագաւորէն Ափխազաց զբերդն Սակուրէթ, և առեալ տայ Թագաւորին Հայոց Սմբատայ՝ շնորհ նմա արարեալ վասն օգնականութեանն. զոր ի մահուն Սմբատայ դարձեալ հանին ի Հայոց զբերդն Սակուրէթ»:

18. Ըստ Արիստակես Լաստիվերտցու (*Պատմութիւն Արիստակիսի վարդապետի Լաստիվերտցւոյ, Տփղ. 1912, էջ 11) հայոց 470 թ.–1021 թ. ք. հմմ.* Իվ. Ջավախիշվիլի, *Վրաց ժողովրդի պատմությունը,* II, *424, M. Brosset.* Hist. de la Géorgie. I, p. 306, n. 2:

19. *Այս պարագրաֆում նկարագրած դեպքերի մասին տես.* Արիստակես Լաստիվերտցի, I *և* II *գլուխները, նաև* Յահյա Անտիոքացի (В. Р. Розен, Император Василий Болгаробойца. Петербург 1883, стр. 61—62). *Հմմ.* Իվ. Ջավախիշվիլի, ib., 425: *Մատենագրությունը «Ծիրիմք»-ի մասին տես.* Ասողիկ, XVII *(էջ 196–197).* Նաև՝ *M. Brosset.* Histoire de la Géorgie, I, p 306, n. 4. Գ. Ինճիճեան, *Ստորագրութիւն հին Հայաստանեայց, 402:*

20 *Հմմ. В. Розен,* ս. с., 65–66:

21. *Տես նույնը:*

22. 1030–1031 *թ. թ.* (Իվ. Ջավախիշվիլի, op. cit., II, 431):

23 *Տես Դավթի վորդի Սմբատի յերկարակեցությունը (այս պրակի Ա. գլուխը):*

24. *Ըստ Վարդանի (Վնտ., 106)՝ «Վրաց թագաւորն Բագարատ դարձեալ ի կայսերէ՝ առնու զհայրենիսն իւր»:*

25. *Անհողինս*

26. *Տես այս պրակի Ա. գլխի 5-րդ ծանոթությունը:*

27. *Այս Կորիկե (Կվիրիկե) և Սմբատը Լոռու-Տաշիրի Կորիկյանց հարստության ներկայացուցիչներն են, վորոնց ազգաբանությունը վրացի հեղինակը շփոթած է՝ համարելով նրանց յեղբայրներ, մինչդեռ Կորիկեն (Կվիրիկեն) Դավիթ Անհողինի վորդին էր, իսկ Սմբատը՝ յեղբայրը կամ Կորիկեյի հորեղբայրը. Կորիկյանց ծննդաբանությունն ընդհանրապես տես. M. Brosset,* Monographie des monnaies arméniens, SPB. 1839. Նույնը, Additions et éclaircissements à l'Histoire de la Géorgie. p. p. 277—279. Ղ. Ալիշան, *Շիրակ, 96–97.* Նույնը *Հայապատում, Վնտ. 1901,* II, *392.* Ե. Լալայեան, *Բորչալուի գաւառ, —«Ազգագրական Հանդէս», գ.* VII—VIII, *Տփղ. 1901, էջ 312–318.* Ղեւոնդ վ. Մովսէսեան, *Լոռւոյ Կիւրիկեանց թագաւորութեան պատմութիւնը [«Ազգային Մատենադարան» ՂԵ], Վիեննա 1923. Е. Пахомов,* О монете Корикэ Куропалата, — «Известия Кавказского Историко-Археологического Института», т. III, Тфл. 1925, стр. 43—45. Լ. Մելիքսեթ-Բեկ, *Կորիկեն և նրա հայերեն ու վրացերեն արձանագրությունները, վրացերեն,* —«Bulletin de l'Université de Tiflis», VII, 1926, *էջ 60—73.* Նույնը, *«Վարդապետք Հայոց հիւսիսային կողմանց»* etc., *էջ 25–32, ծանոթություն 31: Մատենագրությունը Կորիկե (Կվիրիկե) և Սմբատի մասին պետք*

